## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածներ՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։



ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

11

ՆՈՅԵՄԲԵՐ 1973

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# Содержание







Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար

# ՀԱՆՈՒՆ ԱՐԴԱՐԱՑԻ, ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ, ՀԱՆՈՒՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ

(ՃԱՌ՝ ԱՐՏԱՍԱՆԱԾ ԽԱՂԱՂԱՍԵՐ ՈՒԺԵՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՆԳՐԵՍՈՒՄ 1973 Թ. ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 26-ԻՆ)

Թանկագին բարեկամնե՛ր: Հարգելի հյուրե՛ր: Ընկերնե՛ր:

Ես անկեղծորեն ուրախ եմ, որ հնարավորություն ունեմ ձեզ, մեր մոլորակի խաղաղասեր ուժերի ներկայացուցիչներին, ի սրտե ողջունելու Սովետական Միության կոմունիստական կուսակցության և ամբողջ սովետական ժողովրդի անունից:

Երեկ այս ամբիոնից մեր բարեկամ Ռոմեշ Չանդրան և մի շարք հեղինակավոր միջազգային կազմակերպությունների պատգամավորներ ջերմ, բարի խոսքեր ասացին մեր երկրի մասին, նրա միջազգային քաղաքականության մասին: Մենք խորապես երախտապարտ ենք դրանց համար: Մեր մայրաքաղաք Մոսկվան կոնգրեսի աշխատանքի վայր ընտրելու որոշումը բոլոր սովետական մարդկանց համար խթան կծառայի է՛լ ավելի ուժեղացնելու պայքարը հանուն խաղաղության, ժողովուրդների ազատության և անվտանգության:

Խաղաղության հասարակական շարժման պատմությանը հայտնի են բազմաթիվ ոգեշնչող օրինակներ: Բայց ես կկամենայի միանալ արդեն այստեղ արտահայտված այն կարծիքին, որ դեռևս երբեք չի եղել այնպիսի մասշտաբի միջազգային համաժողով, այնպիսի ներկայացուցչական հավաք, ինչպիսին է խաղաղասեր ուժերի ներկա համաշխարհային կոնգրեսը:

Այս դահլիճում հավաքվել են խաղաղության մարտիկների պատվիրակությունները սոցիալիզմի երկրներից, բուրժուական պետություններից, զարգացող երկրներից:

Այս դահլիճում մենք տեսնում ենք տարբեր քաղաքական ուղղությունների ներկայացուցիչներին՝ Երկրի վրա ավելի լավ ապագայի համար մղվող պայքարի մեր եղբայրներին՝ կոմունիստներին, սոցիալ-դեմոկրատիայի գործիչների, հեղափոխական դեմոկրատական կուսակցությունների և ազգային ազատագրական շարժումների ներկայացուցիչներին: Այստեղ ներկա են այլ ուղղությունների քաղաքական կուսակցությունների գործիչներ: Ներկա են նաև անկուսակցականներ, որոնք խորապես շահագրգռված են իրենց ժողո-

վուրդների ապագայով: Այստեղ միասին հավաքվել են աթեիստներ և հավատացյալներ:

Այս դահլիճում ներկա գտնվողների մեջ մենք տեսնում ենք բանվորների, գյուղացիների, գիտության ու արվեստի գործիչների, ամբողջ մտավորականության ներկայացուցիչների, այսինքն մարդկանց, որոնց ձեռքերը, որոնց բանականությունը, որոնց ստեղծագործական ոգևորությունը ստեղծում են մեր մոլորակի նյութական ու հոգևոր բոլոր արժեքները: Դարերից ի վեր խաղաղությունը և աշխատանքը կապված են իրար հետ: Պատերազմները ծնել են շահագործում ու ճնշում, իսկ խաղաղության աղբյուրը, վերջին հաշվով, միշտ էլ եղել է աշխատավոր մարդը: Որտեղ էլ գտնվելիս լինի այդ մարդը, հաստոցի թե ձուլման վառարանի մոտ, տրակտորի ղեկի մոտ, շինարարական փայտամածների վրա, համալսարանական ամբիոնի մոտ թե գիտահետազոտական լաբորատորիայում, նա ամենից առաջ կարիք ունի խաղաղության:

Կոնգրեսին մասնակցում են նաև կապիտալիստական երկրների գործարար աշխարհի, նրա այն շրջանների ներկայացուցիչները, որոնք կողմնակից են մոլորակի բոլոր երկրների փոխշահավետ տնտեսական համագործակցությանը: Եվ դա մի ավելորդ վկայությունն է այն լայն հիմքի, որի վրա խարսխվում է խաղաղասեր ուժերի ազնիվ շարժումը:

Ես կկամենայի առանձնապես նշել այնպիսի նոր և մեր տեսակետից ուրախալի երևույթ, ինչպիսին է Միավորված ազգերի կազմակերպության, ինչպես նաև նրա կոմիտեների ու մասնագիտացված հիմնարկությունների ներկայացուցիչների մասնակցությունը խաղաղասեր ուժերի կոնգրեսին: Այս փաստը մեզ օրինաչափ է թվում, քանի որ ՄԱԿ-ի գլխավոր նպատակներն ու խնդիրները, որոնք ձևակերպված են նրա կանոնադրության մեջ, համընկնում են տվյալ կոնգրեսի նպատակների ու ձգտումների հետ, այն է՝ ըստ ամենայնի նպաստել աշխարհի խաղաղության գործին և պետությունների ու ժողովուրդների բեղմնավոր համագործակցությանը:

Թանկագին բարեկամնե՛ր:

Բազում դարեր շարունակ մարդիկ, համենայն դեպս նրանցից ամենաիմաստունները, անդադար դատապարտել ու նզովել են պատերազմը: Ժողովուրդները երազել են կայուն խաղաղություն, բայց և այնպես մարդկության պատմության գրեթե յուրաքանչյուր էջի վրա դրոշմված են պատերազմական մեծ ու փոքր հրդեհների չարագուշակ հետքերը:

Ոչ պատմության դասերը, ոչ էլ փոխբնաջնջման նկատմամբ մարդու, թվում է թե բնական, ատելությունը չեն կանխել հերթական արյունալի սպանդը, քանի որ չափից ավելի մեծ են եղել պատերազմի ուժերը, նրա՛նց դերը, ում համար պատերազմները շահավետ են:

Դրությունը արմատապես փոխվել է մեր դարաշրջանում: Այսօր պատերազմի դեմ մղվող պայքարը ունի հուսալի հիմք— խաղաղության ուժերի, դեմոկրատիայի, ժողովուրդների ազատության և անկախության ուժերի հզորությունը:

Կոնգրեսի հարգելի մասնակիցնե՛ր: Թույլ տվեք 250 միլիոնանոց սովետական ժողովրդի անունից, նրա կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության անունից ձեզ հավաստիացնել, որ խաղաղության ամրապնդման հոգսը մեր պետության ամենագլխավոր խնդիրներից մեկն է:

«Խաղաղություն ժողովուրդներին»,— ահա այն հիմնական լոզունգներից մեկը, որի ներքո հիսունվեց տարի առաջ, առաջին համաշխարհային պատերազմի թեժ շրջանում, մեր երկրի աշխատավորները իրագործեցին Հոկտեմբերյան հեղափոխությունը: Եվ աշխարհում առաջին սոցիալիստական պետության առաջին օրենսդրական ակտը եղավ Վ. Ի. Լենինի գրած Հաշտության դեկրետը:

Այդ պատմական փաստաթղթում դիմելով բոլոր երկրների ոչ միայն կառավարություններին, այլև ժողովուրդներին, Սովետական Ռուսաստանի բանվորա-գյուղացիական կառավարությունը արտահայտեց մեր պետության



անհողդողդ ձգտումը արդարացի, դեմոկրատական խաղաղության նկատմամբ, ես շեշտում եմ՝ արդարացի խաղաղության, դեմոկրատական խաղաղության, այսինքն՝ բոլոր ժողովուրդների իրավունքների ու շահերի հարգման վրա հիմնված խաղաղության նկատմամբ: Եվ մեծ Հոկտեմբերից հետո անցած բոլոր տարիներին մենք անշեղորեն, հետևողականորեն պայքարել ենք ու պայքարում ենք մեր մոլորակի հենց այդպիսի խաղաղության հաղթանակի համար:

Սովետական ժողովուրդը, որը ֆաշիզմի դեմ մղված պատերազմում ունեցավ ավելի քան 20 միլիոն զոհեր, քաջ գիտե, թե ինչ է պատերազմը և ինչպիսի անհամար աղետներ է բերում նա մարդկանց: Հայրենական մեծ պատերազմը մեզ համար, սովետական մարդկանց համար, պայքար էր ոչ միայն հանուն մեր հայրենիքի ազատության և անկախության: Դա միաժամանակ պայքար էր հանուն համաշխարհային քաղաքակրթության փրկության, հանուն գալիք արդարացի խաղաղության: Հետպատերազմյան ամբողջ ժամանակաշրջանի ընթացքում սովետների երկիրը պայքարել է հանուն կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության:

Արդի էտապում ՍՄԿԿ-ի և սովետական պետության հետևողական խաղաղասիրական քաղաքականության արտահայտությունը եղավ կուսակցության XXIV համագումարի ընդունած խաղաղության ծրագիրը: Առաջադրելով այդ ծրագիրը, մենք մեր խնդիրն էինք համարում նպաստել լարվածության օջախների վերացմանը, օգնել մարդկությանը՝ ձերբազատվելու իրեն սպառնացող ջերմամիջուկային աղետից, ըստ ամենայնի նպաստել լարվածության թուլացմանը: Եվ հանուն այդ ազնիվ նպատակների, ի բարօրություն ամբողջ աշխատավոր մարդկության մենք աշխատում ենք ու կաշխատենք առանց ձեռքներս ծալելու:

## I

Թանկագին բարեկամնե՛ր: Ձեր կոնգրեսը գումարվել է խիստ նշանակալի, պատասխանատու պատմական պահի:

Նոր համաշխարհային պատերազմի առաջացման դեմ, կայուն խաղաղության և միջազգային անվտանգության համար ժողովուրդների երկարատև ու համառ պայքարը վերջին տարիներս նշանավորվեց լուրջ հաջողություններով:

Ինչ վերաբերում է գլխավոր հարցին, ապա դեռևս 40-ական թվականների երկրորդ կեսից մարդկության գլխին կախված՝ համաշխարհային հրթիռա-միջուկային պատերազմի առաջացման վտանգը սկսել է նվազել, ընդհանուր խաղաղության պահպանման հեռանկարները ավելի լավացել և ավելի հուսալի են դարձել, քան սրանից տասը-տասներկու տարի առաջ: Այս բանը կարելի է ասել ամենայն վստահությամբ:

Ավելի ու ավելի լայն ճանաչում են ստանում տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքները: Այդ սկզբունքները ավելի ու ավելի կոնկրետ բովանդակություն են ստանում, հետզհետե դառնում միջազգային կյանքի հանրաճանաչ նորմա:

Վերջին տարիներս նշանակալի տեղաշարժեր կատարվեցին մասնավորապես սոցիալիստական պետությունների և Արևմտյան Եվրոպայի երկրների, Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության, Իտալիայի և մի շարք այլ պետությունների, ինչպես և Ֆրանսիայի հարաբերությունների, որն առաջիններից մեկը կանգնեց տարբեր հասարակարգ ունեցող պետությունների կոնստրուկտիվ համագործակցության ուղու վրա: Միջազգային հարաբերությունների ամբողջ սիստեմում դեպի լավը կատարված շրջադարձի առավել նշանակալի դրսևորումներից մեկը եղավ Սովետական Միության, Լեհաստանի և ԳԴՀ-ի պայմանագրերը Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության հետ: Կոնգրեսի մասնակիցներին քաջ հայտնի է, որ այդ պայմանագրերը ելնում են գոյություն ունեցող սահմանների անխախտության ճանաչումից, բովանդակում

են կողմերի պարտավորությունները միջազգային հարցերը լուծելիս ուժի կիրառումից հրաժարվելու մասին:

Այս ամենը, անտարակույս, դեպի լավը փոխեց իրադրությունը Եվրոպայում՝ այն մայրցամաքում, որտեղ սկսվել են երկու համաշխարհային պատերազմները: Այստեղ կատարված դրական փոփոխությունների խտացված արտահայտությունը եղավ համաեվրոպական խորհրդակցությունը: Այդ խորհրդակցության հրավիրման բուն փաստն իսկ, որի համար այնքան երկար պայքարում էին մայրցամաքի առաջավոր ուժերը, եվրոպական բոլոր պետությունների, ԱՄՆ-ի ու Կանադայի մասնակցությունը այդ խորհրդակցությանը, Եվրոպայի խաղաղության և անվտանգության ապահովման ու խաղաղ համագործակցության հաստատման հարցերի համատեղ քննարկումը ինքնըստինքյան փոքր նվաճում չէ:

Հայտնի է, որ վերջին երկու տարիները դրական փոփոխություններ բերեցին Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների հարաբերություններում: ԱՄՆ-ի պրեզիդենտի հետ Մոսկվայում 1972 թվականի մայիսին և Վաշինգտոնում այս տարվա հունիսին մեր հանդիպումների ժամանակ կնքված համաձայնագրերը ճանապարհ բացեցին սովետա-ամերիկյան հարաբերություններում առճակատումից անցնելու լարվածության թուլացման, նորմալացման և փոխշահավետ համագործակցության: Դա, մեր խորին համոզմամբ, համապատասխանում է ինչպես Սովետական Միության և ԱՄՆ-ի ժողովուրդների, այնպես էլ մյուս բոլոր երկրների ժողովուրդների շահերին, քանի որ ծառայում է միջազգային անվտանգության ամրապնդման գործին:

Վերջին տարիներս շատ բան է փոխվել նաև միջազգային անվտանգության տեսակետից կարևոր այնպիսի շրջաններում, ինչպիսիք են Հարավ-Արևելյան Ասիան և Հեռավոր Արևելքը: Համաշխարհային նշանակություն ունեցող իրադարձություն եղավ պատերազմի դադարեցումը Վիետնամում: Դա ամենից առաջ հերոսական վիետնամական ժողովրդի հաղթանակն է: Դա նաև սոցիալիստական պետությունների հաղթանակն է, որոնք մշտապես գործուն օգնություն էին ցույց տալիս Վիետնամին իր արդարացի պայքարում: Դրա հետ մեկտեղ, դա խաղաղության բոլոր ուժերի հաղթանակն է, որոնք ակտիվորեն հանդես էին գալիս Հնդկաչինում իմպերիալիստական ագրեսիայի դադարեցման օգտին: Խաղաղության օգտին հանդես եկող հասարակական շրջանները անկեղծորեն ողջունում են Հարավային Ասիայում նորմալ հարաբերությունների հաստատումը,— ես նկատի ունեմ այնպիսի պետությունների հարաբերություններ, ինչպիսիք են Հնդկաստանը, Պակիստանը, Բանգլադեշը: Շատ բնագավառներում զարգանում են Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների բարի հարաբերությունները Ճապոնիայի հետ: Դրա վկայություններից մեկն է այդ երկրի պրեմիեր-մինիստրի վերջերս Մոսկվա կատարած այցի արդյունքները:

Պատերազմական մի շարք օջախների վերացումը, սպառազինությունների մրցավազքի սահմանափակման առաջին քայլերը, միջազգային-իրավական շատ կարևոր ակտերը և տարբեր հասարակարգ ունեցող պետությունների միջև մշտական քաղաքական կոնսուլտացիաները՝ այս ամենը միջազգային կյանքում տեղի ունեցած խոր փոփոխությունների ակնհայտ տեսանիշներն են: Այդ մասին են վկայում նաև միջազգային տնտեսական, գիտատեխնիկական, կուլտուրական համագործակցության ավելի ու ավելի լայն մասշտաբները: Մի խոսքով, միջազգային անվտանգության պայքարի հաջողությունները առկա են, և ժողովուրդները ջերմորեն ողջունում են այդ:

Իհարկե, մենք ռեալիստներ ենք և չենք կարող չտեսնել նաև այլ կարգի փաստեր: Մենք բոլորս քաջ գիտենք, որ տակավին չեն վերացել պատերազմներն ու միջազգային սուր ճգնաժամերը: Աշխարհում դեռ կատարվում են ագրեսիայի ակտեր, բնավ ո՛չ բոլոր ժողովուրդները կարող են իրենց անվտանգ զգալ: Եվ մենք լիովին բաժանում ենք այն տագնապը, որն այստեղ այդ կապակցությամբ արտահայտեցին համաշխարհային հասարակայնության ականավոր ներկայացուցիչները:



Բայց ժողովուրդների նկատմամբ ագրեսիայի ու բռնության ակտերը առաջներում երբեք այնպիսի ընդհանուր վրդովմունք, բողոք և ակտիվ հակազդեցություն չեն առաջացրել, ինչպես այդ տեղի է ունենում մեր օրերում: Առաջներում երբեք նման դեպքերում շարժման մեջ չէին մտնում այդքան հզոր պետական ու հասարակական ուժեր՝ նպատակ ունենալով կանգնեցնել ագրեսորին, հանգցնել պատերազմի բռնկված օջախը, ամրապնդել խաղաղության հիմքերը: Եվ դա արդեն խոշոր նվաճում է:

Մեր խորին համոզմամբ, արդի միջազգային հարաբերությունների զարգացման գլխավոր միտումը տեղի ունեցող շրջադարձն է «սառը պատերազմից» դեպի լարվածության թուլացում, ռազմական առճակատումից դեպի անվտանգության ամրապնդում, դեպի խաղաղ համագործակցություն:

Ինչո՞ւ հնարավոր դարձավ այդպիսի շրջադարձը:

Մեզ համար կասկած չկա, որ այստեղ գլխավորը համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցության ընդհանուր փոփոխումն է: Փոփոխում՝ ի վնաս «սառը պատերազմի», սպառազինությունների մրցավազքի կողմնակիցների, ամեն տեսակ պատերազմական արկածախնդրությունների սիրահարների, փոփոխում՝ հօգուտ խաղաղության և առաջադիմության ուժերի:

Դժվար է մեր օրերում տեղի ունեցող դրական տեղաշարժերի մեջ գերագնահատել այն դերը, որը խաղում են սոցիալիզմի ուժերը, սոցիալիստական համագործակցությունը: Խաղաղության բարելավման և ամրապնդման համար պայքարը Սովետական Միությունը մղում է իր լավ բարեկամների և համախոհների՝ սոցիալիստական համագործակցության երկրների հետ միասին: Ամբողջ աշխարհում հայտնի է այն մեծ ավանդը, որ Բուլղարիան, Հունգարիան, ԳԴՀ-ն, Լեհաստանը, Ռումինիան, Չեխոսլովակիան մուծում են խաղաղության ամրապնդման և միջազգային համագործակցության զարգացման գործում և մասնավորապես Եվրոպայի անվտանգության ամրապնդման գործում: Որպես խաղաղության ակտիվ ջատագով հանդես է գալիս սոցիալիստական Հարավսլավիան:

Ասիայում խաղաղության և անվտանգության էական գործոն է Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության հետևողական խաղաղասիրական քաղաքականությունը: Վիետնամի Դեմոկրատական Հանրապետությունը մեծագույն արիություն ցուցաբերեց ամերիկյան իմպերիալիզմի զինված ինտերվենցիայի դեմ մղած պայքարում և քաղաքական մեծ ավանդ մուծեց Հարավ-Արևելյան Ասիայում պատերազմի վտանգավոր օջախը վերացնելու գործում: Ամբողջ աշխարհում քաղաքական լայն արձագանք գտավ Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Հանրապետության նախաձեռնությունը՝ ուղղված Կորեայի խաղաղ վերամիավորման նպատակին:

Հեղափոխական Կուբան՝ Լատինական Ամերիկայում սոցիալիզմի առաջին երկիրը, շատ բան է անում միջազգային հարաբերություններում խաղաղության, ժողովուրդների ազատության և անկախության սկզբունքները հաստատելու համար:

Ես կուզենայի կոնգրեսի ամբիոնից ամբողջ սրտով արտահայտել խորին հարգանքի այն զգացումները, որ Սովետական Միության կոմունիստները, բոլոր սովետական մարդիկ տածում են դեպի սոցիալիզմի եղբայրական երկրները, նրանց սկզբունքային և հետևողական խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը:

Վերջին տարիների միջազգային հարաբերությունների բնորոշ գիծն են կազմում այն բազմաթիվ երկխոսությունները, որոնք տեղի են ունենում տարբեր պետությունների ղեկավարների միջև: Պետական գործչի իսկական դերն ու քաղաքական կշիռը մեր ժամանակներում զգալիորեն որոշվում են նրանով, թե ինչ չափով է նա հասկանում խաղաղության պահպանման և ամրապնդման պրոբլեմի նշանակությունը, գործնականում ինչ է անում արդիականության այդ ամենագլխավոր պրոբլեմի լուծման համար:

Այս իմաստով չի կարելի պատշաճը չհատուցել արևմտյան երկրների այն

պետական գործիչներին, որոնք ձգտում են հաղթահարել «սառը պատերազմի» իներցիան և բռնել նոր ճանապարհի— սոցիալական այլ սիստեմին պատկանող պետությունների հետ խաղաղ երկխոսության ճանապարհը: Մենք տեսնում ենք նաև միջազգային լարվածության թուլացման կողմնակիցների ու հակառակորդների՝ Արևմուտքի երկրներում տեղի ունեցող պայքարը, տեսնում ենք նաև զանազան հարցերում այս կամ այն պետությունների դիրքերում եղած որոշակի անհետևողականությունը: Այնպես որ, խաղաղության ամրապնդման ուղիով հետագա առաջընթացի համար դեռևս ոչ քիչ ջանքեր են պետք: Ինչ վերաբերում է մեզ, ապա մենք պատրաստ ենք այդ բանին:

Վերլուծելով համաշխարհային իրադրության մեջ տեղի ունեցած այժմյան շրջադարձի ակունքներն ու պատճառները, անհրաժեշտ է ընդգծել այն մեծ դերը, որն այդ պրոցեսում խաղում են գաղութային լուծը թոթափած և ազգային անկախության հասած պետությունները:

Հետպատերազմյան զարգացման ամբողջ ընթացքը համոզիչ կերպով ցույց տվեց. գաղութատիրությունն ու ագրեսիան, գաղութային ճնշման քաղաքականությունը և ուժի քաղաքականությունը՝ ըստ էության նույն մեդալի երկու կողմերն են: Ուստի խորապես արդարացված է այն հանգամանքը, որ ձեր կոնգրեսի բուն անվանման մեջ խաղաղության պայքարը սերտ կապի մեջ է դրված ազգային ազատագրության պայքարի հետ:

Այդ կապը առանձնապես ակնառու կերպով ցուցադրվեց ազատության համար այն բազմամյա պայքարի օրինակով, որ մղում էր հերոսական վիետնամական ժողովուրդը: Կարծում եմ, որ մենք բոլորս համաձայն ենք այն բանին, որ ագրեսիան ետ մղելու գործում հենց Վիետնամի ժողովրդի հաջողությունը և նրա կողմից իր ազատության ու անկախության հաջող պաշտպանությունը ստեղծում են կայուն և արդարացի խաղաղության հիմք: Մենք համոզված ենք, որ միայն այդ շրջանի բոլոր ժողովուրդների ազատության, անկախության և սուվերենության հարգման հիման վրա կարող են վերջնականապես հաստատվել խաղաղությունն ու անկախությունը Հարավ-Արևելյան Ասիայում:

Եվ մի՞թե ակնհայտ չէ, որ իսրայելական ագրեսիայի հետևանքների վերացման համար արաբական ժողովուրդների պայքարը միևնույն ժամանակ պայքար է Մերձավոր Արևելքում կայուն ու արդարացի խաղաղություն հաստատելու համար:

Այդ շրջանի լարվածության օջախում արդեն չորրորդ անգամ պատերազմ է բռնկել: Այս ամսին պատերազմական գործողությունները չտեսնըված ինտենսիվության հասան, երկու կողմից էլ մեծաթիվ զոհեր խլեցին, այդ թվում քաղաքացիական բնակչության շրջանում՝ Եգիպտոսի և Սիրիայի խաղաղ քաղաքների ու գյուղերի բարբարոսական ռմբակոծությունների հետևանքով: Վերջին իրադարձությունները առանձին ակնհայտությամբ ամբողջ աշխարհին ցուցադրեցին Մերձավոր Արևելքում ստեղծված դրության վտանգավոր բնույթը, դրա փոփոխման հրամայական անհրաժեշտությունը:

Իրադարձությունների փաստական ընթացքը ձեզ, իհարկե, քաջ հայտնի է: Ուստի այստեղ ես կանգ կառնեմ հարցի սկզբունքային կողմի վրա: Որո՞նք են այս շրջանում պարբերաբար առաջացող պատերազմական կոնֆլիկտների, այդ թվում նաև այժմյան պատերազմի արմատական պատճառները: Մեր տեսակետից, պատասխանը պարզ է՝ դա Իսրայելի կողմից կատարված ագրեսիայի հետևանքով արաբական հողերի զավթումն է, այն, որ Թել-Ավիվը համառորեն չի ցանկանում հաշվի առնել արաբական ժողովուրդների օրինական իրավունքները, և այն, որ այդ ագրեսիվ քաղաքականությունը պաշտպանում են կապիտալիստական աշխարհի այն ուժերը, որոնք ձգտում են խանգարել արաբական առաջադեմ պետությունների ազատ և անկախ զարգացմանը:

Վերջին տարիների ընթացքում Սովետական Միությունը բազմիցս, ընդգծում եմ բազմիցս, նախազգուշացրել է, որ Մերձավոր Արևելքում տիրող դրությունը հղի է պայթյունով: Այդ հարցում մեր գիծը պարզ ու հետևողա-



կան է սկզբից մինչև վերջ: Ելնելով ինչպես սոցիալիստական արտաքին քաղաքականության ընդհանուր սկզբունքներից, այնպես էլ այն փաստից, որ այդ շրջանը գտնվում է մեր սահմանի անմիջական մոտակայքում, մենք շահագրգռված ենք, որ Մերձավոր Արևելքում հաստատվի իրոք կայուն և արդարացի խաղաղություն, որ ապահովվեն այդ շրջանի բոլոր երկրների ու ժողովուրդների անվտանգությունը, նրանց իրավունքը՝ հանգիստ կերպով իրենց կյանքը կառուցելու այնպես, ինչպես իրենք են ցանկանում: Հենց դրա համար էլ Սովետական Միությունը շարունակ պնդում էր, որ արաբական պետություններին վերադարձվեն Իսրայելի կողմից օկուպացված հողերը, որ հաղթանակի արդարությունը պաղեստինյան ժողովրդի վերաբերմամբ: Սովետական Միությունը վարել է և այսուհետև էլ կվարի այդպիսի քաղաքականություն:

Այս ամսվա սկզբներին Մերձավոր Արևելքում պատերազմական գործողությունները վերսկսվելու պահից Սովետական Միությունը, սերտ կոնտակտ պահպանելով բարեկամ արաբական պետությունների հետ, գործադրում էր իրենից կախված բոլոր քաղաքական միջոցառումները, որպեսզի նպաստեր պատերազմի ավարտմանը և այնպիսի պայմանների ստեղծմանը, որոնց առկայությամբ Մերձավոր Արևելքում խաղաղությունը իրոք կայունանար այդ շրջանի բոլոր պետությունների համար:

Ինչպես հայտնի է, հոկտեմբերի 22-ին և 23-ին, Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների առաջարկությամբ, ՄԱԿ-ի Անվտանգության խորհուրդը երկու անգամ որոշում ընդունեց կրակը դադարեցնելու մասին: Երկու անգամն էլ Իսրայելը, խոսքով հայտարարելով, որ ինքը ենթարկվում է Խորհրդի որոշմանը, գործով ուխտադրժորեն խախտեց այն, շարունակելով ագրեսիվ գործողությունները ընդդեմ Եգիպտոսի: Զավթելով այդ երկրի նորանոր տերիտորիաներ, Իսրայելը լիովին անտեսեց Անվտանգության խորհրդի պահանջը զորքերը այն դիրքերը ետ քաշելու մասին, որ նրանք գրավում էին մինչև հոկտեմբերի 22-ի երեկո:

Դժվար է հասկանալ, թե ինչի վրա են հույսերը դրել Իսրայելի կառավարողները, վարելով այդ արկածախնդրական կուրսը, քամահրելով ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդի որոշումները, մարտահրավեր նետելով համաշխարհային հասարակական կարծիքին: Ըստ երևույթին, այստեղ իր դերն է խաղում դրսից ցույց տրվող հովանավորությունը: Բայց Իսրայելի կառավարության այդպիսի քաղաքականությունը թանկ է նստում իսրայելական ժողովրդի վրա: Ուրիշի հողերը բռնի զավթելու և պահելու միջոցով պետության խաղաղությունն ու անվտանգությունը ապահովելու հույսերը խելացնոր հույսեր են, որոնք դատապարտված են անխուսափելի ձախողման: Այդպիսի կուրսը Իսրայելին չի բերի ոչ խաղաղություն, ոչ էլ անվտանգություն: Դա կհանգեցնի միայն Իսրայելի է՛լ ավելի մեծ միջազգային մեկուսացման, նրա նկատմամբ առաջ կբերի հարևան ժողովուրդների է՛լ ավելի մեծ ատելությունը: Արաբների խիզախ պայքարը, արաբական պետությունների անող համերաշխությունը համոզիչ կերպով վկայում են, որ նրանք երբեք չեն հաշտվի իսրայելական ագրեսիայի հետ, երբեք չեն հրաժարվի իրենց օրինական իրավունքներից: Սովետական Միությունը հաստատ ու հետևողականորեն պաշտպանում է արաբական ժողովուրդների արդարացի պահանջները:

Մերձավոր Արևելքում խաղաղություն պահանջողների կոլեկտիվ կամքը պետք է հաղթանակի խաղաղությունը խախտողների խելացնորությանը: Վերջին օրերի փորձը ստիպում է զգոն լինել: Անհրաժեշտ են շտապ և վճռական միջոցներ՝ ապահովելու կրակի դադարեցման և զորքերի ետքաշման վերաբերյալ որոշումների հուսալի կենսագործումը:

Եգիպտոսի պրեզիդենտ Սադաթը դիմել էր Սովետական Միությանը և Ամերիկայի Միացյալ Նահանգներին՝ խնդրելով պատերազմական գործողությունների շրջան ուղարկել իրենց ներկայացուցիչներին, որպեսզի հսկեն կրակի դադարեցման վերաբերյալ Անվտանգության խորհրդի որոշման կատար-

մանը: Մենք պատրաստակամություն հայտնեցինք բավարարել Եգիպտոսի խնդրանքը և արդեն ուղարկել ենք այդպիսի ներկայացուցիչներ: Հուսով ենք, որ նույն կերպ կվարվի նաև ԱՄՆ-ի կառավարությունը: Դրա հետ մեկտեղ, մենք խորհում ենք նաև այլ հնարավոր միջոցների մասին, որոնց ձեռնարկումը կարող է պահանջել իրադրությունը:

Կրակի դադարեցման շարունակվող խախտումների կապակցությամբ հոկտեմբերի 25-ին ՄԱԿ-ի Անվտանգության խորհուրդը որոշում ընդունեց անհապաղ ստեղծել Միավորված ազգերի կազմակերպության արտակարգ ուժեր, որոնք կուղարկվեն պատերազմական գործողությունների շրջան: Մենք կարծում ենք, որ դա օգտակար որոշում է, և հուսով ենք, որ նա իր դերը կխաղա իրադրության նորմալացման գործում:

Մերձավոր Արևելքի իրադրության նորմալացման գործում Սովետական Միությունը պատրաստ է համագործակցելու բոլոր շահագրգռված երկրների հետ: Բայց նման համագործակցությանը, իհարկե, չեն կարող նպաստել ՆԱՏՕ-ի երկրների որոշակի շրջաններում վերջին օրերս ձեռնարկվող այնպիսի գործողություններ, ինչպիսիք են կրքերի արհեստական բորբոքումը՝ Մերձավոր Արևելքի նկատմամբ Սովետական Միության մտադրությունների վերաբերյալ զանազան երևակայական հերյուրանքներ տարածելու միջոցով: Տվյալ իրավիճակում, ինչպես մեզ թվում է, տեղին կլիներ ավելի պատասխանատու, ազնիվ և կոնստրուկտիվ մոտեցումը:

Կկամենայի շեշտել, որ Անվտանգության խորհրդի հոկտեմբերի 22-ի որոշումը նախատեսում է ոչ միայն կրակի դադարեցում, այլև միտում է պատերազմի բուն պատճառների վերացման նպատակին ուղղված կարևոր քայլերի իրականացում: Եվ դա է նրա հատուկ արժեքավորությունը: Շահագրգռված կողմերը պետք է անհապաղ սկսեն Մերձավոր Արևելքի վերաբերյալ Անվտանգության խորհրդի 1967 թվականի նոյեմբերի 22-ին ընդունած բանաձևի գործնական կատարումը՝ նրա բոլոր մասերով:

Հիշեցնեմ, որ այդ բանաձևը ընդգծում է «պատերազմի միջոցով տերիտորիա ձեռք բերելու անթույլատրելիությունը»: Այն նախատեսում է իսրայելական զինված ուժերի դուրս բերում 1967 թվականի կոնֆլիկտի ժամանակ օկուպացված տերիտորիաներից, պահանջում է հարգել ու ճանաչել տվյալ շրջանի յուրաքանչյուր պետության սուվերենությունը, տերիտորիալ ամբողջականությունն ու քաղաքական անկախությունը և խաղաղ ապրելու նրանց իրավունքը: Այնտեղ ասվում է նաև «գաղթականների պրոբլեմի» արդարացի կարգավորման հասնելու, այսինքն՝ Պաղեստինի արաբ ժողովրդի օրինական իրավունքների ապահովման անհրաժեշտության մասին:

Դժվար չէ տեսնել, որ եթե 1967 թվականին ընդունված դրույթները հենց այն ժամանակ կենսագործվեին, Մերձավոր Արևելքում արդեն վեց տարի կայուն խաղաղություն կտիրեր: Սակայն դա տեղի չունեցավ: Տեղի չունեցավ արտաքին ուժերի կողմից քաջալերվող Իսրայելի կառավարող շրջանների դաժնյալ նույն կարճատես և արկածախնդրական քաղաքականության պատճառով:

Անվտանգության խորհրդի կողմից երկուշաբթի օրը, հոկտեմբերի 22-ին ընդունված որոշման ոգուն ու տառին համապատասխան, շահագրգռված կողմերը համապատասխան հովանու ներքո պետք է անհապաղ բանակցություններ սկսեն Մերձավոր Արևելքում արդարացի և կայուն խաղաղություն հաստատելու նպատակով: Այդպիսի բանակցությունների նշանակությունը անհնար է գերագնահատել: Նրանց մասնակիցների վրա պատմական պատասխանատվություն է ընկնում: Սովետական Միության մասին կարող եմ ասել, որ նա պատրաստ է կոնստրուկտիվ ավանդ մուծել և կմուծի այդ գործում: Մենք հաստատորեն հանդես ենք գալիս հօգուտ այն բանի, որ Մերձավոր Արևելքի բոլոր, կրկնում եմ, բոլոր պետությունների և ժողովուրդների համար ապահովվեն խաղաղություն, անվտանգություն և սահմանների անխախտություն: Սովետական Միությունը պատրաստ է մասնակցել համապատասխան երաշխիքների մշակմանը:



Մեզ թվում է, որ արդի պայմաններում խաղաղության բոլոր կողմնակիցների, բոլոր խաղաղասեր ուժերի ամենակարևոր խնդիրներից մեկն է՝ հասնել Անվտանգության խորհրդի այս տարվա հոկտեմբերի 22-ի որոշման անհապաղ և լրիվ իրականացման: Դա անհրաժեշտ է Մերձավոր Արևելքի բոլոր պետությունների ու ժողովուրդների ազատ ու անկախ զարգացման համար: Դա համապատասխանում է Եվրոպայի և Ասիայի, Աֆրիկայի և Ամերիկայի շատ պետությունների շահերին, որոնց համար աշխարհի այդ շրջանի քաղաքական ու տնտեսական կյանքի նորմալացումը փոքր նշանակություն չունի: Վերջապես, այս օրերին Մերձավոր Արևելքում առաջացած իրադրության սրությունը, կոնֆլիկտն ընդլայնելու վտանգը ամենայն ակնհայտությամբ ցույց են տալիս, թե որքան կարևոր է այդ խնդրի լուծումը նաև համընդհանուր խաղաղության ամրապնդման:

Կոնգրեսի հարգելի մասնակիցնե՛ր:

Գաղութային ճնշումից ազատագրված երկրների ժողովուրդների առջև տնտեսական ու սոցիալական վիթխարի խնդիրներ են կանգնած: Դրանք հաջողությամբ կարող են լուծվել միայն բոլոր պետությունների հուսալի անվտանգության և փոխշահավետ լայն համագործակցության վրա խարսխված խաղաղության հիմքի վրա:

Խաղաղության հետևողական քաղաքականության և ներքին խնդիրների դեմոկրատական լուծման միացման օրինակ է տալիս Հնդկաստանի Հանրապետությունը: Հանդես գալով գոյություն ունեցող միջազգային պրոբլեմների արդարացի խաղաղ կարգավորման օգտին, նա դրանով իսկ բարենպաստ պայմաններ է ստեղծում ներքին խնդիրների լուծման համար: Դրա հետ միասին, քայլ առ քայլ լուծելով ներքին սոցիալ-տնտեսական պրոբլեմները, հնդիկ ժողովուրդը էապես ամրապնդում է իր խաղաղասիրական արտաքին քաղաքականության բազան:

Միջազգային մեծ նշանակություն ունեն չմիացած պետությունների Ալժիրի կոնֆերանսի որոշումները, որին մասնակցեցին Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի շատ երկրների ղեկավարներ: Կոնֆերանսը կրկին հաստատեց այդ երկրների վճռականությունը՝ նպատակասլաց կերպով պայքարելու ընդդեմ իմպերիալիզմի, պատերազմի և ագրեսիայի, հանուն խաղաղության, ժողովուրդների անկախության և ազատության:

Մի խոսքով, «երրորդ աշխարհի» խաղաղասեր պետությունների ակտիվ քաղաքականությունը նշանակալի, ծանրակշիռ ավանդ է մուծում միջազգային լարվածության թուլացման գործում:

Արդի միջազգային զարգացման կարևորագույն գործոններից մեկը ժողովրդական մասսաների, նրանց կազմակերպությունների, նրանց քաղաքական կուսակցությունների ակտիվ մասնակցությունն է պատերազմի և խաղաղության պրոբլեմների լուծմանը: Դա, իհարկե, պատմական այն փորձի արգասիքն է, որ կուտակել է մարդկությունը: Առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմների դառը դասերի վերհուշը, այն ահավոր հետևանքների ըմբռնումը, որոնց կհասցներ միջուկային զենքի գործադրումը, մեր մոլորակի մարդկանց տիրաբար կոչում են դիմելու ակտիվ գործողությունների, որպեսզի թույլ չտրվի մարդկության պատմության մեջ դեռևս չտեսնված ողբերգություն:

Մեր միջուկային դարում երևան է գալիս խաղաղության պայքարում ժողովուրդների համերաշխության նոր, առավել խոր զգացում, և, դրա հետ մեկտեղ, խաղաղության բախտի համար նրանց ընդհանուր պատասխանատվության առավել սուր զգացողություն: Այդ զգացումը խաղաղության ամրապնդման, միջազգային հուսալի անվտանգության համար հարաճուն պայքարի զորեղ խթանն է:

Կարելի է վստահությամբ ասել, որ համաշխարհային իրադրության մեջ ներկա տեղաշարժերը զգալիորեն հասարակական ուժերի գործունեության արգասիքն են: Ժողովրդական մասսաների առ այսօր չտեսնված ակտիվության արգասիքը, որոնք սուր անհանդուրժողություն են ցուցաբերում կա-

մայականության և ագրեսիայի հանդեպ, արտահայտում խաղաղության անընկճելի կամք:

Այդ են վկայում նաև Բուլղարիայում հենց նոր ավարտված արհմիությունների համաշխարհային կոնգրեսի արդյունքները: Կոնգրեսը համոզիչ կերպով արտահայտեց բանվոր դասակարգի, ծառայողների, մտավորականության 170-միլիոնանոց կազմակերպված մասսայի խաղաղատենչությունը:

Ասենք՝ ձեր կոնգրեսի հրավիրումը ևս, նրա լայն ու ներկայացուցչական բնույթը համոզիչ և ակնբախ վկայում են, թե ինչպիսի ուժ է դարձել համաշխարհային հասարակայնությունը, թե նա ինչ դեր կարող է խաղալ խաղաղության ու անվտանգության հաստատման, միջազգային հարաբերությունների դեմոկրատացման պայքարում:

II

Այսպիսով, հարգելի բարեկամներ, մենք գոհունակությամբ կարող ենք ասել՝ վերջին տարիներս բոլոր խաղաղասեր ուժերի միացյալ ջանքերով հաջողվել է հասնել այն բանին, որ միջազգային մթնոլորտը ամբողջովին վերցված ավելի է բարելավվել, պետությունների խաղաղ գոյակցության, խաղաղ համագործակցության քաղաքականությունը ծանրակշիռ ռեալ արդյունքներ է տալիս:

Այդուհանդերձ պարզ է, որ դա սոսկ սկզբնական փուլն է դեպի մարդկության խաղաղ ապագայի հուսալի ապահովումը տանող շարժման, նպատակ, որը, ըստ իս, միավորում է այս դահլիճում բոլոր ներկա գտնվողներին և նրանց, ում դուք ներկայացնում եք: Մենք անհրաժեշտ նախադրյալներ ենք միայն ստեղծում այդ նպատակին հասնելու համար: Մեր ընդհանուր պարտքն է անդուլ կերպով առաջ ընթանալ ընտրած ուղիով, ընթանալ առանց կանգառնելու, հաստատակամորեն, լայն ճակատով, վճռականորեն կոտրելով լարվածության թուլացման հակառակորդների և «սառը պատերազմի» երկրպագուների դիմադրությունը: Խնդիրն այն է, ինչպես կարծում ենք մենք Սովետական Միությունում, որ միջազգային հարաբերությունների զարգացման վճռական բնագավառներում լարվածության թուլացումը դառնա հաստատուն, կայուն, ավելին՝ անփոփոխելի:

Եվ այստեղ, իհարկե, շատ բան կարող է արվել առաջին հերթին Եվրոպայում: Այդ մայրցամաքի ժողովուրդները, ինչպես ոչ մի այլ մայրցամաքի, տուժել են անցյալ պատերազմներից, այդ թվում դրանցից ամենաահավորից՝ երկրորդ համաշխարհային պատերազմից: Եվ նրանց «եվրոպական տանը» արտադրողական ուժերի ժամանակակից բնույթի պայմաններում չափազանց նեղ ու անհարմար է դարձել տնտեսական ներփակ կյանքը յուրաքանչյուր «բնակարաններում»: Բացի դրանից, այդ տունը խիստ դյուրավառ է դարձել մասսայական ոչնչացման ներկայիս միջոցների առկայությամբ: Ի վերջո, Եվրոպայի խաղաղության պահպանումը ըստ էության դարձել է հրամայական անհրաժեշտություն, իսկ եվրոպական պետությունների բազմակողմանի խաղաղ համագործակցության ըստ ամենայնի զարգացումը՝ միակ, իրոք, բանական ելքը: Դրան նպաստում է այն հանգամանքը, որ Եվրոպայի կյանքում ավելի ու ավելի ակտիվ և նշանակալից դեր են խաղում սոցիալիստական երկրները, որոնք խորապես ու անկեղծորեն նվիրված են խաղաղության գործին ու միջազգային համագործակցությանը, իսկ մայրցամաքի արևմտյան մասում աճում է քաղաքական ռեալիզմը, ավելի ու ավելի ազդեցիկ են դառնում նույն նպատակներին հասնելու օգտին հանդես եկող շրջանները:

Ահա թե ինչու մենք հավատում ենք համաեվրոպական խորհրդակցության վերջնական հաջողությանն ու պատմական դերին, չնայած այն բոլոր բարդություններին, որ տակավին պետք է հաղթահարեն այդ եզակի համաժողովի մասնակիցները, որն այժմ թևակոխել է իր աշխատանքի արտաքուստ, թերևս, ոչ շատ ակնառու, բայց չափազանց կարևոր փուլը:

Մենք ի՞նչ ենք ուզում այդ խորհրդակցությունից, ի՞նչ հույսեր ունենք:



Եթե խոսելու լինենք ամենաընդհանուր ձևով, ապա մենք ուզում ենք, որ խորհրդակցության բոլոր մասնակիցների կողմից միահամուռ կերպով, անկեղծորեն, ինչպես ասում են՝ ի սրտե, առանց «դիվանագիտական» թերասությունների ու թյուրասությունների ձևակերպվեն, հաստատվեն և մայրցամաքի բոլոր ժողովուրդների կողմից ընդունվեն եվրոպական պետությունների փոխհարաբերությունների որոշակի սկզբունքներ: Ես ի նկատի ունեմ, օրինակ, այնպիսի սկզբունքներ, ինչպիսիք են Եվրոպայի բոլոր պետությունների տերիտորիաների անձեռնմխելիությունը, նրանց սահմանների անխախտությունը, պետությունների հարաբերություններում ուժ կամ ուժի սպառնալիք չգործադրելը, միմյանց ներքին գործերին չմիջամտելը և տարբեր բնագավառներում այդ հիման վրա փոխշահավետ համագործակցության զարգացումը:

Մենք կուզենայինք, որ այդ սկզբունքները եվրոպական կյանքի ամենօրյա պրակտիկայի, եվրոպական ժողովուրդների հոգեբանության մեջ մտնեն որպես սրբազան, անառարկելի սկզբունքներ, որ դրանք թե՛ կառավարությունների և թե՛ ժողովուրդների կողմից ընդունվեն ու կենսագործվեն:

Մենք կուզենայինք տեսնել, թե ինչպես խարսխվելով այդ սկզբունքների վրա, կբարգավաճի պետությունների տնտեսական, գիտական, կուլտուրական համագործակցության՝ ողջ մայրցամաքը խիտ հյուսված ցանցով պատած սիստեմը:

Վաղընջական ժամանակներից առևտուրը միավորել է ժողովուրդներին ու երկրներին: Այդպես է նաև մեր օրերում: Բայց այսօր պարզապես ձեռնտու և խելացի չէ տնտեսական համագործակցությունը սոսկ առևտրով սահմանափակելը:

Ժամանակին համընթաց գնալ, գիտատեխնիկական հեղաշրջման պահանջների ու հնարավորությունների մակարդակին հասնել կարելի է աշխատանքի միջազգային լայն բաժանման միջոցով միայն: Այսօր դա, թերևս, աքսիոմա է: Այստեղից էլ՝ ինչպես երկկողմ, այնպես էլ բազմակողմ, փոխշահավետ, երկարաժամկետ, խոշոր մասշտաբի տնտեսական համագործակցության անհրաժեշտությունը: Սա, իհարկե, վերաբերում է ոչ միայն Եվրոպային, այլև բոլոր մայրցամաքներին, մեր օրերի միջազգային տնտեսական կապերի ողջ սիստեմին: Մենք այդպիսի համագործակցության օգտին ենք հանդես գալիս նաև այն պատճառով, որ դրանում տեսնում ենք պետությունների խաղաղ հարաբերությունների նյութական ամրապնդման հուսալի միջոցը:

Մենք հուսով ենք և հավատում ենք, որ համաեվրոպական խորհրդակցության կողմից մշակվող քաղաքական բազան և ամենօրյա խաղաղ համագործակցությունը կլրացվեն և կամրապնդվեն մայրցամաքում ռազմական լարվածության թուլացման միջոցառումներով: Ինչպես դուք գիտեք, հենց դրան են նվիրված հինգ օր հետո Վիեննայում սկսվող բանակցությունները:

Այդ բանակցությունները մեծ կարևորություն ունեն թե՛ Եվրոպայի համար և թե՛ աշխարհի ամբողջ իրադրության համար: Սովետական Միությունը դրանց մոտենում է ամենայն լրջությամբ ու պատասխանատվությամբ, վերաբերվում կոնստրուկտիվ կերպով և ռեալիստորեն: Մեր դիրքավորումը պարզ է ու հասկանալի: Մենք գտնում ենք, որ հարկավոր է պայմանավորվել Կենտրոնական Եվրոպայի արդեն որոշակի շրջանում ինչպես օտարերկրյա, այնպես էլ բանակցությունների մասնակից պետությունների ազգային ցամաքային ու ռազմա-օդային ուժերի կրճատման շուրջ: Ընդսմին, չպետք է վնաս հասցվի կողմերից որևէ մեկի անվտանգությանը, և նրանցից ոչ մեկը չպետք է միակողմանիորեն շահի մյուսի հաշվին: Ըստ երևույթին, նաև հարկավոր է ընդունել, որ պետք է կրճատվեն միջուկային զենքով զինված զորամասերը ևս:

Թե հատկապես ինչպես պետք է կատարել կրճատումը, ինչ մեթոդ կիրառել, արդյոք պետք է կրճատել հավասար տոկոսներով, թե հավասար քանակություններով, սրա շուրջը դեռ պետք է պայմանավորվեն բանակցությունների մասնակիցները: Մեր տեսակետից, կարևոր է, որ ապագա կրճատումը

չխախտի ուժերի ստեղծված հարաբերակցությունը Կենտրոնական Եվրոպայում և առհասարակ Եվրոպայի մայրցամաքում:

Եթե փորձեն խախտել այս սկզբունքը, ապա ամբողջ հարցը կդառնալով կռվախնձոր և անծայր վեճերի առարկա:

Թե որքան շուտ կարելի կլինի սկսել զինված ուժերի և սպառազինությունների բուն կրճատումը, դրա շուրջը ևս պետք է պայմանավորվել Վիեննայում: Սովետական Միությունը պատրաստ կլիներ այս առումով ռեալ քայլերի դիմելու արդեն 1975 թվականին: Մոտ ժամանակներս կարելի էր դրա վերաբերյալ կնքել կոնկրետ համաձայնագիր: Այդպիսի համաձայնագիրը, անտարակույս, նոր մեծ քայլ կլիներ Եվրոպայի քաղաքական իրադրության բարելավման ճանապարհին, կօգներ վստահության, բարի կամքի և խաղաղ համագործակցության մթնոլորտի հաստատմանը այս մայրցամաքում:

Մենք արդեն բազմիցս ասել ենք, որ լարվածության թուլացումը և միջպետական համագործակցության զարգացումը չեն կարող երկրագնդի ինչ-որ մեկ սահմանափակ շրջանի մենաշնորհը լինել: Խաղաղությունը իսկապես անբաժանելի է: Մենք համոզված ենք, որ խաղաղ գոյակցության և խաղաղ համագործակցության նորմաները պետք է գերիշխեն թե՛ Եվրոպայում, թե՛ Աֆրիկայում և թե՛ Հարավային ու Հյուսիսային Ամերիկայում: Այս հարցը սպառնական մի շարք կոնկրետ պատճառների բերումով, թերևս, առանձնահատուկ նշանակություն ունի Ասիայի համար:

Հայտնի է, որ Սովետական Միությունը հանդես է գալիս Ասիայի մայրցամաքի խաղաղությունը կոլեկտիվ ջանքով ամրապնդելու օգտին: Մենք դա պատկերացնում ենք որպես բոլոր տեսակետներից փոխշահավետ ու փոխհարստացնող կապերի և խաղաղ համագործակցության աստիճանական զարգացում բոլոր ասիական պետությունների միջև, որպես քաջ հայտնի և տակավին Բանդունգում ասիական պետությունների կողմից հռչակված խաղաղ գոյակցության սկզբունքների կայուն արմատավորում այդ հարաբերությունների մեջ յուրաքանչյուր պետության սուվերենության և անկախության խստիվ պահպանման պայմաններում: Ասիայի ժողովուրդները, անտարակույս, կայուն խաղաղության և կոնստրուկտիվ համագործակցության կարիքը պակաս չեն զգում, քան, ասենք Եվրոպայի ժողովուրդները: Հավանաբար, սխալ չի լինի ասել որ կայուն խաղաղության և հանգիստ, խաղաղ աշխատանքի իրադրությամբ հավասար չափով են շահագրգռված Տոկիոյի ու Տաշքենդի, Հանոյի ու Թեհրանի, Պեկինի ու Ռանգունի, Դելիի ու Կոլոմբոյի բնակիչները, մեր մոլորակի խոշորագույն մայրցամաքի հարյուր միլիոնավոր բնակիչները: Ես համոզված եմ, որ նրանք բոլորն էլ դրանում շահագրգռված են:

Հաճախ առիթ է լինում լսելու, թե իբր Ասիայում կոլեկտիվ ջանքերով անվտանգության ստեղծման ու ապահովման գաղափարը ուղղված է Չինաստանի դեմ և նույնիսկ իբր հետապնդում է Չինաստանը «շրջապատելու» կամ «մեկուսացնելու» նենգ նպատակը: Բայց այդպիսի պնդումները վկայում են կամ հիվանդագին կասկածամտության կամ էլ փաստերը անտեսելու մասին:

Իսկ փաստերը այնպիսիք են, որ թե՛ Սովետական Միությունը և թե՛ այն պետությունները, որոնք դրական վերաբերմունք ունեն Ասիայի խաղաղության և անվտանգության կոլեկտիվ ապահովման խնդրի նկատմամբ, ելել են և ելնում են նրանից, որ այդ մեծ ու կարևոր գործին կմասնակցեն Ասիայի մայրցամաքում գտնվող ցանկացող բոլոր պետությունները անխտիր:

Ոչ ոք երբեք չի դրել Չինաստանի չմասնակցելու և մանավանդ ինչ-որ «մեկուսացման» հարցը (էլ չենք ասում, որ առհասարակ ծիծաղելի է մտածել այդքան մեծ երկրի «մեկուսացման» մասին): Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա կողջուներ Չինաստանի Ժողովրդական Հանրապետության մասնակցությունը Ասիայի անվտանգության ամրապնդման միջոցառումներին:



Թանկագին բարեկամնե՛ր: Իհարկե, մենք կեղծավորություն արած կլինեինք, եթե ձևացնեինք, թե միջազգային ասպարեզում Չինաստանի այժմյան գործողությունները համապատասխանում են խաղաղության ամրապնդման և պետությունների խաղաղ համագործակցության խնդրին: Չինաստանի ղեկավարները միայն իրենց հայտնի ինչ-որ պատճառներով չեն ուզում ձեռք քաշել միջազգային մթնոլորտի թունավորման և միջազգային լարվածության ուժգնացման իրենց փորձերից: Նրանք շարունակում են Սովետական Միությանը ներկայացնել անհեթեթ տերիտորիալ պահանջներ, որոնք մենք, բնականաբար, կտրականապես մերժում ենք: Նրանք համառորեն կրկնում են «սովետական սպառնալիքի» վերաբերյալ հակակոմունիստական պրոպագանդայի ծամծըմված պնդումները, շաղակրատում են «Հյուսիսից եկող սպառնալիքի» մասին, և, մերժելով կարգավորման, չհարձակվելու պայմանագիր կնքելու վերաբերյալ բոլոր խելամիտ առաջարկությունները, շարունակում են իրենց ժողովրդին պահել պատերազմական պատրաստությունների՝ արհեստականորեն ստեղծված տենդագին մթնոլորտում: Եվ այս ամենը ուղեկցվում է ՍՍՀՄ-ի և մյուս երկրների հասցեին ուղղված ամենաանհեթեթ զրպարտչական մեղադրանքներով, մեր, ի դեպ, ասենք՝ ոչ միայն մեր, ներքին գործերին միջամտելու անամոթ փորձերով:

Ընդսմին, աչքի է զարնում Չինաստանի ղեկավարների արտաքին քաղաքականության ծայրահեղ անսկզբունքայնությունը: Նրանք ասում են, թե հանդես են գալիս սոցիալիզմի գործի և խաղաղ գոյակցության օգտին, բայց իրականում ամեն կերպ ճգնում են թուլացնել սոցիալիզմի երկրների միջազգային դիրքերը, խրախուսել ագրեսիվ ռազմական բլոկների և կապիտալիստական պետությունների տնտեսական ներփակ խմբավորումների ակտիվացումը: Նրանք պնդում են, թե իրենք իբր զինաթափման կողմնակիցներ են, իսկ իրականում փորձում են շրջափակել սպառազինությունների մրցավազքի սահմանափակման ու կրճատման բոլոր ռեալ միջոցառումները և, մարտահրավեր նետելով համաշխարհային հասարակական կարծիքին, շարունակում են երկրի մթնոլորտը վարակել միջուկային զենքի փորձարկումներով: Նրանք խոսքով հավաստացնում են, թե պաշտպանում են Մերձավոր Արևելքում ագրեսորի զավթած հողերի վերադարձման և այնտեղ արդար խաղաղության հաստատման համար արաբների կողմից մղվող արդարացի պայքարը և միևնույն ժամանակ ամեն ինչ անում են, որպեսզի արատավորեն այն ռեալ օգնությունը, որ ագրեսիայի զոհերին ցույց են տալիս նրանց ամենահավատարիմ բարեկամները՝ Սովետական Միությունը և սոցիալիստական համագործակցության մյուս երկրները: Նրանք իրենց անվանում են հեղափոխականներ և սրտանց սեղմում են չիլիական ռեակցիոներների ֆաշիստական խունտայի ներկայացուցչի ձեռքը, որը թաթախված է հեղափոխության հազարավոր հերոսների, Չիլիի բանվոր դասակարգի և աշխատավոր ժողովրդի որդիների ու դուստրերի արյան մեջ:

Այսպիսի քաղաքականությունը, իհարկե, ամենևին չի նպաստում խաղաղության ու անվտանգության ամրապնդմանը: Դա ներքուստ հղի է միջազգային կյանքում վտանգավոր անկայունությամբ: Բայց չէ որ այդ քաղաքականությունը փոխելու հնարավորությունը ամբողջովին ու լիովին կախված է հենց Չինաստանի ղեկավարներից: Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա, մի անգամ էլ եմ կրկնում, մենք կողջունեինք Չինաստանի կոնստրուկտիվ ավանդը միջազգային մթնոլորտի բարելավման և պետությունների լոյալ ու իրավահավասար խաղաղ համագործակցության զարգացման մեջ:

Կոնգրեսի հարգելի պատգամավորնե՛ր: Համաշխարհային նոր պատերազմի կանխման և համընդհանուր խաղաղության ապահովման՝ աշխարհի բոլոր ժողովուրդների համար կենսականորեն կարևոր խնդիրների լուծման գործում էական նշանակություն ունի Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների միջև խաղաղ համագործակցության հարաբերությունների զարգացումը:

Այդ հարաբերությունների զարգացման գործում վերջին երկու տարիները նշանավորվեցին մի շարք կարևոր պայմանագրերի ու համաձայնագրերի կնքմամբ: Դրանցից են «Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների փոխհարաբերությունների հիմունքները», ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև ստորագրված հակահրթիռային պաշտպանության և հարձակողական ստրատեգիական զենքի սահմանափակման հարցերի վերաբերյալ պայմանագիրն ու համաձայնագիրը և միջուկային պատերազմի կանխման վերաբերյալ համաձայնագիրը: Մենք բարեխղճորեն կատարում ենք այդ պայմանագրերով ու համաձայնագրերով ստանձնած պարտավորությունները և մտադիր ենք այդպես վարվել նաև այսուհետև: Բնական է, որ մենք նույնը սպասում ենք նաև մյուս կողմից:

Տարբեր բնագավառներում Սովետական Միության և Միացյալ Նահանգների փոխշահավետ խաղաղ համագործակցության զարգացումը, մեր կարծիքով, առաջիկայում լայն հեռանկարներ ունի, եթե, իհարկե, այդ հարցի նկատմամբ ցուցաբերվի պատասխանատու և լոյալ մոտեցում, գործնականում պահպանելով փոխադարձ օգուտի և փոխադարձ հարգանքի սկզբունքները, և ոչ թե փորձ արվի խեղաթյուրելու դրանք և միջամտելու մյուս կողմի ներքին գործերին, նրան թելադրելու իր պայմանները, ինչպես որ, հակառակ սեփական կառավարության պաշտոնական քաղաքական կուրսի, այդ բանը փորձում են անել Միացյալ Նահանգների որոշ անպատասխանատու քաղաքագետներ:

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա մենք համոզված ենք, որ 1972 և 1973 թվականներին ընդունված փաստաթղթերը ամուր բազա են ստեղծել փոխշահավետ համագործակցության համար՝ հօգուտ խաղաղության գործի:

Ինչպես հայտնի է, 1974 թվականին տեղի է ունենալու Միացյալ Նահանգների պրեզիդենտի պաշտոնական այցը Սովետական Միություն: Մենք կուզենայինք, որ այդ այցը նոր խոշոր քայլերով նշանավորվեր մեր պետությունների խաղաղ հարաբերությունների զարգացման և միջազգային իրադրության բարելավման ճանապարհին:

Փոքր դեր չի կարող խաղալ ստրատեգիական սպառազինությունների հետագա սահմանափակման և հնարավոր կրճատման հարցերի շուրջ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև վարվող բանակցությունների նոր փուլի հաջող ավարտը: Ինչպես դուք գիտեք, դա հասարակ խնդիր չէ, բայց մենք պայմանավորվել ենք բոլոր ջանքերը գործադրել, որպեսզի այն լուծենք:

Մենք ամենքս էլ, թանկագին բարեկամներ, սիրում ենք խաղաղությունը, կայուն խաղաղություն ենք ուզում և մեր ուժերի ու հնարավորությունների ներածին չափ պայքարում ենք խաղաղության ապահովման համար: Մեզ ուրախացնում է միջազգային լարվածության տեղի ունեցող թուլացումը և պետությունների խաղաղ համագործակցության զարգացումը: Բայց կկամենայի ամբողջ ուժով ընդգծել, որ ո՛չ խաղաղությունը, ո՛չ էլ լարվածության թուլացումը համաշխարհային ասպարեզում չեն հաստատվում ինքնըստինքյան, որպես ինչ-որ շնորհ ի վերուստ: Դրանք կարող են ձեռք բերվել միայն բոլոր խաղաղասեր ուժերի՝ պետությունների, քաղաքական կուսակցությունների ու հոսանքների, հասարակական կազմակերպությունների և առանձին անձանց համառ, անդուլ պայքարով ընդդեմ այն ամենի, ինչը հակազդում է լարվածության թուլացմանը, սպառնում խաղաղությանը, ստեղծում պատերազմի վտանգ:

Մենք իրավունք չունենք մոռանալու, որ մինչև օրս էլ մոլորակի տարբեր ծայրերում բռնկում են պատերազմներ, զոհվում են մարդիկ, ավերվում քաղաքներ, գործարաններ, գյուղեր, ոչնչացվում են կուլտուրական արժեքները: Դրանք այնպիսի պատերազմներ են, որոնք քաղաքագետները վարժվել են կոչել լոկալ, այսինքն՝ պատերազմներ, որոնք սահմանափակված են այս կամ այն աշխարհագրական շրջանի համեմատաբար նեղ շրջանակներով: Փորձը ցույց է տալիս, որ ժամանակակից պայմաններում դրանք, որպես կանոն, ծագում են այնտեղ և այն ժամանակ, որտեղ և երբ իմպերիալիզմի և ռեակցիայի ուժերը փորձեր են անում ճնշելու ժողովուրդների ազատագրական շարժումը, խանգարելու այն պետությունների ազատ ու անկախ զարգացումը, որոնք ընտրել են ներքին զարգացման առաջադիմական ուղի և արտաքին քաղաքականության հակաիմպերիալիստական կուրս:



Մեր մոլորակի միլիոնավոր մարդկանց համար տակավին խաղաղություն չկա: Նրանք ստիպված են զենքը ձեռքներին մարտնչել իմպերիալիստական ագրեսորների ու նրանց հանցակիցների դեմ, զավթիչների կամայականության դեմ, իրենց ազատության ու անկախության համար, սեփական տան տերը լինելու տարրական իրավունքի համար: Խաղաղության կողմնակիցները չեն կարող հետևություններ չանել դրանից:

Մենք իրավունք չունենք մոռանալու նաև այն, որ միջազգային լարվածության թուլացման պայմաններում էլ շարունակվում և նույնիսկ ուժեղանում է այն պրոցեսը, որն իրենից ներկայացնում է համաշխարհային պատերազմի նյութական նախապատրաստություն:

Հյուսիսատլանտյան բլոկի երկրների ռազմական բյուջեները ամեն տարի մեծացվում են երկու-երեք միլիարդ դոլարով, իսկ այս թվերի ետևում կանգնած են բնաջնջման նորանոր տիպի միջոցներ՝ նոր, առավել ավերիչ միջուկային ռումբեր ու արկեր, նոր, առավել հզոր հրթիռներ, տանկեր ու ինքնաթիռներ, ռազմանավեր ու սուզանավեր: Զենքի որակական կատարելագործումը աննախադեպ մասշտաբների է հասել:



Ընդսմին, փորձեր են արվում այդ կարգի գործողություններն արդարացնելու այն պատճառաբանություններով, թե դրանք իբր կօգնեն հաջողության հասնելու սպառազինությունների սահմանափակման բանակցություններում՝ ստեղծելով «սակարկության կռվաններ»:

Միանգամայն ակնբախ է, որ բացի սպառազինությունների մրցավազքի խթանումից, այդ «կռվանները» իրականում ոչ մի արդյունք չեն տա: Ինչ վերաբերում է սպառազինությունների սահմանափակման բանակցություններին, ապա դրանց հաջողության համար հարկավոր են ոչ թե ռազմական նոր ծրագրեր, այլ սպառազինությունների մրցավազքի սանձահարման իսկական ձգտում, որը ամրապնդված լինի փոխադարձ զսպվածությամբ:

Դեռ այսօր էլ, երկրորդ համաշխարհային պատերազմը վերջանալուց արդեն համարյա երեք տասնամյակ անց, հողագործի գութանը կամ շինարարի էքսկավատորը հաճախ դեմ են առնում արկերի ու ականների: Պատերազմը հիշեցնում է իր մասին, և մարդկանց կյանքն այսօր, խաղաղ օրերին կրկին վտանգի է ենթարկվում: Բայց մի՞թե այսօր հազարապատիկ ավելի վտանգավոր չեն մարդկանց բնաջնջման միջոցների այն վիթխարի, ողջ պատմության ընթացքում դեռևս չտեսնված պաշարները, որ լիովին պատրաստ են ելակետային դիրքերում, գտնվում են պարեկային ինքնաթիռների ու սուզանավերի մեջ, լեփ-լեցուն են աշխարհով մեկ սփռված ռազմական բազաների ստորգետնյա պահեստներում: Մի՞թե կարելի է վստահությամբ կայուն, տևական խաղաղություն կառուցել, եթե նրա հիմքի տակ պապանվում են այդ ժամանակակից «վառոդի նկուղները», որոնք ընդունակ են պայթեցնելու ամբողջ մոլորակը:

Կապիտալիստական պետությունների ռազմական պատրաստությունները սոցիալիստական պետություններին էլ են ստիպում անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել պաշտպանությունը ամրապնդելու համար — 

Կապիտալիստական պետությունների ռազմական պատրաստությունները սոցիալիստական պետություններին էլ են ստիպում անհրաժեշտ միջոցներ հատկացնել պաշտպանությանը, դրանք կտրելով խաղաղ շինարարության նպատակներից, որոնց մենք կկամենայինք նվիրաբերել մեր բոլոր ջանքերը, մեր բոլոր նյութական ռեսուրսները: Սպառազինությունների մրցավազքի ուղեծրի մեջ են ներքաշվում նաև տասնյակ զարգացող երկրներ, որին, իհարկե, նպաստում է նրանց անկախությանն սպառնացող վտանգը, որ իմպերիալիզմը ստեղծում է աշխարհի մերթ այս, մերթ այն շրջանում:

Իհարկե, իմպերիալիզմի ագրեսիվ շրջանների կողմից խթանվող սպառազինությունների մրցավազքի հետագա ընդլայնումը և միջազգային լարվա-







ծության սկսված թուլացումը երկու այնպիսի պրոցեսներ են, որոնք ընթանում են հակադիր ուղղություններով: Դրանք չեն կարող անվերջ զարգանալ, այսպես ասած, զուգահեռ կերպով: Եթե մենք ուզում ենք, որ լարվածության թուլացումն ու խաղաղությունը կայուն բնույթ կրեն, անհրաժեշտ է կասեցնել սպառազինությունների մրցավազքը:

Հենց սրանից են բխում Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների բազմաթիվ նախաձեռնությունները, որոնց նպատակն է ՄԱԿ-ի հավանությանն արժանացած ընդհանուր և լրիվ զինաթափման ծրագրի կենսագործումը: Նույն նպատակներին են ծառայում այդ ճանապարհին մասնակի քայլեր անելու առաջարկությունները, ներառյալ նաև ներկայումս ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի կողմից քննարկվող ՍՍՀՄ-ի առաջարկությունը՝ ՄԱԿ-ի անվտանգության խորհրդի մշտական անդամ պետությունների ռազմական բյուջեները 10 տոկոսով կրճատելու և այդ կերպ տնտեսված միջոցների մի մասը զարգացող երկրներին օգնություն ցույց տալու նպատակով օգտագործելու մասին:

Կկամենայինք ուշադրություն հրավիրել ևս մի պարագայի վրա: Սովետական Միությունը և Ամերիկայի Միացյալ Նահանգները, համատեղ պայմանավորվածությամբ, որոշակի միջոցառումներ են ձեռնարկում սահմանափակելու այն, ինչը պետական փաստաթղթերում անվանվում է ստրատեգիական զենք: Սակայն մենք ապրում ենք մի աշխարհում, որտեղ ամեն ինչ գտնվում է փոխադարձ սերտ կապի մեջ: Պարզ է, որ միջուկային պատերազմի կանխման պայքարը չի կարող երկար ժամանակ սահմանափակվել միայն երկու պետությունների ջանքերով, մանավանդ, եթե մյուսները, և առաջին հերթին միջուկային տերությունները, այդ ժամանակ շարունակեն ուռճացնել իրենց սպառազինությունները:

Մենք կարծում ենք, որ սպառազինությունների սահմանափակման և կասեցման պրոցեսը, ինչպես և լարվածության թուլացման պրոցեսը պետք է ավելի ու ավելի ընդարձակվեն, ընդգրկելով մոլորակի նոր պետություններ ու նոր շրջաններ: Նաև պետք է ընդլայնվի արդեն գոյություն ունեցող այնպիսի միջազգային համաձայնագրերին միացած պետությունների շրջանակը, ինչպիսիք են, օրինակ, մանրէական զենքի արգելման կոնվենցիան, միջուկային զենքը չտարածելու և նրա փորձարկումներն արգելելու պայմանագրերը: Խաղաղության բոլոր անկեղծ կողմնակիցների պարտքն է պահանջել, որ դա լինի այդպես, եռանդագին ձգտել դրան:

Սպառազինությունների մրցավազքը երբեմն ընկալվում է որպես ինքնըստինքյան հասկանալի կամ նույնիսկ ճակատագրականորեն անխուսափելի բան: Այս վտանգավոր հոգեբանական իներցիան անհրաժեշտ է կոտրել և այս գործում կոչված է հսկայական դեր խաղալու ամբողջ աշխարհի խաղաղասեր հասարակայնությունը:

Հարկավոր է պարզորոշ տեսնել, որ խաղաղության համար սպառնալիք են ստեղծում միանգամայն կոնկրետ սոցիալական խմբեր, կազմակերպություններ և մարդիկ: Օրինակ, Արևմուտքի խոշորագույն երկրների նույնիսկ ամենաբարձրաստիճան գործիչների վկայությամբ պատերազմի միջոցների պատրաստման շնորհիվ հարստացող մոնոպոլիաների հետ պրոֆեսիոնալ միլիտարիստների այն չարագուշակ դաշինքը, որն ընդունված է հորջորջել ռազմա-արդյունաբերական կոմպլեքս անունով, այնտեղ դարձել է մի տեսակ «պետություն պետության մեջ», ձեռք է բերել ինքնաբավ զորություն: Միլիտարիզմը այլանդակում է ոչ միայն իրեն ծնած հասարակությանը: Պատերազմի նախապատրաստման մեքենայից արտազատվող գազերը մոլորակի քաղաքական մթնոլորտը թունավորում են ատելության, սարսափի, բռնության ծխաքուլաներով: Սպառազինությունների մրցավազքի գոյությունն արդարացնելու համար առասպելներ են հորինվում «սովետական սպառնալիքի» մասին, այսպես կոչված, արևմտյան դեմոկրատիաները պաշտպանելու անհրաժեշտության մասին: Բայց միլիտարիստական ռոբոտը սիրասուն զավակի



պես փայփայում է ամենահետադիմական, բռնակալական, ֆաշիստական վարչակարգերին և խժռում դեմոկրատական ազատությունները:

Ինձնից առաջ հանդես եկած հռետորները իրավացիորեն էին խոսում Չիլիի իրադարձությունների մասին: Ես նույնպես չեմ կարող շրջանցել այդ հարցը: Երկրի սահմանադրության հրեշավոր, ոչնչով չքողարկված անարգում, մի ամբողջ ազգի դեմոկրատական ավանդույթների անպատկառ ոտնահարում, տարրական օրինականության ծաղրուծանակ, գնդակահարություններ, խոշտանգումներ ու բարբարոսական տեռոր, այրվող գրքերի խարույկներ— ահա նա՝ զինվորական խունտայի իսկական ֆաշիստական երախը, ահա նա՝ ներքին և արտաքին ռեակցիայի իսկական դեմքը, որը պատրաստ է ամեն մի հանցագործության, որպեսզի վերականգնի իր առանձնաշնորհումները՝ հակառակ ժողովրդի պարզորոշ ու ազատորեն արտահայտված կամքին:

Չիլիի ողբերգությունը սուր ցավ պատճառեց միլիոնավոր մարդկանց սրտերին, աշխարհի բոլոր երկրների դեմոկրատական հասարակայնության տարբեր շրջաններում: Սալվադոր Ալիենդեի անունը, այդ երկրի մյուս հերոսների անունները, որոնք իրենց կյանքը նվիրեցին հանուն ազատության և խաղաղության, ընդմիշտ կպահպանվեն մեր հիշողության մեջ: Թույլ տվեք կոնգրեսի ամբիոնից արտահայտել մեր ամենալիակատար համերաշխությունը Չիլիի դեմոկրատների ու հայրենասերների հետ և հաստատ համոզմունք հայտնել, որ այն արդար գործը, հանուն որի պայքարում էին և ներկայումս պայքարում են այնքան ծանր պայմաններում, անկախության, ազատության, դեմոկրատիայի ու սոցիալական առաջադիմության գործը, անպարտելի է, անկործանելի: Եվ այդ վսեմ արժեքների պաշտպանությունը, դրանց կենսագործումը, պայքարը նրանց դեմ, ովքեր սպառնում են այդ արժեքներին և ձգտում են ոչնչացնել, անխզելիորեն կապված է երկրագնդի կայուն խաղաղության ապահովման պայքարի հետ:

Երբ խոսքը վերաբերում է պետությունների խաղաղ գոյակցության և խաղաղ համագործակցության քաղաքականությանը՝ անկախ նրանց հասարակարգից, մեզ՝ կոմունիստներիս, հաճախ հարցնում են. իսկ արդյոք համատեղելի՞ է այդ քաղաքականությունը հեղափոխական հայացքների հետ:

Հիշեցնեմ, որ Լենինը, այդ մեծագույն հեղափոխականը, ասել է, հեղափոխությունը պատվերով կամ համաձայնագրով չեն անում: Կարելի է ավելացնել, որ հեղափոխությունը, դասակարգային պայքարը, ազատագրական շարժումները ևս անկարելի է վերացնել պատվերով կամ համաձայնագրով: Աշխարհում չկա այնպիսի ուժ, որը կարողանար ետ շրջել հասարակական կյանքի վերափոխման անխափանելի պրոցեսը: Այնտեղ, որտեղ կա գաղութատիրություն, կլինի պայքար հանուն ազգային անկախության: Այնտեղ, որտեղ կա շահագործում, կլինի պայքար հանուն ազգային ազատագրության: Այնտեղ, որտեղ կա ագրեսիա, այնտեղ կլինի նաև հակահարված ագրեսիային:

Ժողովրդական մասսաները ձգտում են փոխել աշխարհը և կփոխեն: Իսկ ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա միշտ կլինի սոցիալական առաջադիմության ուժերի կողմը: Մենք «հեղափոխության արտահանման» հակառակորդներ ենք: Դրա հետ միասին Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, մեր կառավարությունը, սովետական ողջ ժողովուրդը բացեիբաց և աներկբայորեն, մշտապես համերաշխ են իրենց դասակարգային եղբայրների հետ, որոնք պայքարում են արտասահմանյան երկրներում, սատար են լինում ազատագրական, հակաիմպերիալիստական շարժումներին: Եվ այս դիրքավորումը բնավ չի հակասում խաղաղության համար, պետությունների խաղաղ համագործակցության համար մղվող պայքարին:

Պաշտպանելով խաղաղ գոյակցության սկզբունքները, մենք պայքարում ենք հանուն այն բանի, ինչը ամենից թանկն է աշխարհի միլիարդավոր մարդկանց համար՝ հանուն բուն ապրելու իրավունքի, հանուն այն բանի, որ մարդու կյանքը փրկվի պատերազմի բոցի մեջ ոչնչանալու վտանգից: Դրանով իսկ մենք միաժամանակ պայքարում ենք նաև հանուն այն բանի, որ

բարենպաստ միջազգային պայմաններ ապահովվեն բոլոր երկրների ու ժողովուրդների սոցիալական առաջադիմության գործի առաջխաղացման համար: Խոսքը վերաբերում է յուրաքանչյուր ժողովրդի իրավունքի ճանաչմանը՝ ընտրելու այն հասարակարգը, որ ինքն է ցանկանում, խոսքը վերաբերում է պետությունների հաղորդակցման պարզ ու հասարակ նորմաներին: Այդ նորմաների խախտումը ոչ միայն հանգեցնում է երկրների հարաբերություններում իրավահավասարության խախտման, այլև զինված կոնֆլիկտների, որովհետև մեր ժամանակներում ժողովուրդները չեն հաշտվում և չեն հաշտվի թելադրանքի հետ: Եվ նրանք լիակատար իրավունք ունեն հակահարված տալու ագրեսիային: Աշխարհը երկու սիստեմների պառակտված լինելու պայմաններում միջազգային անվտանգությունը կարող է կառուցվել միայն խաղաղ գոյակցության սկզբունքների լիակատար և անշեղ պահպանման վրա, մասնավորապես պետությունների ներքին գործերին չմիջամտելու վրա:

Այս կապակցությամբ չի կարելի ուշադրություն չդարձնել այն բանի վրա, որ վերջին ժամանակներս Արևմուտքի որոշ շրջաններ փաստորեն ուզում են զարտուղի ճանապարհով շրջանցել այդ սկզբունքները, առաջարկելով «սառը» կամ, եթե ուզում եք, «հոգեբանական պատերազմի» նոր հայտնության նման ինչ-որ բան: Խոսքը վերաբերում է այն կամպանիային, որը մղվում է՝ սոցիալիստական երկրներում «մարդու իրավունքները պաշտպանելու» կեղծավոր լոզունգի ներքո:

Այդ կամպանիայի նախաձեռնողներից ոմանք պնդում են, թե լարվածության թուլացում հնարավոր չէ, եթե փոփոխություններ տեղի չունենան սոցիալիստական երկրների ներքին կարգերի մեջ: Իսկ ուրիշները ասես լարվածության թուլացման դեմ հանդես չեն գալիս, սակայն զարմանալի բացահայտությամբ հայտարարում են իրենց մտադրությունները՝ լարվածության թուլացման պրոցեսն օգտագործել սոցիալիստական հասարակարգը թուլացնելու նպատակով և, վերջին հաշվով, նրա կործանմանը հասնելու համար: Իսկ լայն հասարակությանը այդ տակտիկան մատուցվում է որպես հոգատարություն մարդու իրավունքների կամ մեր հասարակարգի, այսպես կոչված, «լիբերալացման» նկատմամբ:

Եկեք թանկագին բարեկամներ, իրերը անվանենք իրենց անուններով: Խոսում են ազատության ու դեմոկրատիայի մասին, մարդու իրավունքների մասին, իսկ իրականում այդ ամբողջ աղմկալի կամպանիան ծառայում է մի նպատակի՝ քողարկել սոցիալիստական պետությունների ներքին գործերին միջամտելու փորձերը, քողարկել իրենց քաղաքականության իմպերիալիստական նպատակները: Խոսում են «լիբերալացման» մասին, բայց նկատի ունեն սոցիալիզմի ռեալ նվաճումների վերացումը, սոցիալիստական երկրների ժողովուրդների սոցիալ-քաղաքական իրավունքների խարխլումը:

Մենք հիմքեր չունենք խույս տալու մարդու իրավունքների մասին լուրջ խոսակցությունից: Մեր հեղափոխությունը, մեր երկրում սոցիալիզմի հաղթանակը ոչ միայն հռչակել են, այլև ռեալ կերպով ապահովել են ամեն մի ազգության պատկանող աշխատավոր մարդու իրավունքները, աշխատավորների միլիոնավոր մասսաների իրավունքները այնպես, ինչպես այդ չի կարողացել անել կապիտալիզմը աշխարհի ոչ մի երկրում:

Գուցե բուրժուական աշխարհայեցողության տեսակետից մարդու այնպիսի իրավունքներ, ինչպիսիք են աշխատանքի, կրթության, սոցիալական ապահովության, ձրի բուժօգնության, հանգստի և մյուս իրավունքները ինչ-որ երկրորդական կամ նույնիսկ անընդունելի բան են: Բերենք միայն մեկ թիվ՝ ոչ սոցիալիստական երկրներում այժմ կան մոտավորապես 100 միլիոն գործազուրկներ: Կապիտալիստական շատ պետություններում սահմանափակվում են ազգային փոքրամասնությունների, օտարերկրյա բանվորների իրավունքները, տղամարդկանց հետ աշխատանքի հավասար վարձատրության՝ կանանց իրավունքները: Արդյոք այդ պատճառով չէ՞, որ արևմըտյան շատ տերություններ մինչև օրս չեն դարձել մարդու սոցիալական



ու քաղաքական իրավունքների ապահովմանը վերաբերող միջազգային պակտերի մասնակիցներ:

Մեր երկրում կատարված սոցիալ-տնտեսական վիթխարի վերափոխությունները ժողովրդական մասսաների ամենալայն ու գիտակցական քաղաքական ստեղծագործության արգասիքն են և դրա հետ մեկտեղ նրանց ձեռքով ստեղծված հասարակարգը ամեն տեսակ ոտնձգություններից պաշտպանելու՝ նրանց կամքի արգասիքը: Ահա թե ինչու սովետական մարդիկ թույլ չեն տա ոչ մի ոտնձգություն մեր պետության սուվերենության վրա, որը իրենց սոցիալ-քաղաքական նվաճումների պաշտպանն է: Այդ սուվերենությունը ոչ թե կոնտակտների և փոխանակումների ճանապարհի պատնեշ է, այլ մեր ժողովրդի կողմից դժվարությամբ ձեռք բերված իրավունքների և ազատությունների հուսալի երաշխիք:

Սովետական օրենքները մեր քաղաքացիներին քաղաքական լայն ազատություններ են վերապահում: Միևնույն ժամանակ դրանք մեր հասարակարգը, սովետական ժողովրդի շահերը պաշտպանում են այդ ազատությունների չարաշահման փորձերից, ում կողմից էլ դրանք արվեն: Եվ դա լիովին համապատասխանում է մարդու իրավունքների մասին Սովետական Միության կողմից վավերացված միջազգային պակտերին, որտեղ ասված է, որ դրանցում հիշատակված իրավունքները «չեն կարող լինել ոչ մի սահմանափակման օբյեկտ, բացի նրանցից, որոնք նախատեսված են օրենքով, անհրաժեշտ են պետական անվտանգությունը, հասարակական կարգը, բնակչության առողջությունը կամ բարոյականությունը կամ ուրիշների իրավունքներն ու ազատությունները պահպանելու համար...»: Մենք մեր ստորագրությունն ենք դրել դրա տակ:

Ի՞նչ ազատությունների մասին են խոսում մեզ վրա հարձակվողները: Մեզանում, օրինակ, օրենք կա, որն արգելում է պատերազմի պրոպագանդան՝ ինչ ձևով էլ լինի: Կա օրենսդրություն, որը բացառում է ռասայական կամ ազգային երկպառակության և ատելության գաղափարների տարածումը, որոնք նսեմացնում են որևիցե ժողովրդի ազգային արժանապատվությունը: Կան օրենքներ, որոնք ուղղված են անբարոյական երևույթների կանխման նպատակին, հասարակության բարոյական այլասերման դեմ: Գուցե ուզում են, որ հանուն գաղափարների և ինֆորմացիայի ազատ փոխանակման մենք հրաժարվենք նաև այդ օրենքների՞ց: Կամ գուցե ուզում են մեզ համոզել, թե դա կծառայեր լարվածության թուլացման գործին և ժողովուրդների մերձեցմա՞նը:

«Կամ փոխեցեք ձեր ապրելակերպը, կամ՝ «սառը պատերազմը»,— ասում են մեզ: Դե իսկ եթե մենք էլ նույնով պատասխանե՞նք: Եթե որպես միջպետական նորմալ հարաբերությունների զարգացման նախադրյալ մենք պահանջենք փոխել բուրժուական հասարակարգի այնպիսի օրենքներ ու կարգեր, որոնք հակասում են արդարության ու դեմոկրատիայի մեր պատկերացումների՞ն: Կարծում եմ, որ այդօրինակ պահանջները չեն բարելավի միջպետական հարաբերությունների առողջ զարգացման հեռանկարները:

Խաղաղության համար պայքարել չի կարելի՝ ոտնձգություն կատարելով ուրիշ ժողովուրդների սուվերեն իրավունքների վրա: Չի կարելի հանդես գալ հանուն մարդու իրավունքների և միաժամանակ ոտրպեդահարել խաղաղ գոյակցության սկզբունքները:

Ասենք ուղղակի. այժմ արդեն ոչ ոք ի վիճակի չէ սոցիալիզմի աշխարհը խարխլել, բայց խաղաղության գործը խարխլել, դժբախտաբար, դեռ կարելի է: Քանի որ խաղաղությունը կախված է բազմակողմանի ջանքերից և առաջին հերթին՝ սուվերենության և ներքին գործերին չմիջամտելու սկզբունքների փոխադարձ, շեշտում եմ, փոխադարձ հարգանքից: Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա մեր պետական նավը, ճեղքելով սոցիալիզմի համար թշնամական պրոպագանդիստական կամպանիաների մանր ալիքները, այսուհետև ևս կընթանա միջազգային կյանքում ծառացած պրոբլեմների կոնստրուկտիվ լուծման կուրսով:

## III

Թանկագին բարեկամնե՛ր: Մարդկությունը կարիք ունի կայուն խաղաղության: Բայց թե երբ այն կհաստատվի և ինչպիսին կլինի, կախված է բոլոր խաղաղասեր ուժերի ընդունակությունից՝ լիովին օգտագործելու այն հնարավորությունները, որոնք արդեն ստեղծված են:

Կարծում եմ, որ մեզանից ոչ մեկին ձեռնտու չէ այն խաղաղությունը, որը առաջվա պես հենվի «վախի հավասարակշռության» վրա: Այդպիսի խաղաղությունը քիչ բանով կտարբերվեր «սառը պատերազմից»: Դա կլիներ «սառը խաղաղություն», որը հեշտությամբ կարող էր վերածվել լարված բախման, որն իշխում է ժողովուրդների գիտակցության ու կյանքի վրա, հղի է համաշխարհային կոնֆլիկտով:

Ժողովուրդները ուզում են հուսալի և անփոփոխելի խաղաղություն, որը հիմնված լինի, եթե կարելի է այսպես արտահայտվել, անվտանգության ու փոխադարձ վստահության հավասարակշռության վրա: Դա այն խաղաղությունն է, որը բաց է միջազգային լայն համագործակցության համար՝ ի շահ առաջադիմության:

Խաղաղությունը անգնահատելի սեփականություն է: Ապրել, իմանալով, որ ոչ մի տեղ արյուն չի թափվում, վստահ լինել, որ վաղը քո տան վրա չեն սկսի թափվել ռումբեր և արկեր, որ երեխաները կարող են մեծանալ, չկրելով ավագ սերունդների ապրած ողբերգություններն ու տառապանքները,— այս ամենը մեծագույն բարիք է:

Բայց խաղաղությունը միայն անվտանգության հարց չէ: Դա նաև արդի քաղաքակրթության խոշորագույն պրոբլեմների լուծման կարևորագույն նախադրյալն է: Իսկ դրանց հետ կապված է մարդկության բուն ապագան: Այո՛, ամբողջ մոլորակի ապագան, որի հետ արդեն չի կարելի հաշվի չնստել, լուծելով այսօրվա պրոբլեմները, որքան էլ բարդ ու դժվարին լինեն դրանք ինքնըստինքյան: Դուք, աշխարհի բոլոր կողմերի բազմապիսի հասարակայնության ներկայացուցիչներդ, այդ բանը պետք է որ առանձնապես սուր կերպով զգաք:

Բավական է այստեղ հիշատակել միայն մի քանիսը այն պրոբլեմներից, որոնք արդեն այսօր սկսում են մտահոգել շատերին— էներգառեսուրսների պրոբլեմի լուծումը, շրջակա միջավայրի պաշտպանությունը, այնպիսի երևույթների վերացումը, ինչպիսիք են մասսայական սովը և վտանգավոր հիվանդությունները, համաշխարհային օվկիանոսի հարստությունների յուրացումը:

Այս ամենը պահանջում է կառավարությունների, էկոնոմիկայի և գիտության կազմակերպված ուժերի և, իհարկե, քաղաքական, արհմիութենական, կուլտուրական ամենատարբեր կազմակերպությունների համակողմանի, անկեղծ, գործարար համագործակցությունը: Հարկավոր է, որ ժողովուրդները լավ ճանաչեն միմյանց, ուրեմն և տեղի ունենա նրանց մեծաթիվ ներկայացուցիչների կենդանի, բազմապիսի շփում:

Հասկանալի է, որ այդպիսի համագործակցության ամենաառաջին պայմանը խաղաղությունն է: Խաղաղ գոյակցության վրա հիմնված միջազգային հարաբերությունների սիստեմից դուրս անհնար է ո՛չ հիմնավորապես ձեռնամուխ լինել ապագայի համամարդկային պրոբլեմների լուծմանը, ո՛չ էլ արդիականության բազմաթիվ անհետաձգելի խնդիրների հաջող կատարմանը:

Ամենքիս ցանկալի խաղաղության հետագա առաջընթացի կոնկրետ ուղղությունները պարզ են: Ես դրանց մասին ասացի վերևում: Դրանք թելադրվում են հենց ստեղծված միջազգային իրադրությամբ: Եվ մենք խորապես համոզված ենք, որ համատեղ ջանքերով կարելի է հասնել այն կենսական խնդիրների իրականացմանը, որոնք այժմ դրվել են խաղաղության ամրապնդման պայքարի առաջին պլանի վրա:

Դա, նախ և առաջ, դեռևս գոյություն ունեցող զինված կոնֆլիկտները արդարացիորեն կարգավորելուն նպաստելն է:

Դա Եվրոպայում, իսկ ապա նաև Ասիայում կոլեկտիվ անվտանգության



սիստեմի ստեղծումն է, որը կնպաստի աստիճանաբար հաղթահարելու աշխարհի այժմյան բաժանումը ռազմա-քաղաքական բլոկների:

Դա միջուկային և մյուս սպառազինությունների մրցավազքի դադարեցումն է պետությունների կողմից կամովին ստանձնած պարտավորությունների ազնիվ կատարման հիման վրա և, որ հատկապես հրատապ է, բոլոր խոշոր երկրների ներգրավումը այդ պրոցեսի մեջ: Դրանով իսկ սկիզբ կդրվեր ռազմական առճակատման նյութական հիմքի աստիճանական նեղացմանը:

Դա տնտեսական, գիտատեխնիկական և կուլտուրական համագործակցության զարգացումն է լիակատար իրավահավասարության, փոխադարձ շահավետության հիմունքներով, առանց որևէ խտրականության և միմյանց ներքին գործերին միջամտելու փորձերի:

Մենք այսպես ենք պատկերացնում արդի պայմաններում խաղաղության պայքարի հրատապ խնդիրները: Իհարկե, այդ խնդիրներից մի քանիսի լուծման համար կպահանջվի ժամանակ, մյուսները անհապաղ, անհետաձգելի գործողությունների են կոչում արդեն այժմ: Բայց, ինչպես այդ, այնպես էլ մյուս խնդիրների լուծման համար անհրաժեշտ են թե՛ պետությունների, թե՛ քաղաքական ուժերի, թե՛ խաղաղության ամրապնդմամբ շահագրգռված հասարակական լայն ուժերի հաստատակամ, եռանդուն, ակտիվ ջանքերը:

«Սառը պատերազմի» երկար տարիները իրենց հետքերն են թողել մարդկանց, և ո՛չ միայն պրոֆեսիոնալ քաղաքագետների, գիտակցության մեջ: Դրանք են նախապաշարմունքները, կասկածամտությունը, ուրիշների իսկական դիրքերն ու հնարավորությունները վատ գիտենալը, նույնիսկ գիտենալ չցանկանալը: Եվ վերակառուցվելը բնավ էլ հեշտ չէ: Բայց դա անհրաժեշտ է անել, անհրաժեշտ է համագործակցել սովորել:

Խաղաղության մեր փիլիսոփայությունը պատմական լավատեսության փիլիսոփայությունն է: Զնայած ժամանակակից իրավիճակի բարդությանն ու հակասականությանը, մենք վստահ ենք այժմ լայնորեն ծավալված խաղաղ հարձակման հաջողությանը: Ինչի՞ վրա է հիմնված այդ լավատեսությունը:

Նախ և առաջ, այն բանի վրա, որ գոյություն ունի խաղաղության այնպիսի մշտական, հզոր ու դինամիկ գործոն, ինչպիսին է ռեալ սոցիալիզմը, որի խաղաղասիրական քաղաքականությունը բխում է այդ հասարակարգի բուն էությունից: Մեր լավատեսությունը հենվում է սոցիալիստական պետությունների մեծամասնության հայացքների ու գործողությունների միասնության վրա:

Մեր լավատեսությունը հիմնվում է Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի, այդ թվում չմիացած երկրների շատ պետությունների ու ժողովուրդների՝ արդարացի և դեմոկրատական խաղաղության նկատմամբ ունեցած խոր շահագրգռվածության վրա:

Մեր լավատեսությունը խարսխված է խաղաղ գոյակցության քաղաքականության արդեն ձեռք բերված հաջողությունների, այն բանի վրա, որ մի շարք կապիտալիստական երկրների ղեկավար շրջաններում խորանում է աշխարհում ուժերի ռեալ հարաբերակցության և այն բանի ըմբռնումը, որ պատերազմները անընդունելի են որպես միջազգային պրոբլեմների լուծման միջոց:

Խաղաղության գործի անհաղթահարելիության նկատմամբ մեր համոզմունքը խարսխվում է աշխատավոր մարդու՝ բանվորի, գյուղացու, մտավորականի՝ խաղաղասիրության կենսահաստատ մեծ ուժի խորին հավատի վրա: Իսկ նրանք կազմում են մեր մոլորակի բնակիչների հսկայական, գերակշռող մեծամասնությունը:

Խաղաղության գործի նկատմամբ մեր լավատեսությունը մենք, վերջապես, կապում ենք խաղաղության օգտին հանդես եկող և այստեղ, այս աշխարհաժողովում այնպես լայնորեն ներկայացված բոլոր հասարակական շարժումների ընթացքի, կոմունիստների, սոցիալիստների, սոցիալ-դեմոկրատների, քրիստոնյաների համատեղ գործողությունների հետագա զարգացման հետ:

Այս ամենը հուսադրում և վստահություն է ներշնչում:

Սակայն խաղաղության ճանապարհին նվաճվածը անդուլ զարգացման կարիք ունի: Այդ ուղին այսուհետև էլ հեշտ ու հասարակ չի լինի: Հարկ կլինի հաղթահարել ոչ քիչ խոչընդոտներ, ետ մղել խաղաղության թշնամիների շատ հակագրոհներ: Պայքարի բարդությունը կապված է նաև այն նոր պայմանների հետ, միջազգային հարաբերությունների այն նոր փուլի հետ, որը մենք արդեն թևակոխել ենք: Նա առաջվա պես կպահանջի ոչ միայն մեծ հետևողականություն, հաստատակամություն ու եռանդ, այլև աշխատանքի ձևերի, նոր մեթոդների կատարելագործում, կոնկրետ նախաձեռնությունների ժամանակին ու ճշգրիտ առաջքաշում, որոնք կարողանան կանխելու լարվածության օջախների առաջացումը, թույլ չտալ վիժեցնել լարվածության թուլացման պրոցեսը: Շատ բան պետք է արվի խաղաղասիրական հոսանքներից յուրաքանչյուրի ակտիվացման և միաժամանակ դրանք մի ընդհանուր հունի մեջ միավորելու համար: Ժամանակակից պատմական մոմենտի պահանջը, եթե կուզեք, դարաշրջանի պահանջը մարդկության բոլոր խաղաղասեր ուժերի միավորումն է՝ հանուն բոլոր երկրների, բոլոր ժողովուրդների խաղաղ զարգացման ապահովման:

Թանկագին բարեկամնե՛ր: Ամբողջ աշխարհի միլիոնավոր մարդիկ շատ բան են սպասում խաղաղասեր ուժերի համաշխարհային կոնգրեսից: Պատասխան են ակնկալում ամենալայն մասսաներին հուզող հրատապ հարցերի համար, կողմնորոշում՝ համաշխարհային հասարակական շարժման համար, որը կոչված է օգնելու XX դարի արմատական պրոբլեմներից մեկի՝ կայուն խաղաղության ապահովման պրոբլեմի լուծմանը: Դա մեծ պատասխանատվություն է, բայց, ինչպես ինձ թվում է, նաև մեծ, ոգեշնչող խթան:

Թույլ տվեք ձեզ հավաստիացնել, որ խաղաղության ամրապնդման ձեր գործունեության մեջ դուք կստանաք Սովետական Միության կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության, սովետական բոլոր մարդկանց ամենաջերմ ու արդյունավետ աջակցությունը:

Սովետական Միության ներքին կյանքը, սովետական մարդկանց, մեր կուսակցության և կառավարության գործերն ու խոհերը ներթափանցված են խաղաղության ձգտմամբ: Թե՛ նրանք, ովքեր մեզ մոտ առաջ եղել են, թե՛ նրանք, ովքեր առաջին անգամ են Մոսկվա եկել, բոլորն էլ ակնբախորեն տեսնում են, որ սովետական ժողովուրդը տոգորված է խաղաղ, ստեղծարար աշխատանքի պաթոսով:

Այժմ մեր ժողովուրդը ավարտում է իններորդ հնգամյակի երրորդ տարին: Արդեն այժմ, դատելով ըստ երեք տարվա նախնական արդյունքների, մենք կարող ենք վստահությամբ ասել, որ ՍՄԿԿ XXIV համագումարի նախատեսած սոցիալ-տնտեսական հիմնական ցուցանիշները կկատարվեն: Դրա վկայությունն է նախ և առաջ երկրի ազգային եկամտի հաստատուն աճը, որը հնգամյակի երեք տարում կավելանա 16,4 տոկոսով:

Մեծ հաջողություններ են ձեռք բերվել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման գործում: Եթե 1973 թվականի պլանով արդյունաբերական արտադրանքի աճը նախատեսվում էր 5,8 տոկոս, ապա ընթացիկ տարվա ինն ամսում, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, այն փաստորեն կազմել է 7,3 տոկոս:

Կուսակցության և սովետական պետության մշտական հոգատարության, գյուղի աշխատավորների անձնվեր աշխատանքի շնորհիվ ընթացիկ տարում հավաքվեց ռեկորդային բերք: Ըստ երևույթին, կհավաքվի ավելի քան 215 միլիոն տոննա հացահատիկ, կամ, դա արտահայտելով մեր ավանդական ռուսական չափերով, ավելի քան 13 միլիարդ փութ: Պետության կողմից հացահատիկի գնումների տարեկան պլանն արդեն գերակատարվել է: Գնվելու է ավելի քան յոթնուկես միլիոն տոննա բամբակ, ավելի քան 82 միլիոն տոննա շաքարի ճակնդեղ: Սրանք նույնպես մեծ հաջողություններ են:



Ընթացիկ հնգամյակի միայն երեք տարում Սովետական Միության քաղաքներում ու գյուղերում կկառուցվի մոտավորապես յոթ միլիոն նոր բնակարան:

Այդ հաջողությունները ուրախացնում են սովետական մարդկանց, դրանք ողջունում են նաև ամբողջ աշխարհի մեր բարեկամները: Նրանք գիտեն, որ այդ հաջողությունները նպաստում են աշխարհի խաղաղության ամրապնդմանը:

Դուք կարող եք հույս դնել սովետական ժողովրդի վրա, որը թե՛ իր մեծ հեղափոխությանը հաջորդած առաջին տարիներին, թե՛ սոցիալիզմի կառուցման տարիներին, թե՛ ֆաշիզմի դեմ մղված ճակատամարտում, թե՛ հետպատերազմյան տասնամյակներում, թե՛ այժմ, եղել և մնում է մարդկության շահերի պաշտպանության համար մղվող պայքարի ավանգարդում:

Վերջում ուզում եմ կոնգրեսի կազմակերպիչներին և ձեզ բոլորիդ, թանկագին բարեկամներ, շնորհակալություն հայտնել, որ ինձ հնարավորություն տրվեց հանդես գալու այս բարձր ամբիոնից: Թույլ տվեք, կոնգրեսի հարգելի մասնակիցներ, վերջում ձեզ մաղթել մեծ հաջողություններ ձեր համատեղ բեղմնավոր աշխատանքում, որը, ես դրան վստահ եմ, արձագանք կգտնի մեր մոլորակի բոլոր մայրցամաքների մարդկանց սրտերում:

(ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ ԼՍՎԵՑ ՄԵԾ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՄԲ ԵՎ ԲԱԶՄԻՑՍ ԸՆԴՀԱՏՎՈՒՄ ԷՐ ԲՈՒՌՆ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ)։

# ԴԵՊԻ ՆՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ծնունդը՝ սովետական պետությունը, 56 տարի շարունակ հաստատակամորեն և անդուլ կենսագործում է ժողովուրդների խաղաղության քաղաքականությունը, անբասիր ազնվության, ուղղամտության, սկզբունքայնության ու դասակարգային վսեմ մարդասիրության օրինակ հանդիսանալով միջազգային հարաբերություններին վերաբերող հարցերի խաղաղ լուծման գործում:

Սովետական Միության համակողմանի միջազգային գործունեության հիմքում ընկած են աշխարհում առաջին սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքները: Այդ քաղաքականության արդի փուլի հիմնական ուղղություններն ու խնդիրները կանխագծել է ՍՄԿԿ XXIV համագումարը, որի առաջադրած արտաքին-քաղաքական ծրագիրը միջազգային հասարակայնությունն իրավամբ անվանեց խաղաղության ծրագիր: Այն ընդգրկում է համաշխարհային քաղաքականության արմատական պրոբլեմները, որոշում դրանց լուծման հիմնական ուղիները, ժողովուրդների առջև բացում կայուն խաղաղության և միջազգային անվտանգության ապահովման հեռանկարներ: Ահա թե ինչու խաղաղության սովետական ծրագիրը կարճ ժամանակամիջոցում դարձել է այն գործոնը, որը միավորում ու ոգևորում է հողագնդի բարի կամքի մարդկանց, նրանց վստահություն ներշնչում խաղաղ, պայծառ ապագայի համար մղվող պայքարում:

Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո ժողովուրդների խաղաղությունն ու բարեկամությունը մշտապես եղել են սովետական պետության արտաքին քաղաքականության նշանաբանը, նրա հիմնական նպատակը, որովհետև դրանք արտահայտում են սոցիալիստական հասարակարգի բնույթը, նրա խոր բովանդակությունը: Միշտ էլ այդ նպատակից են բխել Սովետական Միության կոմունիստական կուսակցության արտաքին-քաղաքական դիրքորոշումները:

Այժմ ամեն մի անկանխակալ մարդու համար պարզ պետք է լինի, որ դա Սովետական Միության ոչ թե ժամանակավոր, այլ երկարատև, մշտական քաղաքականությունն է, որի գործնական ռեալ արդյունքներն ակնբախ են: Հավանաբար չկա մի կառավարություն, որը չհայտարարի, թե ինքը խաղաղություն է ուզում, նույնիսկ՝ հավիտենական խաղաղություն: Բայց բանն այն է, որ միայն սոցիալիստական երկրների կառավարություններն են, որ իրենց այդ հայտարարությունները չեն պաճուճում երազանքներով, այլ դրանք ամրապնդում են ամենօրյա, մշտական գործունեությամբ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի ապրիլյան (1973 թ.) պլենումն ամբողջությամբ ու լիովին հավանություն տվեց ողջ աշխարհում կայուն խաղաղության և կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի հուսալի անվտանգության ապահովելու նպատակով Քաղբյուրոյի ծավալած աշխատանքին, նշեց Լ. Ի. Բրեժնևի մեծ ավանդը այդ խնդիրների լուծման գործում: Սովետական բոլոր մարդիկ, համաշխարհային հասարակայնությունը խորագույն բավականությամբ ընդունեցին «Ժողովուրդների միջև խաղաղության ամրապնդման համար» միջազգային լենինյան մրցանակի հանձնումը և Բուլղարական Ժողովրդական Հանրապետության հերոսի բարձր կոչման շնորհումը ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևին:

Պլենումն իր որոշման մեջ հանձնարարեց Քաղբյուրոյին՝ այսուհետև ևս անշեղ կենսագործել ՍՄԿԿ XXIV համագումարի նշած արտաքին քաղաքական կուրսը, պայքարել խաղաղության ծրագրի լիակատար կենսագործման համար, հասնել այն բանին, որ միջազգային իրադրության մեջ կատարված բարենպաստ փոփոխությունները կայուն լինեն:

Սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների՝ Ղրիմում կայացած հուլիսյան հանդիպման ժամանակ ընդգծվեց, որ ներկայումս անհրաժեշտ է շահագրգռված բոլոր պետությունների համատեղ ջանքերով ամրապնդել միջազգային կյանքում կատարված տեղաշարժերը, հետևողականորեն կենսագործել կնքված համաձայնագրերն ու պայմանագրերը, անխոտոր առաջ ընթանալ դեպի հիմնական նպատակը՝ կայուն խաղաղության ապահովումը:

Խաղաղության ծրագրի կենսագործման խնդրում առանձնապես կարևոր տեղ է գրավում Լ. Ի. Բրեժնևի այցը Ամերիկայի Միացյալ Նահանգներ, որ տեղի ունեցավ 1973 թ. հունիսի 18—25-ը: ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը ամբողջությամբ ու լիովին հավանություն տվին այդ այցի քաղաքական ու գործնական արդյունքներին. այց, որը սովետական մարդիկ, համաշխարհային դեմոկրատական հասարակայնությունը գնահատեցին որպես սկզբունքային նշանակություն ունեցող իրադարձություն, որպես «սառը պատերազմից» դեպի միջազգային հարաբերությունների նորմալացումը, դեպի տարբեր հասարակարգ ունեցող պետությունների փոխհամագործակցությունը տանող մի խոշոր քայլ:

Ուզբեկական ՍՍՀ-ին ժողովուրդների բարեկամության շքանշան հանձնելիս Տաշքենդ քաղաքում արտասանած իր ճառում Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ Սովետական Միության և ողջ սոցիալիստական համագործակցության հզորության ու միջազգային ազդեցության աճի, մեր ակտիվ արտաքին քաղաքականության, խաղաղասեր ուժերի գործունեության շնորհիվ զգալի չափով թուլացել է լարվածությունը, ամրապնդվել ժողովուրդների անվտանգությունը: Այդ ամենի շնորհիվ ստեղծվել են առավել բարենպաստ միջազգային պայմաններ սոցիալիստական ու կոմունիստական շինարարության, ժողովուրդների սոցիալական առաջադիմության համար:

Հինգերորդ հնգամյակի, նրա երրորդ՝ վճռական տարվա առաջադրանքների կատարման, կոմունիստական շինարարության նոր հաջողությունների անհրաժեշտ պայմանը սովետական յուրաքանչյուր մարդու կողմից մեր կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության խոր ըմբռնումն է, դրա հիման վրա՝ հայրենիքի հանդեպ իր սրբազան պարտքի անշեղ կատարումը:

Ահա թե ինչու այնքան մեծ է կուսկազմակերպությունների, մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի օրգանների աշխատանքի նշանակությունը, աշխատանք, որի նպատակն է պարբերաբար, մշտապես պրոպագանդել ՍՄԿԿ և սովետական պետության արտաքին քաղաքականության էական հարցերը, ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի կենսագործած քաղաքական կարևորագույն միջոցառումները, բացահայտել դրանց դերը խաղաղության ու միջազգային անվտանգության, միջազգային սոցիալիզմի դիրքերի ամրապնդման մարզում:

Իրենց բացատրական ողջ աշխատանքում կուսկազմակերպություններն ու գաղափարական բոլոր հաստատությունները պետք է ղեկավարվեն ՍՄԿԿ XXIV համագումարի, նրա ապրիլյան (1973 թ.) պլենումի փաստաթղթերում տրված միջազգային իրադրության և ՍՍՀՄ արտաքին քաղաքականության վերլուծությամբ. նրանց մշտական ուղեցույցը պետք է լինեն ՍՄԿԿ Քաղբյուրոյի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ «Ընկեր Լ. Ի. Բրեժնևի Ամերիկայի Միացյալ Նահանգներ կատարած այցի արդյունքների մասին» փաստաթուղթը, ինչպես և «Ժողովուրդների միջև խաղաղության ամրապնդման համար միջազգային լենինյան մրցանակ շնորհելիս, Ուկրաինական և Ուզբեկական հանրապետություններին ժողովուրդների բարեկամության շքանշան հանձնելիս, Լ. Ի. Բրեժնևին Բուլղարական Ժողովրդական Հանրապետության հերոսի կոչում շնորհելու առիթով Բուլղարիայում կայացած հանդիսավոր նիստում նրա արտասանած ճառերը:

Բացատրական աշխատանքում անհրաժեշտ է ընդգծել, որ սովետա-ամերիկյան բարձր մակարդակի բանակցություններն ու դրանց հաջող ավարտը նշանավորում են ո՛չ միայն երկու երկրների հարաբերությունների մի նոր փուլ, այլև դրական տեղաշարժ են միջազգային խաղաղության ու անվտանգության հաստատման համար մղվող պայքարում, կարևոր ավանդ են միջազգային ողջ իրադրության բարելավման գործում:

Հարկավոր է հաշվի առնել, որ կայուն խաղաղության համար մղվող պայքարի նպատակը ո՛չ միայն պատերազմից՝ որպես պետությունների միջև վիճելի հարցերի լուծման միջոցից, հրաժարվելն է, այլև դրանց միջև որոշակի փոխադարձ ըմբռնման ու վստահության հաստատումը, լիակատար հավասարության և փոխադարձ շահավետության հիման վրա համագործակցության զարգացումը: Մեր կուսակցությունը միայն այդ տեսանկյունից է մոտենում կապիտալիստական պետությունների, մասնավորապես, ԱՄՆ-ի հետ հարաբերությունների զարգացմանը: Սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավումը, որ միջազգային իրադրության արմատական փոփոխման ընդհանուր պրոցեսի կարևոր մասն է, ամենևին էլ չի նշանակում, թե Սովետական Միությունն ու ԱՄՆ-ն իբր թե ինչ-որ «բացառիկ» իրավունքներ ունեն միջազգային գործերում, կամ հավակնություն ունեն համատեղ որոշելու աշխարհի ճակատագիրը: Բանն այն է, որ Սովետական Միության և ԱՄՆ-ի ռազմական, տնտեսական ու գիտատեխնիկական հզորության շնորհիվ դրանց միջև գոյություն ունեցող հարաբերությունների վիճակն օբյեկտիվորեն ներգործում է միջազգային իրադրության, պատերազմի և խաղաղության հարցերի լուծման վրա:

Սովետական Միության և ԱՄՆ-ի միջև կայացած բանակցությունները



ցույց տվին, որ կարելի է երկու կողմերի համար էլ խելացի և ընդունելի մոտեցում գտնել այնպիսի հարցերում, որոնք նախկինում անլուծելի էին թվում: Վաշինգտոնում ստորագրված են ինը նոր համաձայնագրեր, որոնք ընդլայնում են ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի խաղաղ, փոխշահավետ համագործակցության ոլորտը:

Անհրաժեշտ է փաստերով ցույց տալ, որ միջազգային հարաբերությունների ներկա փուլի առանձնահատկությունը համաշխարհային ջերմամիջուկային պատերազմը կանխելու իրական հնարավորության երևան գալն է: Խաղաղասեր ժողովուրդները իբրև պատմական կարևորություն ունեցող փաստաթուղթ ընդունեցին միջուկային պատերազմը կանխելու վերաբերյալ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև կնքված անժամկետ համաձայնագիրը, որի նպատակն է թույլ չտալ, որ միջուկային պատերազմ ծագի ո՛չ միայն նրանց միջև, այլև իրենցից կախված ամեն ինչ անել միջուկային պատերազմներն արգելելու համար:

Մեծ նշանակություն ունի պայմանավորվածությունը ստրատեգիական սպառազինության սահմանափակման, ավելի ընդարձակ և երկարաժամկետ համաձայնության նախապատրաստման ուղղությամբ տարվելիք աշխատանքի հիմնական սկզբունքների վերաբերյալ: Այդ փաստաթղթով նախատեսվում է շարունակել ո՛չ միայն ստրատեգիական հարձակողական սպառազինության քանակական և որակական սահմանափակման նպատակով կատարվող աշխատանքը, այլ միջոցներ ձեռնարկել դրա հետագա կրճատման համար:

Առանձին մարդիկ պնդում են, թե կապիտալիստական երկրների հետ վերջին ժամանակներս կնքված այդ և մյուս պայմանագրերն ու համաձայնագրերը գոյություն ունեցող պրոբլեմները չեն լուծում լիովին, մեկընդմիշտ, այլ սոսկ կիսամիջոցներ են: Այդ մարդիկ սխալվում են: Իհարկե, լավ կլիներ, եթե ձեռք բերվեր ընդհանուր, կատարյալ զինաթափում: Բայց, դժբախտաբար, կապիտալիստական երկրները մինչև այժմ էլ պատրաստ չեն հարցի նման լուծմանը: Ուստի, հարկավոր է մշտական առաջընթացի համար օգտագործել ամեն մի հնարավորություն: «Ամեն ինչ, կամ ոչինչ» սկզբունքը միջազգային քաղաքականության մեջ պիտանի չէ:

«Մենք լիովին կարող ենք ասել,— ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը ամերիկյան հեռուստատեսությամբ ունեցած իր ելույթում,— որ սովետա-ամերիկյան հարաբերությունների զարգացման ասպարեզում արդեն շատ բան է արված: Բայց մենք կանգնած ենք մեծ ճանապարհի սոսկ սկզբնակետում: Հարկավոր է մշտական հոգատարություն բարյացակամ հարաբերությունների նոր ծիլերի պահպանման ու զարգացման նկատմամբ: Անհրաժեշտ է անդադրում մտածել տարբեր ոլորտներում համագործակցության ամենապետքական և ամենապատշաճ ձևեր գտնելու մասին: Հարկավոր է համբերություն՝ հասկանալու համար մյուս կողմի այս կամ այն առանձնահատկությունը և ընտելանալու միմյանց հետ գործերը բարյացակամորեն վարելուն»:

Լուսաբանելով խաղաղության ամրապնդման, ժողովուրդների միջև լայն համագործակցության ծավալման բարենպաստ հնարավորությունները՝ պետք է նկատի ունենալ, որ լարվածության թուլացումը բարդ, տևական պրոցես է: Մեր օրերում դեռևս քիչ չեն լարվածության թուլացման հակառակորդները, ռազմական պատրաստությունների, սպառազինության մրցավազքի մասին աղմկողները, խաղաղ համագործակցության հարցերի արմատական քննար-

կումներին դիմակայողները: Իմպերիալիստական որոշ շրջանների դուր չի գալիս ակնհայտ շրջադարձը լարվածությունից դեպի թուլացում. նրանք փորձում են գժտություն, կասկածանք սերմանել, ուժեղացնել հակասովետական պրոպագանդան, պահպանել ագրեսիայի ու պատերազմի դյուրապայթ օջախները: Թուլացմանը դիմակայող ուժերը զենքը վար չեն դնում: Իմպերիալիզմի բնույթը չի փոխվել: Խաղաղության ծրագրի հետագա կենսագործման համար հարկավոր են մեծ զգոնություն, մշտական, անդուլ ջանքեր:

«Սառը պատերազմի» կողմնակիցների համախոհները դարձան պեկինյան ներկայիս լիդերները: Միջազգային լարվածությունը ո՛չ միայն պահպանելու, այլև սրելու իրենց ձգտման մեջ չինական ղեկավարները միանում են իմպերիալիստական ամենասանձարձակ շրջաններին: Հարկ է նկատի ունենալ նաև այն ոչ պակաս կարևոր հանգամանքը, որ լարվածության թուլացմանը հասնելու գործում պետք է լինում հաղթահարել նաև իներցիայի որոշակի ուժ: Խոսքը տարիներով, երբեմն նաև տասնամյակներով կուտակված պրոբլեմների լուծման մասին է:

Բուրժուական մամուլում երբեմն հանդիպում են նաև նման դատողություններ. քանի որ Սովետական Միությունը և Ամերիկայի Միացյալ Նահանգները բարելավում են իրենց փոխհարաբերությունները և միջազգային լարվածության նվազեցմանը նպաստող կարևոր համաձայնագրեր են կնքում, ապա մյուս պետություններին մնում է սպասումի պասիվ դեր, իսկ ոմանք էլ ավելի հեռուն են գնում, պնդելով, թե այդ ամենից տուժում են երրորդ պետությունները:

Նմանօրինակ պնդումները կանխամտածված կամ ակամա աղճատում են իրերի իսկական վիճակը, համապատասխանում են «սառը պատերազմի» շահերին, արտահայտում այն շրջանների շահերը, որոնք ջանում են աշխարհը հրել ռազմական ավանտյուրաների ուղին և իրենց քաղաքականությունը հիմնում ժողովուրդներին խաբելու վրա: Անհրաժեշտ է պարզորոշ ցույց տալ, որ սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավումը կենսագործվում է առանց մյուս երկրներին որևէ վնաս հասցնելու, որ Սովետական Միությունը և համաշխարհային սոցիալիստական ողջ սիստեմը եղել և մնում են ազգային ազատագրման համար մարտնչողների մշտական բարեկամն ու դաշնակիցը, զարգացող երիտասարդ պետությունների ազգային անկախության փաստական հովանավորը: Սովետական Միությունը, սոցիալիստական մյուս երկրները միշտ էլ վճռականորեն հանդես են եկել ի պաշտպանություն ճնշված ժողովուրդների, համակողմանի պաշտպանել են ազգային ազատագրության համար մղած նրանց պայքարը: Բայց չէ՞ որ դա դժվարին, դաժան պայքար է, և դրանում լինում են ողբերգական շրջադարձեր: Չիլիի օրինակը դրա բացահայտ վկայությունն է: Սպանված է ժողովրդի ընտրյալ պրեզիդենտ Սալվադոր Ալիենդեն: Վտանգի տակ է Չիլիի կոմկուսի գլխավոր քարտուղար Լուիս Կորվալանի կյանքը: Ռեակցիայի ուժերը դաժան հարված հասցրին Չիլիի ժողովրդի անկախության և ազատության ձգտմանը: Երկրում բորբոքվում է հակասովետական կամպանիան, կամայականություն ու բռնություններ են գործադրվում դեմոկրատական ուժերի նկատմամբ: Նման իրադրությունից ելնելով՝ ՍՍՀՄ, սոցիալիստական մի շարք երկրների կառավարությունները որոշեցին դիվանագիտական հարաբերությունները խզել Չիլիի ներկա կառավարության՝ ռազմական խունտայի հետ:



Քաղաքական անկախության ուղին թևակոխած պետությունները, հանձին Սովետական Միության, գտել և գտնում են իրենց բարեկամին, որը պատրաստ է օգնել նրանց տնտեսական ինքնուրույնության ամրապնդմանը, ծանր օրերին օգնության ձեռք մեկնել նրանց: Զարգացող երկրների հետ համագործակցության ընդլայնումը ՍՍՀՄ արտաքին քաղաքականության օրգանական մասն է:

Պարզաբանելով կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության խաղաղության ծրագիրը, պրոպագանդելով Լ. Ի. Բրեժնևի ԱՄՆ կատարած այցի արդյունքները, հարկավոր է խորապես բացահայտել սոցիալիստական երկրների քաղաքական ու գաղափարական միասնության առավել ամրապնդման դերը ՍՄԿԿ արտաքին-քաղաքական ողջ գործունեության մեջ, ցույց տալ լարվածության թուլացման պայմաններում կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միասնության հարաճուն նշանակությունը, որը յուրաքանչյուր սոցիալիստական երկրի և սոցիալիստական ողջ համագործակցության հաջող զարգացման կարևորագույն երաշխիքն է:

Կյանքը որոշակիորեն հաստատում է, որ սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման, սոցիալիստական համագործակցության հետագա առավել ամրապնդման մարզում ձեռք բերված նվաճումները խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարի նորանոր հաջողությունների ամենավստահելի, ամենահուսալի գրավականն են: Միջազգային ասպարեզում տեղի ունեցած դրական փոփոխությունները սոցիալիզմի երկրների ջանքերի կոնկրետ, համոզիչ արդյունքն են:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը ելնում է այն բանից, որ լարվածության թուլացման պայմաններում սոցիալական երկու սիստեմների միջև տնտեսական հաջող համագործակցության և մրցակցության անհրաժեշտ նյութական բազան եղբայրական սոցիալիստական երկրների սոցիալիստական տնտեսական ինտեգրացիան, տնտեսական ու գիտատեխնիկական համագործակցության խորացումն են: Այդ պայմաններում հատուկ նշանակություն են ստանում սոցիալիստական պետությունների կոորդինացված դիրքերը համաշխարհային շուկայում, նրանց արտաքին-քաղաքական քայլերի ու արտաքին-տնտեսական կապերի հիմնական ուղղությունների համաձայնեցվածությունը:

Կապիտալիստական երկրների հետ սոցիալիստական երկրների բնականոն? 

Գաղափարական աշխատանքի ողջ սիստեմում պետք է ելնել այն փաստից, որ սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականությունը սկզբունքորեն դասակարգային է: Վերջինիս անփոփոխ հիմքը եղել և մնում են խաղաղության ու միջազգային անվտանգության համար մղվող պայքարի օրգանական կապը ազատության ու անկախության համար բոլոր ժողովուրդների մղած պայքարի, իրենց ճակատագիրն ինքնուրույն տնօրինելու նրանց սրբազան իրավունքի հետ:

Բացահայտելով ՍՍՀՄ արտաքին քաղաքականության դասակարգային,

ինտերնացիոնալ բնույթը՝ պետք է ցույց տալ, որ խաղաղ գոյակցությունը դասակարգային պայքարի ձև է, որի նպատակն է՝ մեր երկրում բարենպաստ պայմաններ ստեղծել կոմունիզմի կառուցման, համաշխարհային սոցիալիզմի դիրքերի ամրապնդման, միջազգային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական, հակաիմպերիալիստական շարժման ողջ ճակատում մղվող պայքարի համար:

Միջազգային լարվածության թուլացման սկսված պրոցեսն ընդլայնում է սոցիալիստական և կապիտալիստական երկրների միջև փոխշահավետ տնտեսական կապեր հաստատելու հնարավորությունները: Այդ առնչությամբ ուժեղանում է սոցիալիստական երկրներում իր գաղափարները, հայացքները, բարոյականությունը պարտադրելու նպատակով տնտեսական կապերի զարգացումն ու կուլտուրական և գիտատեխնիկական փոխանակությունն օգտագործելու բուրժուազիայի ձգտումը: Ահա թե ինչու միջազգային իրադրության փոփոխությունները չպետք է պասսիվություն ու ինքնահանգստացում հարուցեն, այլև, հակառակը, պետք է ուժեղացնեն սոցիալիզմի նվաճումների ու առավելությունների, սոցիալիստական իդեալների, նրա բարոյական, հոգեկան արժեքների ու գաղափարների խորապես պատճառաբանված պրոպագանդան: Այդ ընթացքում պետք է մեծ ուշադրություն նվիրել համաշխարհային երկու սիստեմների՝ սոցիալիզմի ու կապիտալիզմի, համադրական վերլուծությանը, սոցիալիզմի իրական նվաճումների համոզիչ պրոպագանդմանը, իմպերիալիզմի սիստեմի, բուրժուական գաղափարախոսության փաստալի, ակտիվ քննադատությանը: Ընդ որում, կարևոր է նշել, որ միջազգային լարվածության թուլացման պրոցեսը տեղի է ունենում կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացման, նրա վալյուտա-ֆինանսական սիստեմի ուժեղացող ճգնաժամի, միջիմպերիալիստական հակասությունների և իմպերիալիստական պետությունների ու զարգացող երկրների միջև ուժեղացող հակամարտության, սրվող ճգնաժամի պայմաններում:

Անհրաժեշտ է գաղափարախոսական աշխատանքի բոլոր միջոցներով ու ձևերով վճռական հարձակում գործել հակասովետական, հակակոմունիստական, սիոնիստական ու միլիտարիստական ուժերի, բոլոր նրանց դեմ, ովքեր հանդես են գալիս «սառը պատերազմին» վերադառնալու օգտին, ընդդեմ միջազգային լարվածության թուլացման, հանուն սպառազինության մրցավազքի: Հարկավոր է շարունակել հանուն խաղաղության ու անվտանգության ժողովուրդների մղած պայքարի գլխավոր խոչընդոտներից մեկի՝ սիոնիզմի ագրեսիվ էության, իմպերիալիստական բուրժուազիայի ռեակցիոն ուժերի հետ կապված պեկինյան լիդերների դավաճանության մերկացումը: Անհրաժեշտ է շարունակել արդի աջ և «ձախ» ռևիզիոնիզմի և օպորտունիզմի, սոցիալ-ռեֆորմիզմի քննադատությունը:

Կուսկազմակերպությունները, գաղափարախոսական հաստատությունները, խաղաղության ծրագիրը պարզաբանելիս, մեր արտաքին քաղաքականության նվաճումները պետք է սերտորեն կապեն ՍՄԿԿ XXIV համագումարի նշած սովետական հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման ծրագրի կենսագործման համար ծավալված պայքարի հետ: Անհրաժեշտ է համոզիչ ցույց տալ, որ համաշխարհային կյանքի վրա սովետական պետության աճող ազդեցությունը մեծապես կուժեղանա իններորդ հնգամյա պլանի հաջող կատարմամբ:



Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 56-րդ և Հայաստանում սովետական կարգերի հաստատման 53-րդ տարեդարձը մեր հանրապետության աշխատավորները դիմավորում են ընթացիկ հնգամյակի վճռական տարվա պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման ասպարեզում նվաճված հաջողություններով: Արդյունաբերության արտադրանքի իրացման և կարևորագույն արտադրատեսակների մեծ մասի թողարկման՝ 1973 թ. առաջին կիսամյակի պլանը գերակատարվել է: Պլանից ավելի արտադրվել և իրացվել է 31,7 մլն ռուբլու արտադրանք: Անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ արդյունաբերության արտադրանքի աճը կազմել է 3,3 տոկոս: Կոլտնտեսություններն ու սովխոզները կատարել են պետությանը հացահատիկ և բանջարեղեն վաճառելու տարեկան սոցիալիստական պարտավորությունները: Հանրապետության մթերակայաններն են հանձնվել 53 հազար տոննա հացահատիկ, որը գերազանցում է ժողովրդատնտեսական պլանը:

Նոր հնգամյակի հոյակապ պլանի հաջող իրականացումն առավել կզորացնի մեր մեծ հայրենիքը, որը խաղաղության հուսալի պատվարն է ողջ աշխարհում: Կուսակցության վիթխարի կանխագծումների կենսագործման շնորհիվ նոր, առաջընթաց քայլ կարվի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ճանապարհին: Ուստի, գաղափարական ճակատի բոլոր գործիչները պետք է ձգտեն, որ յուրաքանչյուր սովետական մարդ խորապես գիտակցի, թե իր անձնուրաց աշխատանքով, բարձր կարգապահությամբ ինքն ամրապնդում է ՍՄԿԿ և համաշխարհային սոցիալիզմի հզորությունը, դրանով իսկ՝ ժողովուրդների խաղաղության և անվտանգության հիմքերը:

Նշելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 56-րդ տարեդարձը՝ սովետական ժողովուրդը համազգային օրինական հպարտությամբ գիտակցում է, որ հատկապես մեր սովետական երկիրը, կենսագործելով լենինյան պատգամները, դարձավ այն պետությունը, որը ողջ մարդկությանը ցույց է տալիս կայուն խաղաղության ուղին: Մեր սոցիալիստական երկրի արտաքին քաղաքականությունը խարսխված է կոմունիստական կուսակցության միասնության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը սովետական ժողովրդի կուռ համախմբվածության վրա: Մեր երկրի հետագա հաջողությունների գրավականը կոմունիստական կուսակցության ղեկավարությունն է, նրա գլխավոր գծի կենսագործումը:

## ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՍԻՍՏԵՄՆԵՐԻ ԳՈՅԱԿՑՈՒԹՅՈՒՆՆ Է

**Ս. Ա. ՔՈՉԱՐՅԱՆ**

Պատմական փորձը վկայում է, որ հասարակական-տնտեսական ֆորմացիաների հերթափոխությունը միաժամանակյա պրոցես չէ։ Տարբեր աշխարհամասերում արտադրաուժերի միևնույն տեմպերով չզարգանալու հետևանքով սոցիալական նոր կացութաձևերը միաժամանակ չեն գոյավորվել։ Միջին դարերում եվրոպական և ասիական մայրցամաքների մեծ մասում առավելապես ֆեոդալական արտադրաեղանակն էր տիրապետում, մինչդեռ Աֆրիկայում, Ամերիկայում ու Ավստրալիայում ստրկատիրական և նույնիսկ տոհմացեղային հարաբերություններ էին պահպանվում։ Ոչ միաժամանակ տեղի ունեցավ անցումը ֆեոդալիզմից կապիտալիզմին։ Այսպիսով, հասարակության կազմակերպման ձևերի գոյակցության փաստը պայմանավորված է տնտեսաքաղաքական ուժերի անհամաչափ զարգացման օրենքի գործողությամբ։

Սոցիալական սիստեմների գոյակցության առանձնահատկությունը կարելի է ըմբռնել անցման փուլերի բնորոշ գծերի և այդ սիստեմներին պատկանող պետությունների քաղաքական հարաբերությունների բնույթի վերլուծության հիման վրա։ Ստրկատիրությունից ֆեոդալիզմին և ֆեոդալիզմից կապիտալիզմին անցումը ուղեկցվել է բազմաթիվ պատերազմներով։ Հակամարտ տնտեսական բազիսով որոշվող շահագործողական պետությունների արտաքին քաղաքական գործունեությունը էքսպանսիոնիստական ուղղություն ունի։ Արտադրամիջոցների մասնավոր սեփականության վրա խարսխվող հասարակարգերում միջպետական հարաբերությունները զարգանում են դասակարգային շահատենչ նկրտումների բախման պայմաններում։ Բնական է, որ խաղաղ գոյակցության հնարավորությունը բացառվում է՝ դրա սոցիալ-տնտեսական հիմքերի բացակայության պատճառով։ Սոցիալական տարբեր սիստեմների պետական հարաբերությունների հիմքն ու բնույթը պետք է գնահատել գոյակցություն և խաղաղ գոյակցություն հասկացությունների տարբերակման առումով։

Խաղաղ գոյակցությունն օտար է հակամարտ հասարակարգերի միջպետական հարաբերությունների ոլորտին։ Շահագործողական տիպի պետությունները մշտապես ապավինել են զինված բռնությանը՝ իբրև հակասությունների լուծման միջոցի։ Արտադրամիջոցների մասնավոր սեփականության տիրապետության պայմաններում քաղաքական հարաբերությունների բնորոշ գիծը դասակարգային հակամարտությունն է երկրի ներսում և միջպետական՝ դրանից դուրս։



Կապիտալիզմից սոցիալիզմին անցումը նշանակում է հակամարտ հասարակական հարաբերությունների ամբողջ համակարգի բացասում, պետությունների միջև պայքարի բռնի եղանակի տնտեսական աղբյուրների և դասակարգային շարժառիթների լիակատար վերացում։ Սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսությունից տրամաբանորեն բխում է որոշակի պատմական ժամանակաշրջանում սոցիալիստական և կապիտալիստական պետությունների գոյակցության անխուսափելիության մասին դրույթը։ Քննադատելով կապիտալիստական տերությունների հետ խաղաղ բանակցություններ վարելու հակառակորդների հայացքները՝ Վ. Ի. Լենինը նշում է, որ ըստ նման հայացքների սոցիալիստական հանրապետությունը չի կարող տնտեսական համաձայնագրեր կնքել կապիտալիստական երկրների հետ, չի կարող գոյություն ունենալ՝ չթռչելով լուսին։

Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու անկասելիությունն ու աստիճանականությունը պայմանավորում են այդ սիստեմների մեջ մտնող պետությունների փոխհարաբերությունների աննախադեպ հիմքի՝ ոչ թե ավանդական իմաստով գոյակցության, այլ խաղաղ գոյակցության ծագման օրինաչափությունը։ Վերջինս արդյունք է սոցիալիստական հասարակական-տնտեսական կարգի, որը մերժում է ռազմամոլությունը և ագրեսիվ քաղաքական ակցիաները։

Խաղաղ գոյակցության սկզբունքը սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքական գործունեության բաղկացուցիչ մասն է, որը համաշխարհային քաղաքականության հանրաճանաչ նորմայի վերածվելու բացահայտ տենդենց ունի, նախորոշվում է օբյեկտիվ ու սուբյեկտիվ որոշակի գործոններով։

Արդի դարաշրջանի կարևոր առանձնահատկություններից մեկը պետությունների տնտեսական կապերի ընդարձակման տենդենցն է՝ աշխատանքի միջազգային բաժանման և համաշխարհային շուկայի առկայության պայմաններում։ Ներկայումս ոչ մի երկիր չի կարող հաջողությամբ զարգանալ համաշխարհային հարաբերություններից դուրս։ Այդ առաջադիմական երևույթը լիովին արտացոլվում և ողջամիտ լուծում է գտնում խաղաղ գոյակցության քաղաքականության մեջ։ «Կա ավելի մեծ ուժ,— գրում էր Վ. Ի. Լենինը,— քան թշնամի կառավարություններից կամ դասակարգերից ամեն մեկի ցանկությունը, կամքն ու վճիռը. այդ ուժը համաշխարհային ընդհանուր տնտեսական հարաբերություններն են...» (Երկեր, հ. 33, էջ 172)։

Խաղաղ գոյակցության սկզբունքի իրագործման վճռական նախադրյալը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առկայությունն է։ Սոցիալիզմի լագերը հիրավի այն իրական, հզոր ուժն է, որն էականորեն բարձրացնում է իմպերիալիզմին համակողմանիորեն հակազդելու աստիճանը և համապատասխանաբար բազմապատկում ժողովուրդների հակապատերազմական կարողությունները միջազգային տարաձայնությունները ոչ բռնի եղանակով լուծելու համար մղվող պայքարում։

Խաղաղ գոյակցության կենսագործմանը նպաստող և խաղաղության համար պայքարող զանգվածների եռանդն ու կամքն ուժեղացնող օբյեկտիվ գոր-

ծոններից մեկը գիտական իմացության ձեռք բերված մակարդակն է։ Արդի գիտատեխնիկական թռիչքը հեղաշրջում առաջացրեց նաև ռազմական գործում։ Պատերազմի բնույթի արմատական փոփոխությունը սոցիալ-տնտեսական տարբեր կառուցվածք ունեցող պետությունների առջև դրեց երկընտրանք՝ «խաղաղ գոյակցություն, կամ կատաստրոֆիկ պատերազմ՝ միայն այսպես է դրել հարցը պատմությունը» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 480)։

Ուստի, խաղաղ գոյակցության պատմական անհրաժեշտությունը բխում է մարդկության կենսական շահերից, որոնք ներդաշնակ են սոցիալիստական և կոմունիստական շինարարության համամարդկային, հումանիստական խնդիրներին։

Պատերազմների սոցիալական և ազգային դրդապատճառների վերջնական ոչնչացումը կապված է սոցիալիստական արտադրաեղանակի համընդհանուր հաստատման հետ։ Հենց այս տեսանկյունից պետք է հասկանալ սոցիալիզմի և խաղաղ գոյակցության համար մղվող պայքարի խնդիրների միասնությունը։ Այդ խնդիրներն ունեն դասակարգային ուղղվածություն, հեղափոխական բովանդակություն և միահյուսվում են միջազգային կոմունիստական շարժման ստրատեգիայում։

Դիալեկտիկան պահանջում է դասակարգային ուժերի հարաբերակցության և տվյալ պատմական պահի կոնկրետ առանձնահատկությունների ամենաճշգրիտ, օբյեկտիվորեն ստուգված հաշվառում՝ գիտական քաղաքականության մշակման ու իմաստավորման դիրքերից։ Համաշխարհային հեղափոխական շարժման ստրատեգիայում պայքարի խնդիրները և վերջնական նպատակին հասնելու միջոցները միահյուսվում են. բանվոր դասակարգի հեղափոխական շարժման բարոյական նպատակները բացառում են դրանց իրականացման հակաբարոյական միջոցները։ Մարքս-լենինյան քաղաքական գաղափարախոսությունը վճռականորեն մերժում է «նպատակն արդարացնում է միջոցները» մաքիավելիստական թեզը։ Պրոլետարիատի դասակարգային պայքարի մարդասիրական բնույթին համապատասխանում են դրա խնդիրների իրագործման մարդկային միջոցները։

Գիտական հեղափոխական քաղաքականությունն անհամատեղելի է նաև պայքարի քարացած եղանակների հետ՝ մեկընդմիշտ հաստատված պլանի կամ գործելաձևի իմաստով։ Դիալեկտիկական մտածողությունը պահանջում է կոնկրետ իրադրության կոնկրետ վերլուծություն։ Հեղափոխական դասակարգի քաղաքականության մեջ տեսական ռադիկալիզմը շաղկապվում է գործնական ռեալիզմի հետ, որ ենթադրում է հաշվի առնել առաջացած պայմանները, պայքարող կողմերի հնարավորությունները, մասնավոր և ընդհանուր շահերը, պայքարի զարգացման հիմնական տենդենցները։ Միայն այդ դեպքում պայքարի վերջնական արդյունքները կայունություն և երկարատևություն են ձեռք բերում։

Պատերազմների և սոցիալիստական հեղափոխությունների միջև պատմականորեն դրսևորվող կապը չի կարելի մեկնաբանել մեխանիկորեն։ Հայտնի է, որ 1871 թ. ֆրանս-պրուսական պատերազմի ժամանակաշրջանում ծնվեց Փարիզի կոմունան։ Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը. հեղափոխություններ տեղի ունեցան նաև Գերմանիայում և Հունգարիայում։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներում հաղթանակեցին սոցիալիստական հեղափոխությունները։ Նման հաջորդականությունը չի արտահայտում պատճառա-հետևանքային հարաբերություններ, այլ արտացոլում է այն գոյապայմանները, որոնց մեջ ծավալվեցին այդ իրադարձությունները։



Քաղաքական պայքարը դասակարգային պայքարի վճռական ձևն է, և, բնականաբար, պատերազմը չի կարելի քննարկել դասակարգային հարաբերություններից զատ։ Ուստի, դասակարգային պայքարի և պատերազմի նույնացումը անթույլատրելի է, քանզի այդ դեպքում դասակարգային պայքարի օրենքների և միլիտարիզմի օրենքների միջև եղած տարբերությունը վերանում է։ Առանձնահատուկ երևույթների էկլեկտիկական խառնուրդի այսպիսի նմուշ կարող է ծառայել մաոիզմի տեսությունը։ Այդ «ուսմունքում» զինված բռնությունը ներկայացվում է իբրև միջդասակարգային և միջպետական հակասությունների լուծման բարձրագույն ձև և միակ եղանակ, շեշտելով, թե պատերազմով հարցերը լուծելու սկզբունքը անպայման ճիշտ է ինչպես Չինաստանի, այնպես էլ ուրիշ պետությունների համար։ Այս դրույթի հակադիալեկտիկական և հակամարքսիստական բնույթն ակներև է։ Պայքարի բռնի եղանակի այդպիսի ֆետիշացումը հանգեցնում է հակատրամաբանական եզրահանգումի՝ պատերազմների ճակատագրական անխուսափելիության մասին։ Մաոն բացահայտ նշում է, թե պատերազմը կարելի է ոչնչացնել միայն պատերազմի միջոցով։ Պատերազմը ներկայացվում է որպես կամուրջ, որի վրայով իբր մարդկությունը կանցնի ռազմական բախումներից զերծ պատմական նոր դարաշրջան։

Հասարակական կյանքի օբյեկտիվ դիալեկտիկայի հետ անհամատեղելի այս տեսակետը արմատապես հակասում է մարդկության առաջադեմ զարգացման համընդհանուր շահերին ու պահանջմունքներին, անտեսում սուբյեկտիվ գործոնի դերը պատմական պրոցեսում, աղճատում դասակարգային պայքարի օրինաչափություններն ու դրսևորման ձևերը, զուրկ է քաղաքական ռեալիզմից։ Ուլտրահեղափոխական դարձվածքների քողի ներքո քարոզվում է զինված բռնության պաշտամունք։ Հեղափոխությունը և պատերազմը, սոցիալական և զինված բռնությունը նույնացվում են, այդ հասկացությունների տարբերակումը ջնջվում է։

Սոցիալիստական հեղափոխությունը պրոլետարիատի քաղաքականության շարունակությունն է, իշխանության համար ծավալվող պայքարի բարձրագույն ձևը, բայց առանց զինված բռնության պարտադիր կիրառման։ Իսկ պատերազմը այդ քաղաքականության շարունակությունն է՝ զինված բռնության անպայման գործադրումով, որն անխուսափելիորեն ուղեկցվում է արյունահեղությամբ։ Վ. Ի. Լենինը նկատում էր, որ հեղափոխական բռնությունը գործողության անհրաժեշտ եղանակ է հեղափոխության զարգացման որոշակի պահերին, միայն հատուկ պայմանների առկայությամբ։

Երկու համաշխարհային պատերազմները ինչ որ չափով հեղափոխության «անուղղակի ռեզերվի» դեր խաղացին այն առումով, որ սրեցին հեղափոխական իրադրությունը պատերազմող կապիտալիստական շատ երկրներում, ակտիվացրին ներքին հակակապիտալիստական ուժերի գործողությունները։ Պատերազմը սոսկ դեն նետեց բոլոր քողերն ու պայմանականությունները, ցույց տալով, որ ոչ միայն «ներքևինները» չեն ուզում ապրել հին ձևով, այլև «վերևինները» չեն կարող կառավարել հին ձևով։

Ժամանակակից էտապում համաշխարհային պատերազմը չի կարող դառ-

նալ հեղափոխության «անուղղակի ռեզերվը»։ Ընդհակառակը, ներկայումս համաշխարհային հեղափոխական պրոցեսի և համամարդկային առաջընթացի հզոր գործոն է խաղաղ գոյակցությունը։ Մենք գիտենք, մենք շատ լավ գիտենք,— գրել է Վ. Ի. Լենինը,— թե ինչպիսի չլսված չարիքներ է բերում բանվորներին ու գյուղացիներին պատերազմը։ Այդ իսկ պատճառով մենք պետք է ամենազգույշ և ամենաշրջահայաց կերպով վերաբերվենք այդ հարցին (տե՛ս ПСС, т. 44, стр. 297)։

Անկասկած, խաղաղ գոյակցությունն իր գործողության բնույթի պատճառով բնավ չի կարող հասցնել սոցիալական հակադիր համակարգերի փոխներաճմանը՝ «կոնվերգենցիային» կամ նրանց հիմքերի փոփոխությանը։ Խաղաղ գոյակցությունը չի տարածվում միջդասակարգային հարաբերությունների վրա կապիտալիստական սիստեմի ներսում։ Այն սահմանափակված է սոցիալական տարբեր սիստեմների միջպետական հարաբերությունների բնագավառով, որ ներառում է տնտեսական, քաղաքական և կուլտուրական ոլորտները և բացառում գաղափարական պայքարի ոլորտը, որն անզիջում բնույթ է կրում։ Մյուս կողմից, հակադիր սոցիալական սիստեմների խաղաղ գոյակցությունն ամենևին չի հանգեցնում քաղաքականության ապադասակարգայնացման, այն դասակարգային պայքարի շարունակությունն է նոր պայմաններում և նոր՝ խաղաղ մրցության հիմքի վրա, միաժամանակ հակամարտ դասակարգերի միջև գործող հակասությունների լուծման առանձնահատուկ (ոչ բռնի) եղանակն է։

Խաղաղ գոյակցության քաղաքականությունն ունի դասակարգային բովանդակություն, որ ներառում է հակաիմպերիալիստական պայքարի հեղափոխական սոցիալիստական և համադեմոկրատական բաղադրամասերը։ Այն բարենպաստ պայմաններ է ստեղծում սոցիալիստական սիստեմի հետագա ամրապնդման համար, որն օրինակի ուժով հեղափոխականացնող ազդեցություն է գործում կապիտալիստական երկրների աշխատավոր զանգվածների վրա, դրանով իսկ օբյեկտիվորեն արագացնելով հակակապիտալիստական ուժերի համախմբումն ու բևեռացումը, նպաստում զարգացող երկրների սոցիալ-տնտեսական պրոբլեմների դրական լուծմանը, վիժեցնում մոնոպոլիստական բուրժուազիայի փորձերը՝ կապիտալիզմի հակասությունները լուծելու պատերազմի միջոցով և, վերջապես, գործարար հիմք է ապահովում տարբեր պետությունների միջև փոխշահավետ և փոխընդունելի համագործակցության զարգացման ու ընդլայնման համար։

Խաղաղ գոյակցությունը միջազգային հարաբերությունների ոլորտում կամայական վիճակ կամ էլ վաղանցիկ երևույթ չէ, որ թելադրված է հանգամանքների բերումով։ Այն կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու անկասելի պրոցեսի օրինաչափություններից է։

Հարկ կա նաև ընդգծել, որ խաղաղ գոյակցությունը համաշխարհային քաղաքականության գերիշխող գործոն է դառնում նաև մարդկանց գիտակցական, հասարակական ակտիվ գործունեությամբ։ Հանրահայտ է, որ ագրեսիայի տնտեսական աղբյուրի և միլիտարիստական շարժիչ ուժերի առկայությունը խոչընդոտում են խաղաղ գոյակցության հաստատմանը։ Ուստի դրա օրինաչափությունն ու անհրաժեշտությունը գործնականորեն ճանապարհն են հարթում փոխբացառող քաղաքական դիրքորոշումների սրվող հակամարտության պայմաններում։ Միջսիստեմային հակասությունները խաղաղ եղանակով լու-



ծելու տենդենցի գերակշռությունը ապահովվում է սոցիալիստական համագոր-
ծակցության պետությունների ռազմա-տնտեսական հզորությամբ և դինամիկ
արտաքին քաղաքական գործունեությամբ, միջազգային իմպերիալիզմի ռազ-
մատենչ շրջանների վրա, բոլոր հակաիմպերիալիստական և հակամիլիտա-
րիստական ուժերի կոլեկտիվ հակապատերազմական ճնշմամբ, ինչպես նաև
գիտական իմացության ժամանակակից ստիճանով։ «Իմպերիալիզմի դեմ
ծավալված մասսայական գործողությունները խաղաղ գոյակցության քաղա-
քականության իրագործման պայմաններից մեկն են... Խաղաղության պաշտ-
պանությունն անխզելիորեն կապված է այն պայքարի հետ, որն իմպերիալիստ-
ներին պարտադրում է տարբեր հասարակարգ ունեցող պետություններին խա-
ղաղ գոյակցել...» («Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի խնդիրների արդի
էտապում և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր
հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների միասնությունը», «Հա-
յաստան» հրատ., 1969, էջ 46, 45)։

Ի տարբերություն հաշտության կամ գոյակցության վիճակի, խաղաղ գո-
յակցությունը միջազգային հարաբերությունների որակապես նոր համակարգ է,
որը խարսխվում է օրինականացված փոխադարձաբար պահպանվող սկզբունք-
ների վրա, որոնցից առաջատարն ու էականը պատերազմից, որպես միջսիս-
տեմային տարաձայնությունների լուծման միջոցից, հրաժարվելն է։ Այս տե-
սակետից հետպատերազմյան ժամանակաշրջանի միջազգային հարաբերու-
թյունների պատմության մեջ կարևոր փուլ է 60-ական թվականների վերջը
և 70-ական թվականների սկիզբը։ Այդ ժամանակաշրջանում խաղաղ գոյակ-
ցության սկզբունքն ավելի լայն ճանաչման արժանացավ։

Այդ փուլի դիալեկտիկան և միջազգային կյանքի գլխավոր տենդենցներն
իրենց համապատասխան արտացոլումը գտան ՍՄԿԿ XXIV համագումարի
ընդունած Խաղաղության ծրագրում։ Վերջինս իր մեջ ամփոփելով հասունացած
միջազգային պրոբլեմների կոմպլեքսը, նախորոշում է դրանց քաղաքական
կարգավորման ռեալ և արդյունավետ ուղիներն ու միջոցները, որոնք ապահո-
վում են համաշխարհային իրադրության կայունացումը։ Համագումարի բանա-
ձևում արձանագրված է, որ ագրեսիային տրվող վճռական հակահարվածը սո-
վետական քաղաքականության մեջ զուգորդվում է «հասունացած միջազգային
պրոբլեմները կարգավորելու կոնստրուկտիվ գծի, տարբեր հասարակարգ ունե-
ցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի հետևողական
պաշտպանության հետ»։

Սոցիալիստական և կապիտալիստական երկրների միջպետական հարա-
բերությունների պրակտիկան հաստատում է խաղաղ գոյակցության կենսու-
նակությունը։ Վերջին շրջանում երկկողմանի փոխընդունելի և փոխձեռնտու մի
շարք պայմանագրերի ու համաձայնագրերի կնքումը, բարձրաստիճան պետա-
կան գործիչների հաճախակի կոնտակտները կոնկրետ բովանդակություն են
հաղորդել խաղաղ գոյակցությանը։ Սովետական Միության և ԳՖՀ-ի, Լեհաս-
տանի և ԳՖՀ-ի, Չեխոսլովակիայի և ԳՖՀ-ի միջև ստորագրված պայմանա-
գրերը, ԳՖՀ-ի և ԳԴՀ-ի միջև կնքված պայմանագիրը երկու երկրների հարա-
բերությունների հիմունքների մասին, Արևմտյան Բեռլինի վերաբերյալ քառա-
կողմ համաձայնագիրը ռեալ նախադրյալներ ստեղծեցին Եվրոպան պատերազ-
մազերծ աշխարհամասի վերածելու համար։ Եվրոպայում կոլեկտիվ անվտան-
գության համակարգ ստեղծելու գործում կարևորագույն էտապ է անվտանգու-

թյան և համագործակցության հարցերի շուրջ համաեվրոպական խորհրդակցությունը։

Համաշխարհային իրադարձությունների ընթացքն ու ընդհանուր տենդենցները նշանակալիորեն կախված են մեծ տերությունների և հատկապես ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի հարաբերությունների բնույթից։ Ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը ամերիկյան հեռուստատեսությամբ ունեցած ելույթում. Մենք շատ դրական ենք համարում այն փաստը, որ սովետա-ամերիկյան հարաբերությունների նորմալացումը նպաստում է այնպիսի մեծ և կարևոր խնդրի լուծմանը, ինչպիսին Եվրոպայում խաղաղության ու անվտանգության ամրապնդումն է, այդ թվում համաեվրոպական խորհրդակցության անցկացումը։

Սովետա-ամերիկյան հարաբերություններում կատարված որոշակի առաջընթացը համապատասխանում է թե՛ երկու երկրների ժողովուրդների և թե՛ համընդհանուր խաղաղության շահերին։ Հատկանշական է, որ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի փոխհարաբերությունների հիմունքները սահմանվեցին այն բանի խըստագույն հաշվառումով, որ միջուկային զենքի առկայության պայմաններում այդ փոխհարաբերությունների համար ոչ մի այլ հիմք հնարավոր չէ, բացի խաղաղ գոյակցությունից։ Եվ հենց այդ հիմքի վրա են զարգանում սովետա-ամերիկյան հարաբերությունները։ Բարձր մակարդակով հանդիպումների ու բանակցությունների ընթացքում ձեռք բերված դրական արդյունքը վկայում է, որ Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականությունը և իրադարձությունների օբյեկտիվ ընթացքը հետզհետե հանգեցնում են այն բանին, որ կապիտալիստական աշխարհն ընդունում է խաղաղ գոյակցության հիման վրա սոցիալիստական պետությունների հետ հարաբերությունները զարգացնելու անհրաժեշտությունը։ Բնորոշ է սովետա-ամերիկյան համատեղ կոմյունիկեում արձանագրված այն միտքը, որ կողմերը հետագա քայլեր կկատարեն իրենց փոխհարաբերություններին առավելագույն կայունություն տալու և բարեկամության ու համագործակցության զարգացումը միջազգային խաղաղության մշտական գործոնի վերածելու ասպարեզում։ Այդ թեզի ընդունումն ապացուցում է, որ խաղաղ գոյակցությունը ոչ թե կոնյունկտուրային երևույթ է, այլ միջսիստեմային հարաբերությունների էական հիմքը։

Խաղաղ գոյակցությունը և միջպետական հարաբերություններում ուժ գործադրելը անհամատեղելի են։ Այս դրույթը պարզորոշ դրսևորվում է սովետա-ամերիկյան համաձայնագրերում, որոնցից կարևոր նշանակություն ունեն հակահրթիռային և հարձակողական միջոցները սահմանափակելու և միջուկային պատերազմը կանխելու վերաբերյալ համաձայնագրերը։ Նպատակադրվելով վերացնել միջուկային պատերազմի և միջուկային զենքի կիրառության վտանգը՝ երկու տերությունները պարտավորվեցին գործել այնպես, որպեսզի բացառվի միջուկային պատերազմը։ Այս և մի շարք այլ համաձայնագրերը պատմական նշանակություն ունեն և նշանավորում են երկու մեծ տերությունների փոխհարաբերությունների նոր փուլը։

Խաղաղ գոյակցության իրադրությունը զինաթափման պրոբլեմի լուծման երաշխիքն է, որն իր հերթին համընդհանուր խաղաղության պայմանն է։ Այդ բնագավառում արդեն ձեռք բերված առաջընթացը (միջուկային զենքը չտարածելու, տիեզերքում, ծովերի ու օվկիանոսների հատակում այն տեղակայելն արգելելու վերաբերյալ պայմանագիրը, սովետա-ամերիկյան համաձայնագրերը հարձակողական ստրատեգիական սպառազինության և հակահրթիռային



պաշտպանության սիստեմների սահմանափակման մասին, ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի կողմից հավանության արժանացած սովետական առաջարկությունները զինաթափման համաշխարհային կոնֆերանս գումարելու, միջազգային հարաբերություններում ուժ չգործադրելու և առհավետ միջուկային զենքն արգելելու մասին) արտացոլում է մարդկության խաղաղասեր ուժերի հարաճուն ազդեցությունը համաշխարհային իրադրության վրա։

Երկու հակադիր սոցիալական սիստեմների արդյունավետ համագործակցության անհրաժեշտ պայմաններից մեկը պատերազմի բոլոր օջախների վերացումն է։ Այս տեսակետից սկզբունքային նշանակություն ունի ամերիկյան իմպերիալիզմի պարտությունը Վիետնամում, որը ցույց տվեց միջազգային հակասությունները զինված բռնությամբ իրականացնելու ռեակցիոն քաղաքականության ձախողման անխուսափելիությունը։

Սոցիալիզմի ու կապիտալիզմի հակամարտության արդի էտապում հակաիմպերիալիստական և հակամիլիտարիստական պայքարի շատ հարցեր լուծվում են երկու հակադիր սիստեմների տնտեսական խաղաղ մրցության ոլորտում։ Վ. Ի. Լենինը ընդգծում էր, որ ներկայումս տնտեսության ասպարեզ է տեղափոխված պայքարը համաշխարհային մասշտաբով, ուր ըստ էության որոշվում է կապիտալիզմի նկատմամբ վերջնական հաղթանակի հասնելու դասակարգային ստրատեգիական խնդիրը։ Կլուծենք մենք այդ խնդիրը, այն ժամանակ մենք կշահենք միջազգային մասշտաբով և վերջնականապես։ Այս առումով մեծ է այնպիսի գործոնների նշանակությունը սոցիալիստական երկրների ներքաղաքական կյանքում, ինչպես սոցիալիզմի էության մեջ թաքնըված նյութական հնարավորությունների հմուտ և կշռադատված օգտագործումը, արտադրաուժերի համակողմանի զարգացումն ապահովող գիտա-հիմնավոր և արգասավոր եղանակների ու մեթոդների ստեղծագործական կիրառությունը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումների անշեղ ներդրումը։

Ընդգծելով Սովետական Միության արտաքին քաղաքական ստրատեգիայի դասակարգային, ինտերնացիոնալիստական և հումանիստական բնույթը՝ Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ կազմավորման 50-ամյա հոբելյանին նվիրված հանդիսավոր նիստում ասաց. «ՍՄԿԿ-ն ելել և ելնում է այն բանից, որ երկու սիստեմների՝ կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների, դասակարգային պայքարը էկոնոմիկայի, քաղաքականության և, իհարկե, գաղափարախոսության ոլորտում կշարունակվի։ Այլ կերպ չի էլ կարող լինել, որովհետև սոցիալիզմի և կապիտալիզմի աշխարհայացքը և դասակարգային նպատակները հակադիր և անհաշտ են։ Բայց մենք կձգտենք այն բանին, որ պատմականորեն անխուսափելի այդ պայքարը մտնի այնպիսի հունի մեջ, որը չսպառնա պատերազմներով, վտանգավոր կոնֆլիկտներով, սպառազինությունների չվերահսկվող մրցավազքով։ Դա հսկայական օգուտ կլինի ամբողջ աշխարհի խաղաղության գործի համար, բոլոր ժողովուրդների, բոլոր պետությունների շահերի համար» (ՍՍՀՄ կազմավորման հիսնամյակի մասին, 1973, էջ 64)։

Այսպիսով, հասարակության կյանքից պատերազմները վերացնելու ռեալ հնարավորությունն օրինաչափորեն գոյավորվում է կապիտալիզմից սոցիալիզմին անցման պատմական դարաշրջանում։ Այդ խնդրի կենսագործումը թռիչք է պատերազմներից դեպի հարատև խաղաղություն, միջպետական զինված բախումների վիճակից դեպի խաղաղ գոյակցություն, որն իր մեջ ամփոփում է ռեալիզմ, բանականություն և հումանիզմ։

# ՀԵՐՈՍՈՒԹՅԱՆ ԸՄԲՌՆՄԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՍՈՑԻՈԼՈԳԻԱԿԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐՈՒՄ

ՆԵԼԼԻ ԳԱԴՈՒԿՅԱՆ

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության շնորհիվ մեր երկրում ծնունդ առավ նոր, սովետական մարդը, որին վիճակված է ստեղծել ամենաարդարացի հասարակությունը:*

*Կոմունիստական շինարարությունը համաժողովրդական ստեղծագործական պրոցես է, որին պատմության մեջ առաջին անգամ գիտակցորեն մասնակցում են հեղափոխական պայքարի, աշխատանքային սխրագործությունների, զանգվածային աննախընթաց հերոսությունների մեծ ու փառավոր ուղի անցած միլիոնները:*

*Կյանքը, կոմունիստական շինարարության առօրյան առաջին պլան են մղում մասսայական հերոսության պրոբլեմները, որոնց ուսումնասիրությունը, վերլուծությունը և ընդհանրացումը մարքսիստական փիլիսոփայության և սոցիոլոգիայի խնդիրներից մեկն է:*

*Գիտության համար հերոսության պրոբլեմը նոր չէ: Այն վաղուց է գրավել մտածողների ուշադրությունը: Իրավունքի տեսաբանները ձգտել են բացահայտել հերոս անհատի դերը պետական կյանքում, բարոյագետները՝ նրա ազդեցությունը հասարակության բարոյական կյանքի վրա, հոգեբանները՝ հերոս անհատի ձևավորման առանձնահատկությունները և այլն: Հերոսության հասկացությունը հետազոտելիս, անկախ այն բանից, թե հետազոտողը հասարակական կեցության որ բնագավառն է ներկայացնում, ամենից առաջ պետք է պատասխանի այն հարցին, թե ինչպե՞ս է ձևավորվել այդ հասկացությունը: Նման մոտեցումը մեզ հնարավորություն է տալիս պարզաբանելու, թե ինչո՞ւ տարբեր պատմական ժամանակաշրջաններում հերոսության հասկացության մեկնաբանությունը եղել է տարբեր: Դա պայմանավորված է ոչ միայն հասարակական ֆորմացիաների զարգացման առանձնահատուկ օրենքների գործողությամբ, որոնք նեղացրել կամ ընդլայնել են հերոսության դրսևորման անհրաժեշտ պայմանների շրջանակները, այլև տարբեր մտածողների հայացքների առանձնահատկությամբ, ինչպես և հերոսության հասկացության բարդ փոխակերպումներով, հասարակական գիտության տարբեր մարզերում դրա ըմբռնման և հերոսության իսկ փոփոխման հետևանքով:*

*Հերոսության ըմբռնմանն առաջին անգամ հանդիպում ենք անտիկ դիցաբանության մեջ. մարդիկ հավերժացրել են իրական կամ դիցաբանական*



*(մտացածին) անձանց, աստվածացրել են Հերակլեսին, Պրոմեթեոսին, Վահագնին և ուրիշների, որոնք նրանց կարծիքով հանուն մարդու կատարել են մեծ սխրագործություններ:*

*Մասնավոր սեփականության առաջացմանը զուգընթաց ծագեց տիրապետող մարդկանց՝ թագավորների, զորավարների պաշտամունքը: Հենց այդ ժամանակ աստվածացվեցին միապետները՝ Ալեքսանդր Մակեդոնացին, Ներոնը, Տիգրան Մեծը, Արտաշեսը և այլոք: Ի դեպ, սոցիալական անհավասարության առաջացումը, անձի իրավազրկումը և ճնշումը ուղեկցվեցին ստրուկների և ճորտերի ազատագրական պայքարով: Հանդես եկան իրական, ըստ որում, նոր տիպի հերոսներ, այսինքն այնպիսի մարդիկ, ովքեր գլխավորում էին կեղեքվողների ազատագրական պայքարը, իրենց ամբողջովին նվիրում այդ գործին: Այդպիսի հերոսներից են եղել Սպարտակը, Բաբեկը, Ստեփան Ռազինը, Պուգաչովը և ուրիշներ: Բայց փիլիսոփայության և պաշտոնական գրականության մեջ այդպիսի հերոսությունը և այդպիսի հերոսներն իրենց անհրաժեշտ արտացոլումը չեն գտել:*

*Մեր դարաշրջանի սկզբում շատ երկրներում տիրապետող քրիստոնեությունը ոչ միայն անտեսում էր ազատագրական պայքարի հերոսությունը, այլև դրան հակադրում, եթե կարելի է այսպես ասել՝ քրիստոնեական բնույթի հերոսությունը: Դա թույլերի, ճնշված մարդկանց հաղթանակին չհավատացողների հերոսությունն էր, որոնք ոչ թե պայքարում են, այլ դիմում սեփական անձը զոհաբերելու, ինքնախարազանման պասսիվ միջոցների և այլն: Դա ըստ էության հենց քրիստոնեական իմաստով ըմբռնված հերոսությունն է՝ հիմնված տանջահար Քրիստոսի պաշտամունքի վրա:*

*Բուրժուական հասարակական հարաբերությունների ձևավորումը հետագա հիմքեր ստեղծեց անձի ազատագրության համար: Դա բացատրվում է նրանով, որ կապիտալիստական նոր արտադրաեղանակին անհրաժեշտ էին իրավաբանորեն ազատ մարդիկ, որոնց կարելի լիներ վարձել և օգտագործել շահույթներ ձեռք բերելու համար: Ահա թե ինչու բուրժուական հենց առաջին մտածողները հանդես եկան՝ «ազատություն և հավասարություն» լոզունգով: Չնայած այդ հավասարությունը լոկ մասնավոր ակտիվության դրսևորման հավասարություն էր, իսկ ազատությունը՝ լոկ մասնավոր սեփականություն ունենալու ազատություն, այնուամենայնիվ դրանց հաստատման համար պայքարն անձի ազատագրության նպատակով որոշակի առաջընթաց դեր խաղաց: Արևմտաեվրոպական երկրների համար այդ շրջադարձային ժամանակաշրջանում բուրժուազիայի գաղափարախոսները, հակառակ միջնադարյան ճգնավորական բարոյականության, առաջ քաշեցին ուժեղ, ամբողջական անձի պաշտամունքը, անձ, որը բազմաթիվ տարերային ապստամբությունների բոցերում զենքը ձեռքին խարխլում էր ազնվականների և պաշտոնական եկեղեցու ատելի տիրապետության հիմքերը: Խոսելով բուրժուական հասարակության մասին, Մարքսը գրել է. «...որքան էլ քիչ հերոսական է բուրժուական հասարակությունը, բայց և այնպես նրա լույս աշխարհ գալու համար պահանջվեցին հերոսություն, անձնազոհություն, տեռոր, քաղաքացիական պատերազմ և ժողովուրդների ճակատամարտեր» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. I, 1950 թ., էջ 281—282):*

*Շնորհիվ այն պատճառների, որ բուրժուազիայի գաղափարախոսները նրա ձևավորման ժամանակաշրջանում «ամեն բան էին, ինչ կկամենաք, բայց միայն թե ո՛չ բուրժուականորեն սահմանափակ մարդիկ» (Ֆ. Էնգելս, Բնության*

դիալեկտիկա, 1969, էջ 7), նրանց կողմից առաջ քաշված խիզախության, էնտուզիազմի, հերոսության սկզբունքների նշանակությունը, դուրս եկավ տվյալ դարաշրջանի սահմաններից։ Ահա թե ինչու այդ դարաշրջանը «հսկաների կարիք ուներ և հսկաներ էլ ծնեց՝ գիտության, ոգու և բնավորության հսկաներ» (Նույն տեղը, էջ 193)։ Այդպիսի հսկաների վառ ներկայացուցիչն էր Ջորդանո Բրունոն։

Ջշոշափելով Բրունոյի փիլիսոփայական հայացքները, քննարկենք միայն հերոսության նրա հայեցակետը, որը շարադրված է «Հերոսական էնտուզիազմի մասին» աշխատության մեջ։ Բրունոյի բարոյական իդեալը, որը նա անվանում է «հերոսական էնտուզիազմ», «հաստատուն հյուսիսային փոթորիկների և երկնային անբարենպաստության հանդեպ» էնտուզիազմն է, որը ձգտում է արդարության, ճշմարտության, որն ընդունակ է «բոցավառելու իր բանականությունը» և հոգեպես բարձր լինել սովորական մարդկանցից։ «Հերոսական էնտուզիազմ» հասկացության մեջ Բրունոն պարփակում էր գիտությանը նվիրվածությամբ ծառայելու միտքը, մոլորությունների, խավարի դեմ պայքարը՝ հանուն ճշմարտության ու գիտության հաղթանակի։ Այդպիսի էնտուզիաստներին Բրունոն կոչ է անում ընտրել «արժանի ու հերոսական մահը, քան անարժան ու տտոր հաղթանակը» (Дж. Бруно. О героическом энтузиазме. М., 1953, стр. 62)։ Այդ կոչի մեջ ընդգծված է հերոսի բարձր բարոյական պարտքի գաղափարը։ Բրունոն հերոսական պայքարի նման ըմբռնումը պահպանեց նույնիսկ այն ժամանակ, երբ ինքն իսկ ստիպված եղավ ինկվիզիցիայի խարույկների ու զընդանների նահատակը լինելու։

XVII—XVIII դարերի տնտեսական բուռն զարգացման և հեղափոխական փոթորիկների հետ կապված հասարակական պրոբլեմների նկատմամբ աճող հետաքրքրությունը տեսական մտքի առջև հարուցեց հասարակական զարգացման օրինաչափությունների ուսումնասիրության հարցը։

Արդեն XVIII դարի կեսին Տյուրգոն ձևակերպեց համընդհանուր զարգացման միտքը, Վոլտերն արծարծեց գիտելիքների և լուսավորության առաջընթացի գաղափարը։ Երեք տասնամյակ հետո Լեսինգը փորձեց կրոնի զարգացման օրինակով ցույց տալ պատմության առաջընթացը, իսկ Հերդերը շարադրեց հասարակական զարգացման օրենքների պրոբլեմը։

Հասարակական զարգացման օրինաչափությունները բացահայտելու առաջին փորձը կատարեց իտալացի մտածող Ջամ Բատիստա Վիկոն։ Հենց պատմական իրադարձությունների ընթացքի կոնկրետ ուսումնասիրությամբ ու նրա հետ կապված՝ Վիկոն փորձեց ոչ միայն սահմանել հասարակության զարգացման օրենքները, այլև մոտենալ հերոսության պրոբլեմին պատմականության դիրքերից, այն կապել մարդկային քաղաքակրթության զարգացման օրինաչափությունների գաղափարի, բուն իսկ պատմական իրադարձությունների հետ։ Վիկոն պատմական պրոցեսի օրինաչափության սկզբունքը կոնկրետացնում էր հասարակական շրջապտույտի մասին ուսմունքով, որի հետ անխզելիորեն կապված է հերոսության նրա ըմբռնումը։

Այդ տեսության մեջ նա շարադրեց այն գաղափարը, որ բոլոր ազգերի զարգացումը տեղի է ունենում ցիկլերով, որոնք մարդու աճի նման անցնում են երեք էտապ. աստվածների դարաշրջան՝ մարդկության մանկությունը, հերոսների դարաշրջան՝ մարդկության պատանեկությունը և մարդկանց դարաշրջան՝ մարդկության հասունությունը։ Սակայն Վիկոն այդ զարգացումը պատկերում է միանգամայն սխալ, ենթադրելով, որ զարգացումը պատմական շըրջադարձ է, որ հասարակությունը և նրա մշակույթը անցնում են վերելքի ու հասունության աստիճաններ և վերջանում դեգրադացիայի աստիճանով, անկումով, վերադառնալով նախնական վիճակին, որից հետո զարգացման ցիկլը կրկնվում է։



Ջնայած Վիկոյի հասարակական շրջադարձերի տեսությունը գիտական արժեք չի ներկայացնում, սակայն նրանում առաջին անգամ բուրժուական գիտության մեջ տրվում է հերոսության պրոբլեմի սոցիալական վերլուծությունը։ Այնուհետև փորձ է արվում որոշելու նրա տեղը և դերը հասարակության մեջ։ Իր պատմական շրջապտույտի տեսության մեջ Վիկոն կիրառում է այն միտքը, թե հերոսությունը հատուկ է միայն այն դարաշրջանին, որ նա անվանում է «հերոսների դար»։ Վիկոն այն բնութագրում է որպես անձնական կախվածության, թույլ բանականության դարաշրջան, երբ այդ դարաշրջանի փիլիսոփաները հերոսներին էին վերագրում իրենց սեփական գաղափարները՝ «բանական արդարության գաղափարը», «փառքի գաղափարը» և «անմահության ծարավի գաղափարը» (տե՛ս Вико. Основание новой науки, Л., 1940 стр. 290)։ Այդ երեք գաղափարների հետևանքով, գրում է Վիկոն, առաջին մարդկանց հերոսության մասին ստեղծվել է կեղծ պատկերացում, որը չի համապատասխանում իրականությանը։ Հոմերոսյան հերոսների օրինակով, Վիկոն ձգտում է ապացուցել, որ հին ժողովուրդների «բնական հերոսությունը» միացել է «փառքի հերոսությանը», «արիությանը», որ այդ հերոսները ամենևին էլ այնպես բարոյական չեն, ինչպես այդ մասին հայտնում են պատմաբանները։ Այդ բնական հերոսությունը Վիկոն հակադրում է քաղաքացիական հերոսությանը, կապելով այն ոչ թե հունական և հռոմեական հասարակության բարեգործությունների, այլ այդ հասարակությունների կյանքի քաղաքացիական պայմանների հետ, գալով այն հետևության, որ բուրժուական հասարակության մեջ «հերոսությունը իր քաղաքացիական բնույթով անհնար է» (Նույն տեղը, էջ 295)։

Ջկարողանալով բազմակողմանի ուսմունք մշակել հերոսության մասին, Վիկոն այնուամենայնիվ հերոսության պրոբլեմը ձգտում էր կապել պատմական զարգացման օրինաչափությունների հետ։ Ահա թե ինչու Մարքսը տեսնում էր դրանում «հանճարեղության որոշ փայլատակումներ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 30, стр. 512)։

Հերոսության մասին Վիկոյի մտքերը գրավել են լուսավորության ժամանակաշրջանի գաղափարախոսների ուշադրությունը, իսկ նրա մի շարք հայեցակետեր, Եվրոպայի հետհեղափոխական զարգացման պատմական փորձը հաշվի առնելով, բազմակողմանիորեն զարգացվեցին Հեգելի կողմից։ Իրավունքի փիլիսոփայությունը, Ոգու ֆենոմենոլոգիան, Ոգու փիլիսոփայությունը աշխատություններում և գեղագիտության մասին դասախոսություններում Հեգելը հերոսության կատեգորիան վերլուծում է բացարձակ ոգու շարժման ու զարգացման տեսանկյունով։

Բացահայտելով «ժողովրդական ոգու» և համընդհանուր պատմության փոխհարաբերությունը, Հեգելը հանգում է պատմության մեջ անհատի որոշիչ դերի գաղափարին։ Հոչակավոր անձը նա ըմբռնում էր որպես «ժողովրդական ոգու անհատականացված» արտահայտություն, որպես «բացարձակ ոգու» գոյության կոնկրետ պատմաձև, այսինքն՝ ոչ միայն նրա զարգացումը հակադրում

է հասարակությանը, այլև հենց նրա մեջ տեսնում հանճարեղության գաղտնիքի բանական լուծումը։ Եթե հանգամանքների ու միջավայրի ուժով անհատը դառնում է մեծ, հասնում ոչ սովորական ուժի ու բարեգործության, այլ կերպ ասած, եթե նա դառնում է հերոս և գործում հանգամանքներին համապատասխան, հերոսականորեն միաձուլվում միջավայրին, ապա նա աստվածացվում է։ Որպես օրինակ Հեգելը նշում է հունական պատմության հերոսների դերը, երբ առանձին անհատն ստանձնում էր ողջ մարդկային հասարակության պարտականությունները, սեփական ձեռքով ուղղում նրա արատները և իր մեջ մարմնավորում նրա գաղափարները։

Ընդգծելով հերոսական անձի ակտիվ դերը, Հեգելը փորձեց հաղթահարել պատմական ֆատալիզմը, սակայն իդեալիզմի շրջանակներում այդ անել չկարողացավ։ Չնայած դրան, նա առաջադրեց այն կարևոր միտքը, որ հերոսի բարոյական կերպարը որոշվում է միայն քաղաքացիական կյանքի բնույթով, կատարելագործվում հենց հասարակության մեջ և համապատասխանում որոշակի պատմական դարաշրջանի բնույթին։

Հերոսական դարը համեմատելով իր ժամանակաշրջանի հետ, Հեգելը նշում է, որ եթե հերոսական դարում անձը հերոսություն էր կատարում կոլեկտիվի, ցեղի և այլնի առջև իր պատասխանատվության լիակատար գիտակցման զգացումով, ապա իր ժամանակաշրջանում, երբ անհատը դառնում է հասարակական օրգանիզմի մասնիկը, նրա ուսերին չի դրվում հերոսագործությունների բեռը, նա կատարում է հերոսություն՝ «ելնելով իր անձից և իր համար որպես անձի» (Гегель, Соч., т. 12, стр. 192)։ Դրա համար էլ հերոսներ են դառնում կամ թագավորները, կամ ավազակները և կամ էլ՝ ապստամբների ղեկավարները։

Հերոսական անհատների բարոյական հատկությունների և որոշակի պատմական ժամանակաշրջանի հերոսությունների բնույթի փոխադարձ կապի վերաբերյալ հեգելյան այդ դրույթն իր մեջ թաքցնում է շատ կարևոր եզրակացություն այն մասին, որ այդ դարաշրջանի անհետացման հետ վերանում է հերոսության դրսևորման ամեն մի հնարավորություն։ «Պետության մեջ,— եզրակացնում է նա,— այլևս տեղ չկա հերոսներին։ Վերջիններս հանդիպում են միայն ոչ քաղաքակրթված իրադրության ժամանակաշրջանում» (Гегель, Соч., т. 7, стр. 112)։

Հերոսության պրոբլեմի մշակման հարցում Հեգելի վաստակն այն է, որ նա ոչ միայն փորձեց բացահայտել հերոսության պատմական օբյեկտիվ հիմքը, այն կապելով պատմական կեցությանը և հերոսական դարին, այլև ոգու առաջընթաց զարգացման փուլերի հետազոտությամբ փորձեց ի հայտ բերել մարդկանց գիտակցության մեջ հերոսության արտացոլման օրինաչափությունները։

Բուրժուազիայի իշխանության գլուխ անցնելը և կապիտալիզմի հետագա զարգացումը հանգեցրին բուրժուական մտածողների հեղափոխական դիրքերից հեռանալուն։ Այժմ բուրժուազիային անհրաժեշտ էր ցույց տալ իր առավելությունը նախորդ դասակարգի նկատմամբ, մարդկանց ներշնչել այն համոզմունքը, որ հասարակական զարգացումը կախված է ոչ թե ժողովրդի գործունեությունից, այլ էկոնոմիկայի և իշխանության ղեկի մոտ կանգնած մեծ մարդկանց կամքից ու արարքներից, այսինքն՝ հենց կապիտալիստներից։ Ահա հերոսության այդ հայեցակետն սկսեցին մշակել ռոմանտիզմի գաղափա-



րախոսները, որոնք, ի տարբերություն հեգելյան հայեցակետի, հերոսությունը դիտում էին որպես հին աստվածային նախախնամության դրսևորում, որը ոչ միայն որոշում է հերոսության և հերոսական արարքների բնույթը, այլև ողջ մարդկային պատմության զարգացումը։ Այդպիսի հայեցակետ զարգացրեց մասնավորապես գերմանական հետադեմ քաղքենիության գաղափարախոս Ա. Շոպենհաուերը, որի տեսությունը հիմք հանդիսացավ ժամանակակից իռացիոնալիստական գաղափարախոսության համար։ Հերոսականը համարելով աստվածային նախախնամության արտահայտություն, ռոմանտիզմի գաղափարախոսները պատմությունը դիտում էին ոչ թե որպես ժողովրդական զանգվածների, այլ առանձին հռչակավոր անհատների ու հերոսների ստեղծագործություն։

Նման հայեցակետով հանդես եկավ մասնավորապես անգլիացի իդեալիստ փիլիսոփա Թովմաս Կառլեյլը, որն իր Պատմության մեջ հերոսների և հերոսության մասին գրքում փորձում էր հիմնավորել հերոսների՝ պատմական պրոցեսը կերտողների պաշտամունքը, ինչպես նշել է Էնգելսը «որպես ներկայի անհուսալիությունից միակ փրկություն, որպես նոր կրոն» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 7, стр. 269)։

Հերոսական անհատը՝ մեծ մարդը, ըստ Կառլեյլի, դա աստվածային գաղափարների ներկայացուցիչն է, իսկ մյուսները, մասնավորապես բանվորներն ու գյուղացիները, պատմության իրական ստեղծողները՝ ամբոխն են, որ պետք է հետևի հերոսներին, խոնարհվի և հպատակվի նրանց։

Հերոսության Կառլեյլի հայեցակետը բուրժուազիայի ռեակցիան էր պրոլետարիատի հանդես գալու նկատմամբ, պրոլետարիատ, որը պատմական զարգացման մեջ նոր, հզոր ուժ է։ Ըստ էության հերոսության հակաժողովրդական այսպիսի հայեցակետ զարգացրին նաև մանրբուրժուական փիլիսոփայության ու սոցիոլոգիայի ներկայացուցիչները։ Այդպիսի մոտեցման վառ օրինակ է ֆրանսիացի փիլիսոփա Արման Ռենոյի Հերոսություն գիրքը, որում Ռենոն գրում է, որ «պատմությունը պետք է ժողովրդական զանգվածներին վերաբերի լիակատար անաչառությամբ, այնպես, ինչպես առանձին հռչակավոր մարդկանց նկատմամբ» (А. Рено. Героизм. СПб., 1896, стр. 12), որ ոչ միայն հերոսներն են ունակ լինելու հերոս, նրանց մոտ այն դրսևորվում է միայն ավելի ուժեղ ու ցայտուն։

Ժամանակակից բուրժուազիան այլ կերպ չի էլ կարող մտածել։ Այժմ, երբ հասունացել է ամբողջ կապիտալիստական համակարգի ընդհանուր ճգնաժամը, երբ օրակարգում դրված է շահագործողական կարգի վերացման հարցն ընդհանրապես, բուրժուական գաղափարախոսներին ոչինչ չի մնում անելու, քան «մեծ» մարդկանց շահագործողների, ժամանակակից կապիտալիստական էկոնոմիկայի տերերի գովերգումն ու մեծարումը։ Ի տարբերություն այդ հայեցակետի, XIX դարի Ռուսաստանի առաջավոր ուժերը՝ դեկաբրիստները և հատկապես հեղափոխական դեմոկրատները, զարգացրին այլ տեսակետ, թեև դեկաբրիստները հերոսին դիտում էին իրականությունից, ժողովրդից կտրված և ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, նրանք «սարսափելի հեռու էին ժողովրդից»։ Հեղափոխական դեմոկրատներին հաջողվեց հաղթահարել դեկաբրիստների այդ սահմանափակությունը և մի քայլ առաջ անցնել պատմության մեջ հերոս անհատների դերի գիտական ըմբռնման մշակման մեջ։ «Նոր պատմության մեջ,— գրել է Չեռնիշևսկին,— անզոր են դառնում այն մարդիկ, ովքեր. . ժողովուրդ-

ների ողջ մասսայի ինքնուրույն գործունեության մեջ իրենց նախաձեռնության համար օգնություն չեն փնտրում (Н. Г. Чернышевский. Полн. собр. соч., М., 1935, т. 11, стр. 288)։

Հեղափոխական դեմոկրատների խորին համոզմունքով, անհատների, հերոսների, հերոսական գործունեության հաջողությունը պայմանավորված է ժողովրդական զանգվածների աջակցությամբ։ Այդ մտքին էին նաև հայ հեղափոխական դեմոկրատները, որոնց գաղափարների վառ արտահայտիչը Մ. Նալբանդյանն էր։ Նրա կարծիքով, մարդն ամենից առաջ մարտիկ է, արի, հայրենասեր։ Հերոսի հիանալի բնութագրություն է Նալբանդյանի երդումը, նրա վճռականությունն իր ողջ կյանքում պայքարելու հայ աշխատավորի ոտնահարված իրավունքների համար։ Եվ այս նպատակով «...չէ պիտո ընկրկինք ոչ բանտի և ոչ աքսորի առջև, ոչ միայն բանիվ և գրչով, այլև զենքով և արյունով, եթե մի օր արժանի լինինք զենք առնելու մեր ձեռքը և մինչև այժմ քարոզած ազատությունը նվիրել և սրբել մեր արյունով» (Մ. Նալբանդյան, Երկերի լիակատար ժողովածու, Երևան, 1965, т. 2, стр. 87)։

Հերոսության պրոբլեմը, պատմության մեջ անհատի դերի հարցը եղել է նարոդնիկության գաղափարախոսության կենտրոնական հարցերից մեկը։

Հեղափոխական նարոդնիկները մշակել են հերոսության իրենց տեսությունը։ Այդ տեսության համաձայն ժողովուրդը անտարբեր, պասսիվ ամբոխ է, որի շարժիչը միտքն է, քննադատորեն մտածող անհատը՝ հերոսը։ Մարդկության պրոցեսը, գրում է Պ. Լավրովը, «...բացարձակապես վարում են քննադատորեն մտածող անձինք, առանց նրանց այն անկասկած անհնար է, առանց նրանց ձգտումների տարածել այն չափազանց խախուտ է» (П. Л. Лавров. Избр. произвед. М., 1965, т. 2, стр. 87)։

Հետագայում նարոդնիկությունն ավելի ընդգծեց ժողովրդական զանգվածների այդ թերագնահատումը և եկավ այն եզրակացության, որ անհատ-հերոսները կարող են որոշել մասսաների և ժողովուրդների բախտը։ Նարոդնիկության գաղափարախոսները, որպես սուբյեկտիվ իդեալիստներ, չխորացան պատմական օրինաչափությունների էության մեջ, ուստի և չկարողացան տարբերել հասարակության բարդ տնտեսական կառուցվածքի մեջ անհատի և ժողովրդական զանգվածների ունեցած դերը։ Նրանք անկարող եղան պատմական իրադարձությունները մեկնաբանել հասարակական կեցությունից ելնելով, չհասկացան նյութական բարիքների արտադրության, հետևաբար և ժողովրդական զանգվածների վճռական դերը պատմության մեջ։

Հերոսության գիտական տեսության մշակումը կապվում է մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների անվան հետ։ Նրանք պատմության իրենց ստեղծած մատերիալիստական ըմբռնման հիման վրա բացահայտեցին հերոսության հասարակական-պատմական բնույթը, ցույց տվեցին, որ ինչպես անհատական, այնպես էլ զանգվածային հերոսությունը ոչ թե անպտուղ վերացականություն է, երևակայության ծնունդ կամ էլ աշխարհի մեծամեծների ցանկության արգասիք, այլ այն որոշվում է պատմական խնդիրների մեծությամբ, որոնք պատմության հեղափոխական զարգացման ընթացքում ծառանում են անհատների ու ժողովուրդների առջև։

Բանվոր դասակարգի պատմական ասպարեզ իջնելով, փոխվեցին իսկական հերոսության ծավալաչափերն ու բնույթը, նրա հասարակական բովանդակությունը։ Հերոսության նոր որակը պայմանավորված էր իրական, մեծ,



համամարդկային խնդիրներով, որոնք դրված էին հեղափոխական դասակարգի առջև։ Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ բանվոր դասակարգը պայքարի ելավ տապալելու ցարիզմը. հերոսությունը վերածվեց զանգվածային երևույթի։ Անձնազոհ հերոսության օրինակի մարմնավորում էին 1905—1907 թթ. ռուսական հեղափոխության և հատկապես Հոկտեմբերյան հեղափոխության մարտիկները։

Հոկտեմբերյան հեղափոխությունը համաշխարհային պատմության մեջ հանդիսացավ զանգվածային հերոսության մեծագույն արտահայտությունը, որովհետև ի տարբերություն հասարակական շարժմանը հայտնի այլ հեղափոխությունների, նրա առջև կանգնած էր պատմականորեն հասունացած մեծագույն հումանիստական առաքելությունը։ Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության աննախադեպ հերոսության մասին, որպես հեղափոխության հաղթանակի կարևոր գործոնի, որպես մեր հաջողությունների էական պայմանի մասին։ Դրանով իսկ նա ընդլայնում է հերոսության հասկացության շրջանակները, այն ձերբազատում վերացականության պատրանքներից։ Զանգվածային հերոսությունը կապված է մեր առաջավոր սոցիալիստական հասարակության բնույթի, կոմունիստական գաղափարախոսության սկզբունքների հետ։

Բնականաբար, հերոսության այդ նոր տիպն իր հետ բերել է դրա գնահատման նոր չափանիշներ։ Մեր երկիրը գիտե քաղաքացիական կռիվների ու Հայրենական մեծ պատերազմի, ինդուստրացման ու կոլեկտիվացման ժամանակաշրջանի հերոսների։ Ժողովուրդը երբեք չի մոռանա խամ ու խոպան հողերի յուրացման, Բրատսկի հիդրոկայանի, Արկտիկայի, Տիեզերքի նվաճման հերոսներին։

Զանգվածային հերոսությունների շարքում «ամենահամառ, ամենադժվար հերոսությունը» Վ. Ի. Լենինը համարում է «առանձին պոռթկումի» ու «առօրյա աշխատանքի» հերոսությունը։ Զինվորական հերոսությունները հնչեղ են, հաճախ ձեռք են բերվում մարդու կյանքի գնով, նրա թափած արյունը վկայում է հերոսի քաջարի վճռի մասին։ Խաղաղ օրերի հերոսություններն արտաքինից համեստ են, որոնցում հաճախ բացակայում են ցուցադրական կողմը, տագնապի ղողանջը, դրանք մարդուց պահանջում են բարձր գիտակցականություն, բարոյակամային հատկանիշներ, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք։ Այդպիսի հերոսներ ծնում է միմիայն կոմունիստական շինարարությունը։ Սոցիալիզմի օրոք աշխատանքային հերոսության դերի անշեղ բարձրացումը պայմանավորված է մարդկանց միջև հաստատված որակապես նոր տեսակի հարաբերությունների ողջ համակարգով։ Ահա թե ինչու մեր հասարակական-քաղաքական կարգը, սոցիալիստական մշակույթն ու գաղափարախոսությունը ծառայում են որպես զանգվածային հերոսության նոր ակունքներ։ «Բարձր կազմակերպված աշխատանքի եռանդը՝ բազմապատկված իր երկրի, սոցիալիստական հայրենիքի սիրո հետ,— նշում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը,— ընդունակ է հրաշքներ գործելու։ Մեզանում այդպես է եղել առաջին հնգամյակների տարիներին, Հայրենական մեծ պատերազմի, հետպատերազմյան վերանորոգման և խաղաղ շինարարության տարիներին, մասսաների հերոսությամբ և աշխատանքային խանդավառությամբ լի տարիներին» (ՍՍՀՄ կազմավորման հիսնամյակի մասին, Ե., 1973, էջ 79)։ Զանգվածային հերոսությունը սոցիալիզմի օրինաչափ պրոցեսն է, որը արագացնում է կոմունիստական հասարակարգի կառուցման տեմպերը։

# ԵՐԿԱՐԱԺԱՄԿԵՏ ԿԱՆԽՈՐՈՇՈՒՄԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԷՏԱՊՆ Է

**ԵԼԵՆԱ ՀԱԿՈԲՅԱՆ**
Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու

*Սոցիալիստական գյուղատնտեսության առավելություններից մեկը պլանային զարգացումն է։ Սովետական պետության առաջին իսկ տարիներին Վ. Ի. Լենինը, մշակելով սոցիալիստական պլանավորման սկզբունքները, մատնանշեց երկարաժամկետ հեռանկարային պլաններ կազմելու անհրաժեշտությունը։ Դրանցից առաջինը երկրի էլեկտրիֆիկացիայի պլանն էր՝ ԳՈԷԼՌՈՆ։*

*Պլանավորման օբյեկտիվ անհրաժեշտությունը բխում է մեր երկրի ժողովրդատնտեսության պլանաչափ համամասնական զարգացման տնտեսական օրենքից։ Ժողովրդական տնտեսության զարգացման պլանայնությունը հնարավորություն է ընձեռում արդյունավետ կառավարել էկոնոմիկան համապետական մասշտաբներով, սահմանել համապատասխան համամասնություններ, նպատակահարմար տեղադրել արտադրուժերը, ապահովել նյութական, աշխատանքային և ֆինանսական միջոցների տնտեսումը։*

*Հաշվի առնելով այդ, վերջին ժամանակներս առանձնակի ուշադրություն է նվիրվում երկրի ժողովրդատնտեսության զարգացման առավել երկարաժամկետ՝ ավելի քան 10—15 տարվա, կանխատեսումներին։ Դեռևս 1965 թ. մարտին, ՍՍՀՄ պետպլանի նիստում Ա. Ն. Կոսիգինն ընդգծեց կանխատեսումների կարևոր նշանակությունը։ Կարո՞ղ ենք արդյոք ժողովրդատնտեսական նախագծումներում անտեսել ապագային վերաբերող հիմնավորված կանխատեսումները։ Ո՛չ, չենք կարող,— ասել է նա։— Կանխատեսումը մի գիտություն է, որը պետք է ընդգրկի գիտական ու տեխնիկական բոլոր նվաճումները և առաջադիմական գաղափարները։ Այլապես պլանը չի համապատասխանի կուսակցության ու կառավարության առաջադրած խնդիրներին։ Ուստի, գիտական կանխատեսումների քննարկումը պետք է նախորդի ժողովրդատնտեսության ճյուղերի զարգացման պլանների մշակմանը (տե՛ս* «Плановое хозяйство», *№ 4, 1965,* стр. *4)։*

*Դրա անհրաժեշտության մասին ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևը պարզորոշ ասաց. «Մենք ավելի ու ավելի հաճախակի ենք բախվում այն*



*բանի հետ, որ տնտեսական ու սոցիալ-քաղաքական կարևորագույն խնդիրների իրագործումը պահանջում է ո՛չ թե հինգ տարի, այլ անհամեմատ երկար ժամանակ։ Այս կապակցությամբ ծառանում է ժողովրդական տնտեսության զարգացման այնպիսի հեռանկարային երկարաժամկետ պլանավորման հարցը, որը հիմնվեր երկրի բնակչության աճի, ժողովրդական տնտեսության պահանջմունքների, գիտատեխնիկական առաջընթացի կանխատեսումների վրա։ Այդպիսի մոտեցման դեպքում, որը կապահովեր երկարաժամկետ պլանների մշտական համաձայնեցումը հնգամյա ու տարեկան պլանների հետ, կարող են ավելի արդյունավետ լուծվել մեր զարգացման արմատական պրոբլեմները» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 88)։*

*Ելնելով այդ դրույթներից, կանխատեսումը պետք է դիտել որպես ժողովրդական տնտեսության, այդ թվում գյուղատնտեսության, զարգացման առավել նպատակահարմար ուղղությունների ու հնարավոր տարբերակների անհրաժեշտ նախապլանային որոնում։*

*Անցյալ ժամանակաշրջանում կազմվել են ինը հնգամյա պլաններ, դրանցից յուրաքանչյուրը նոր փուլ է եղել սոցիալիստական տնտեսության զարգացման գործում, ավելի ու ավելի բարդ ու մասշտաբային խնդիրներ է առաջադրել։ Ընթացիկ հնգամյակի գլխավոր խնդիրը, որը սահմանված է երկրի ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. դիրեկտիվներում, ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակի զգալի վերելքն է՝ արտադրության զարգացման բարձր տեմպերի, դրա արդյունավետության ավելացման, գիտատեխնիկական առաջընթացի, աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա։*

*Ժողովրդական տնտեսության և, մասնավորապես, գյուղատնտեսության արտադրուժերի զարգացման ավելի երկարատև կանխատեսման հիմքում պետք է դրվեն,— ինչպես երկրի արհեստակցական միությունների XV համագումարում մատնանշել է Լ. Ի. Բրեժնևը,— գիտականորեն հիմնավորված հաշվարկներ, տնտեսավարման ու պլանավորման առավել արդիական մեթոդներ, կառավարումը կազմակերպելու ձևեր ու համակարգեր։*

*Գյուղատնտեսության զարգացման երկարաժամկետ կանխատեսումը կոչված է բացահայտելու գյուղատնտեսության արտադրուժերի հեռանկարային աճի հիմնական ուղղություններն ու եղանակները՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրներին համապատասխան։ Այն ելնում է բնակչության ու ժողովրդական տնտեսության պահանջները լրիվ բավարարելու վերաբերյալ ՍՄԿԿ ծրագրային դրույթից։*

*Գյուղատնտեսության արտադրության զարգացման տեմպերը որոշելիս հնարավոր են երկու ժամանակաշրջան։ Առաջինում գյուղատնտեսական առանձին մթերքների արտադրության մակարդակը կարող է դեռևս բավարար չլինել բնակչության և համապատասխան արդյունաբերության պահանջմունքները լիովին բավարարելու համար։ Հետևաբար, այդ ժամանակաշրջանում պետք է արագացվի գյուղատնտեսական արտադրության և արդյունաբերության համապատասխան ճյուղերի զարգացումը՝ ապահովելու բնակչության պահանջմունքը սննդամթերքների նկատմամբ, հաշվի առնելով նրա թվի աճը, սննդամթերքների գիտականորեն մշակված նորմաներն ու կառուցվածքը։ Երկրորդ ժամանակաշրջանում արտադրության զարգացման տեմպերը մի որոշ չափով ցածր կլինեն։ Այդ հանգամանքը պայմանավորված է գյուղատնտեսական արտադրու-*

թյան բարձր մակարդակով։ Ուստի դրա հետագա զարգացումը կորոշվի հիմնականում բնակչության աճին համամասնորեն և գյուղատնտեսական որոշ մթերքների ու արտադրանքների արտածման և երկրի միջազգային կապերի մեծացման նպատակահարմարությամբ։

Հայտնի է, որ գյուղատնտեսությունը, լինելով ժողովրդական տնտեսության ճյուղերից մեկը, իր հերթին կազմված է առանձին ճյուղերից ու ենթաճյուղերից։ Գյուղատնտեսության այդ բաղադրամասերն օրգանապես կապված են միմյանց։ Ուստի, չի կարելի առանձին ճյուղերի զարգացումը կանխատեսել իրարից անկախ։ Վ. Ի. Լենինը մատնանշում էր. «Արտադրության առանձին ճյուղերի բոլոր պլանները պետք է խիստ կերպով համաձայնեցված, կապակցված լինեն միմյանց հետ և միասին կազմեն այն միասնական տնտեսական պլանը, որի կարիքն այնքան զգում ենք մենք» (Երկեր, հ. 31, էջ 648)։ Այս միտքն ամբողջությամբ վերաբերում է նաև գյուղատնտեսությանը, դրա առանձին ճյուղերի պլանավորմանը։

Գյուղատնտեսության զարգացման կանխատեսմանը պետք է նախորդեն մի շարք այլ, օրինակ, բնական պաշարների, գիտատեխնիկական բնույթի կանխատեսումներ։ Գյուղատնտեսության զարգացման առաջընթացի կարևոր տարրը բնակչության հետագա թվի կանխատեսումն է։

Հայտնի է, որ կանխատեսելիս մի շարք մեթոդներ են կիրառվում։ Դրանցից են տարածման (էքստրապոլյացիոն), հաշվե-կառուցվածքային և հաշվեկշռային մեթոդները։

Ինչպես հայտնի է, տարածման մեթոդը խարսխվում է գոյություն ունեցող տենդենցների վրա, ելնում առկա բազիսից։ Սակայն դա կանխատեսման քանակական և զուտ ձևական մեթոդ է, որը հաշվի չի առնում պատճառների ու հետևանքների փոխադարձ կապը։ Գյուղատնտեսության մեջ կանխատեսումներ անելիս այդ մեթոդի կիրառությունը ցույց տվեց նրա անհիմն լինելը։ Օրինակ, մեր հանրապետությունում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները 12 տարվա ընթացքում (1960—1972) նվազել են 36, իսկ ամբողջ ցանքատարածությունը՝ 15 տոկոսով։ Հանրապետությունում լիովին հնարավոր է, համապատասխան միջոցառումներով, ընդհանուր ցանքատարածություններում կրկին շրջանառության մեջ դնել վարելահողերի մի մասը, որոնք վերջին 20 տարում զանազան պատճառներով (հատկապես էրոզիայի) դուրս են գրվել։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, անասունների կաթնատվությունը որոշելիս, տարածման մեթոդի կուրորեն կիրառումը նույնպես չի ապահովում պլանավորման արդի խնդիրների լուծումը։ Այսպես, խաղողի բերքատվությունը հանրապետությունում 15 տարվա ընթացքում (1961—1975) կավելանա 20, մրգինը՝ 6,8 տոկոսով։ Տարածման պայմաններում կանխատեսվող ժամանակաշրջանի վերջին խաղողի բերքատվությունը հեկտարից կկազմի 95, մրգինը՝ 56 ցենտներ։ Մեր կարծիքով, արտադրության ինտենսիվացմամբ, տեխնոլոգիական պրոցեսների բարելավմամբ, գյուղատնտեսության առաջավորների փորձի արմատավորմամբ հնարավոր է ավելի բարձր բերք ստանալ։

Գյուղատնտեսության հեռանկարային կանխատեսումներում, մեր կարծիքով, առավել ընդունելի է հաշվարկա-կառուցվածքային մեթոդը՝ հաշվեկշռայինի հետ կապակցված։ Ընդ որում, հնարավոր է մշակումների հիմքում դնել գյուղատնտեսության բնագավառում կատարված քանակական և որակական



փոփոխությունների ամբողջ կոմպլեքսը, գիտատեխնիկական առաջընթացը, պրակտիկայի նվաճումները։ Այդ մեթոդը ելնում է նաև գյուղատնտեսական արտադրության այն ճյուղերի ըստ ամենայնի զարգացման խնդիրներից, որոնք պայմանավորում են հանրապետության տեղը ողջ երկրում աշխատանքի հասարակական բաժանման մեջ։ Այդ մեթոդով կանխատեսելիս ելակետային տվյալներ պետք է ծառայեն արտադրության և սպառման հաշվեկշռային հաշվարկումների արդյունքները։ Տվյալ դեպքում հիմք է ընդունվում ո՛չ թե առաջարկությունը, այլ պահանջարկը, այսինքն՝ կանխատեսման սկզբունքն է՝ ծախս-եկամուտ-ծախս ձևակերպումը։ Տվյալ դեպքում լիովին կբացահայտվի գյուղատնտեսական արտադրանքի յուրաքանչյուր տեսակի նկատմամբ եղած պահանջմունքը։ Հանրապետության բնակչությունը կապահովվի սննդի գիտականորեն հիմնավորված նորմաներով, արդյունաբերությունը՝ գյուղատնտեսական հումքով. կմեծանան նաև միջհանրապետական կապերը։

Հանրապետության գյուղատնտեսության զարգացումը կանխատեսելիս պետք է հաշվի առնել եղած մասնագիտացումն է՛լ ավելի խորացնելու, հանրապետության և առանձին գոտիների գյուղատնտեսության առջև ծառացած խնդիրները կատարելու անհրաժեշտությունը։ Դրանք են՝ տեղական արտադրության հաշվին հանրապետության բնակչությանը լիովին ապահովել նվազ փոխադրելի սննդամթերքներով՝ բանջարեղենով, կաթով և անարատ կաթնամթերքով, կարտոֆիլով, մրգով, բոստանային կուլտուրաներով, ձվով, ընդլայնել հանրապետության սննդարդյունաբերության առաջատար ճյուղերի՝ գինու-կոնյակի և պահածոների հումքային բազան, երկրի արդյունաբերական կենտրոնների բնակչությանը մատակարարելու համար ավելացնել ընդհանուր-միութենական ֆոնդին հատկացվող հարավային տեսակի բանջարեղենի և մրգերի (խաղողի, դեղձի, լոլիկի և այլն) մատակարարումները։

Բնակչության պահանջմունքները որոշելիս անհրաժեշտ է հաշվի առնել սննդի գիտականորեն հիմնավորված նորմաները։ Վերջին տարիներին հանրապետության բնակչության սննդի կառուցվածքում որոշակի դրական տեղաշարժեր կատարվեցին։ Այսպես, ալյուրի փոխադրած բոլոր հացամթերքների սպառումը 1965 թ. կազմել է (բնակչության մեկ շնչի հաշվով) միջինը 160 կգ, 1970-ին՝ 154, իսկ 1975-ին՝ նախատեսված է 145 կգ։ Ընդ որում, 5 տարվա ընթացքում մսի սպառումն ավելացել է 7 կգ (նախատեսվում է 1975 թ. ավելացնել ևս 7 կգ), բանջարա-բոստանային կուլտուրաներինը՝ 74-ից կհասնի մինչև 101 կգ, կաթնամթերքներինը՝ 271—324 կգ, ավելացել է նաև զանազան մրգերի ու ձվի սպառումը։ Սննդի կառուցվածքի բարելավմանը նպաստեց ինչպես արտադրության աճը, այնպես էլ ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացումը։ Այդ պրոցեսը կշարունակվի նաև հետագայում։

Ներկայումս ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի սննդի ինստիտուտը կանխատեսվող ժամանակաշրջանի համար մշակել է սննդի գիտականորեն հիմնավորված նորմաներ։ Սակայն, ելնելով հանրապետության բնատնտեսական կոնկրետ պայմաններից և բնակչության սովորույթներից, բացառված չէ որոշ ճշտումների հնարավորությունը։ Սննդի նորմաների սահմանումը, ըստ էության, հիմնական միջոցներից մեկն է գյուղատնտեսական արտադրության վերաբերմամբ կանխատեսումներ անելիս։

Հանրապետության գյուղատնտեսական արտադրության զարգացման համար վճռական դեր է խաղում ջրատնտեսական շինարարությունը։ Անհրաժեշտ

է ոռոգելի դարձնել ո՛չ միայն բազմամյա տնկարկների, տեխնիկական, բանջարա-բոստանային և հասկավոր կուլտուրաների տարածությունները, այլև խոտհարքների ու արոտավայրերի մի մասը։ Հայաստանում ոռոգելի հողատարածությունները 1971 թ. 266 հազար հեկտար էին. այս հնգամյակում նախատեսված է դրանք ավելացնել ևս 50 հազարով։ Կանխատեսվող ժամանակաշրջանում գյուղատնտեսական հողատարածությունների կառուցվածքում փոփոխություններ են կատարվելու մելիորատիվ աշխատանքներ պահանջող նոր հողատարածությունները յուրացնելու և քաղաքային, արդյունաբերական, ճանապարհային ու այլ շինարարություններին հատկացվող տարածությունների հաշվին։

Հայաստանի գյուղատնտեսությունը զգալի չափով պետք է զարգանա որակական ցուցանիշների աճի և արտադրության կառուցվածքի բարելավման շնորհիվ։ Ելնելով երկրում գոյություն ունեցող հասարակական աշխատանքի բաժանումից և հաշվի առնելով բնատնտեսական պայմաններն ու առաջադրված խնդիրները, արտադրության առաջատար ճյուղերը լինելու են խաղողագործությունը, պտղաբուծությունը, բանջարաբուծությունը, կաթնա-մսատու անասնաբուծությունը։ Զարգանալու են ծխախոտագործությունն ու եթերայուղատու բույսերի մշակությունը։ Միաժամանակ, հաշվի առնելով տեղական հնարավորությունները, հետզհետե ավելանալու է հացահատիկի, մսի, կարտոֆիլի, ձվի, շաքարի ճակնդեղի, բրդի և այլ մթերքների արտադրությունը։

Բուսաբուծական արտադրանքը, բացառությամբ խաղողագործության, պտղաբուծության և բանջարաբուծության, նպատակահարմար է հիմնականում ավելացնել որակական ցուցանիշների, այսինքն՝ բերքատվության աճի, սորտերի բարելավման հաշվին և այլն։

Անասնապահության ասպարեզում առաջիկայում հիմնական շեշտը պետք է դրվի կովերի գլխաքանակի և անասունների մթերատվության աճի՝ կովերի կաթնատվության բարձրացման, հավերի ձվատվության, անասունների գլխաքանակի հաշվով մսի ելքի ավելացման վրա և այլն։ Անասնապահության մեջ մեծ տեղ է գրավելու արդյունաբերական հիմունքներով արտադրության կազմակերպումը։ Ընթացիկ հնգամյակում նախատեսված է Հայաստանում կառուցել պետական 6 համալիրներ (մեկը՝ խոշոր եղջերավոր անասունների մատղաշի, երեքը՝ խոզերի աճեցման ու սնուցման համար, երկուսը՝ կաթնային) և թռչնաբուծական ֆաբրիկաներ, որոնք կունենան 790 հազար ձվատու հավ և տարեկան կարտադրեն 6,3 մլն բրոյլեր։

1975 թ. համար նախատեսված գյուղատնտեսական արտադրանքների աճը լիովին կապահովի մեր պահանջմունքը կարտոֆիլի և բոստանային կուլտուրաների նկատմամբ։ Հետագայում նվազ փոխադրելի մթերքների նկատմամբ պահանջմունքը կարող է ատիճանաբար ապահովվել տեղական արտադրության հաշվին, այնպես որ կանխատեսվող ժամանակաշրջանի վերջին դրանց արտադրությունը նույնիսկ որոշ չափով կգերազանցի ընդհանուր պահանջմունքը։

Կանխատեսվող ժամանակաշրջանում գյուղատնտեսական արտադրության աճի բարձր և կայուն տեմպեր ապահովելու նպատակով ավելի մեծ ուշադրություն է նվիրվելու դրա հետևողական ինտենսիվացմանը, նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը, էներգազինվածության մակարդակի, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։

Ա. Պ. ՀԱՅՐԻՅԱՆ
Բժշկական գիտությունների դոկտոր

# ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՐԴԻ ԳՅՈՒՂԱԿԱՆ ԸՆՏԱՆԻՔԸ

## (ՍՈՑԻԱԼ-ՀԻԳԻԵՆԻԿ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՄԻ ՓՈՐՁ)

Գիտատեխնիկական հեղափոխության բուռն զարգացման ժամանակակից պայմաններում հարատևող ուրբանիզացիան, մարդկանց կյանքի և առողջության վրա ունեցած իր դրական ու բացասական ազդեցություններով, արտակարգ բարդացնում է առողջապահության խնդիրները, մեծացնում դրա նշանակությունը մարդկային հասարակության համար։ Ներկայումս բժշկությունն ավելի մեծ սոցիալական պարտավորություն է ստանձնում, այն առավել ակտիվ է մարտնչում հանուն մարդու համակողմանի զարգացման, նրա առողջության պահպանման։

Այժմ առողջապահության և բժշկական գիտության բնագավառի աշխատողները հասարակության առջև պետք է պատասխանատվություն կրեն ո՛չ միայն բուժ-սանիտարական, այլև որոշակի սոցիալական առումով։ Բուժաշխատողների գործունեությունը չպետք է սահմանափակվի միայն մարդու հիվանդագին վիճակների ու ֆիզիոլոգիայի ուսումնասիրմամբ, այլ նշանակալիորեն ընդլայնվի, ընդգրկելով այն միջավայրի հետազոտությունը, ուր ապրում ու աշխատում է մարդը, որովհետև նրա հիվանդացումը և առողջությունը մեծ չափով պայմանավորված են յուրաքանչյուր երկրի բնասոցիալական միջավայրով։ Վերջինս ընդգրկելով նաև բնակարանային և աշխատանքային պայմանները, սննդի ու հագուստի որակը, բժշկական ծառայության մատչելիության աստիճանը, սանիտարական պայմանները, կենսագոհունակությունը և այլն, անդրադառնում են մարդու առողջության, երկարակեցության վրա։ Դասակարգային հակասություններով լի կապիտալիստական և, հատկապես, գաղութային երկրներում, ուր ժողովրդական լայն մասսաները տառապում են գործազրկությունից, կարիքից, համաճարակային հիվանդություններից, բարենպաստ պայմաններ չկան նրանց առողջության պահպանման համար։

Մեր անդասակարգ սոցիալիստական հասարակարգում, ուր վերացված են մարդու կողմից մարդու կեղեքումն ու շահագործումը և պետությունը մշտապես հոգում է աշխատավորների առողջության պահպանման մասին, ողջ երկրի

բնակչության առողջության համար ստեղծվել են կենցաղի և աշխատանքի նոր, բարենպաստ պայմաններ։

Աշխարհում առաջին սոցիալիստական հասարակության զարգացման ավելի քան կեսդարյա պատմությունը, ամենից առաջ, մարդու, նրա սոցիալական բարեկեցության համար մեր պետության հոգատարության արտացոլումն է։ Այդ ամենի լավագույն արտահայտությունն է սովետական ժողովրդի կենսամակարդակի անընդհատ աճը, որը բխում է սովետական հասարակության բուն էությունից, սովետական պետության քաղաքական ու տնտեսական կառուցվածքից, որի բարձրագույն նպատակը մարդու բարեկեցության ու երջանկության ապահովումն է։

Ղեկավարվելով «Ամեն ինչ մարդու, մարդու բարօրության համար» ծրագրային սկզբունքով՝ կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը պլանաչափորեն իրագործում են ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման, նրա կուլտուրական ու հոգևոր աճող պահանջմունքների բավարարման միջոցառումներ։

Խոսելով սովետական մարդկանց բարձր կենսամակարդակի մասին՝ նշենք, որ այդ պրոցեսի ժամանակակից էտապի բնորոշ գիծն ու կարևոր առանձնահատկությունն այդ աճի նկատելի արագացումն է։ Այն հատկապես ակներև է արդի գյուղաբնակի կյանքի, բնակարանա-կենցաղային պայմանների, հոգևոր աշխարհի ու կուլտուրական մակարդակի բարձրացման մեջ։ Այս ամենում կարելի է համոզվել, լինելով մեր շատ գյուղերում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, ուր կենցաղում և աշխատանքում ակնբախ են ժամանակակից գյուղացիության կյանքում կատարված արմատական վերափոխումները։ Այժմ մենք ականատեսներն ենք այն բանի, ինչի մասին գրել է Վ. Ի. Լենինը 1919 թ. «Գյուղացիական երկրում պրոլետարիատի դիկտատուրայից առաջինը շահեցին, ամենից շատ շահեցին, միանգամից շահեցին գյուղացիներն առհասարակ... Պրոլետարիատի դիկտատուրայի օրոք առաջին անգամ գյուղացին աշխատեց իր համար և սնվեց ավելի լավ, քան քաղաքացին» (Երկեր, հ. 30, էջ 121—122)։

Վերջին տարիներս կոլտնտեսականների եկամուտների աճը, նյութական բարեկեցությունն առաջին հերթին դրսևորվում են նրանց կենսամակարդակի, բնակարանա-կենցաղային պայմանների տարբեր մարզերում, որը քիչ է տարբերվում քաղաքաբնակների բնակարանա-կենցաղային պայմաններից։ Այդ բոլորը մեր երկրում ո՛չ միայն տնտեսական նվաճում է, այլև նոր, պրոգրեսիվ հասարակական ֆորմացիայի սոցիալ-քաղաքական հաղթանակ, որը սոցիալական կարևոր իմաստ ունի. գիտական ակնհայտ առաջընթացը հենց դրա օբյեկտիվ արտացոլումն է։

Սովետական ժողովրդի կյանքում կատարվող էական փոփոխությունները, սոցիալ-տնտեսական դրական տեղաշարժերը մշտապես ներգործել ու ներգործելու են նրանց առողջական վիճակի, դեմոգրաֆիական պրոցեսների վրա։ Մի շարք սոցիոլոգիական հետազոտությունները մեր երկրում, այլ հարցերի հետ մեկտեղ, բացահայտեցին կենսապայմանների և բնակչության առողջական վիճակում տեղի ունեցող դրական տեղաշարժերի կապը։

Հարկ է նշել, որ մեզ մոտ այնքան էլ շատ չեն նման հետազոտությունները, որպիսիք պետք է լիովին և ողջ խորությամբ բացահայտեն սոցիալական գործոնների վերափոխիչ ու տևական ներգործությունը բնակչության առող-



ջության ոլորտում, որով հնարավոր կլինի գիտականորեն լուսաբանել սոցիալիստական հասարակության էությունն ու նշանակությունը, ինչպես և սովետական սիստեմի առավելությունը մարդկանց առողջապահության պահպանման տեսակետից։

Սոցիոլոգիական հետազոտությունների կոմպլեքս ծրագրում կարևոր տեղ կգրավի նաև ժամանակակից ընտանիքի սոցիալ-հիգիենիկ ուսումնասիրությունը՝ իր բնագավառին հատուկ հարցերի արծարծմամբ։

Մարդկության զարգացման պատմության մեջ ընտանիքն այն բարդ ու բազմակողմանի երևույթներից մեկն է, որով հետաքրքրվել են գիտության տարբեր բնագավառների ներկայացուցիչները՝ փիլիսոփաներ, պատմաբաններ, կենսաբաններ ու սոցիոլոգներ, իրավաբաններ ու տնտեսագետներ, ազգագրագետներ, հոգեբաններ, բժիշկներ ու մանկավարժներ։

Ընտանիքի պատմությունն ու բնույթը համակողմանի հետազոտել ու լուսաբանել են գիտնականների շատ սերունդներ, ուսումնասիրում են և դեռ շատերը կուսումնասիրեն՝ լիովին բացահայտելու համար հինն ու նորը, մեռնողն ու զարգացողը, բարդն ու հակասականը, որ պարունակել և պարունակում է ընտանիքը։

Այդ պրոբլեմի հրատապությունը, գործնական արժեքն ու տեսական նշանակությունը, ինչպես և դրա՝ դեռևս անբավարար լուսաբանումը ժամանակակից գրականության մեջ, մղեցին մեզ՝ զբաղվելու գյուղաբնակների կյանքի սոցիոլոգիական հետազոտությամբ։ Մեր նպատակն է դրա միջոցով ի հայտ բերել ժամանակակից գյուղաբնակի ընտանիքի կենսապայմանների առավել բնորոշ առանձնահատկությունները, դրանք ամենից առաջ գյուղի բնակչության առողջապահության, սանիտարա-հիգիենիկ և բնակարանա-կենցաղային պայմանների բարելավման համար օգտագործելու նպատակով։

Մեր հետազոտության առանձնահատկությունն այն է, որ գյուղական բնակչության քանակական ուսումնասիրման ժամանակ որպես միավոր վերցրել ենք ընտանիքը։ Այդպիսի մոտեցումը բացատրվում է նրանով, որ ընտանիքը, որպես առաջին սոցիալական միավոր, կարող է լավ և բավական լրիվ արտացոլել հասարակության կյանքի սոցիալ-կենցաղային պայմանների և կուլտուրական կացության առավել բնորոշ գծերը, տվյալ դեպքում այսօրվա սոցիալիստական գյուղի բնակիչների վիճակն ու պահանջմունքները։

Գոյություն ունեցող սոցիալ-հիգիենիկ հետազոտությունների տարբեր մեթոդներից ընտրել ենք անկետային հարցման եղանակը. ինֆորմացիայի օբյեկտը ընտանիքն է։ Դրա համար մշակել ենք վիճակագրական հատուկ ձև— «Գյուղական բնակչի ընտանիքի սոցիալ-հիգիենիկ հետազոտության» քարտը, որը պարունակում է 35 հարց. առաջին վեցը հասցեագրված է գյուղական բնակչի ընտանիքի գլխավորին, վերաբերում է հասակա-սեռային կազմին, հասարակական դրությանը, զբաղմունքին, կրթությանը և այլն։ Այդ անկետայով որոշվում է ընտանիքի կազմը. ամեն մի ընտանիքի բնակարանա-կենցաղային և կուլտուրական մակարդակին վերաբերող փաստական նյութերը բացահայտում են նրա բյուջեն, կոմունալ հարմարությունները, բնակարանային, սանիտարական պայմանները, ջրամատակարարման աղբյուրները, հարցվողի կարծիքն իր բնակարանա-կենցաղային պայմանների ու ընտանեկան փոխհարաբերությունների մասին, ինչպես և նրա առաջարկները դրանց բարելավման վերաբերյալ։ Ստացված պատասխաններն ընդգրկում են ժամանակակից ընտանիքի

կենսագործունեության բոլոր կողմերը, լուսաբանում մեզ հետաքրքրող ամենաբազմազան հարցերը, իսկ ուսումնասիրության արդյունքները միանգամայն ճշգրիտ են, հիմնված հավաքած նախնական մեծ նյութի, դրա վերլուծության վրա։

Հետազոտել ենք Հայկական ՍՍՀ ութ տարբեր շրջանների՝ Աբովյանի, Արարատի, Աշտարակի, Արտաշատի, Սևանի, Կալինինոյի, Մասիսի և Էջմիածնի գյուղաբնակների 10.255 ընտանիք։ Մեր հավաքած վիճակագրական նյութերը ենթարկվել են փորձագիտային գնահատականի՝ որոշելու համար հաշվառման քարտի լրացման ճշգրտությունը։ Մեր կազմած հատուկ աղյուսակներով դրանք մշակվել են էլեկտրոնային հաշվիչ մեքենաների վրա։ Այնուհետև ստացված տվյալները խորապես վերլուծվել են։ Ստացված արդյունքները հնարավորություն տվին՝ բացահայտելու այսօրվա գյուղաբնակի ընտանիքի յուրօրինակությունը, վեր հանելու դրա մի շարք առանձնահատկություններ ու տենդենցներ, ինչպես և ընտանիքին բնորոշ ընդհանուր պահանջմունքները։

Սոցիալ-հիգիենիկ ուսումնասիրությամբ բացահայտելով ու ներկայացնելով բնակարանա-կենցաղային ներկա պայմանները, ժամանակակից գյուղաբնակի ընդհանուր կուլտուրական մակարդակը և արդի կենսաձևը, վեր հանելով նրա զարգացման հիմնական տենդենցները, մի անգամ ևս կարելի է համոզվել, որ մեր կուսակցությունը կենսագործում է քաղաքի ու գյուղի բնակիչների կենսապայմանների տարբերությունների վերացման սոցիալ-քաղաքական մեծ ծրագիրը։

Ուսումնասիրված նյութը, դրանից բխող հետևանքները, մեր կարծիքով, կարող են արժեքավոր լինել առողջապահական օրգանների համար, որովհետև դրանցում կան բնորոշ ու կարևոր շատ բաներ, որոնց իմացումն ու նկատի առնելը ո՛չ միայն էական, այլև անհրաժեշտ են առողջապահության կազմակերպման ու կատարելագործման համար։ Չէ՛ որ մեր հանրապետության բնակչության մոտ կեսը գյուղաբնակ է։ Հավաքված ողջ նյութի ուսումնասիրությունը հանգեցրեց հետևյալ եզրակացությունների.

Սովետական իշխանության տարիներին, հատկապես վերջին մեկուկես-երկու տասնամյակներում տեղի ունեցած սոցիալ-կենցաղային անհամեմատ մեծ փոփոխություններն արտահայտվում են գյուղաբնակի ունևոր ու կուլտուրական ապրելակերպում։ Ընտանիքին անհրաժեշտ նյութական արժեքներ կուտակելու համար նա ունի բավարար դրամական միջոցներ։

Ժամանակակից սոցիալիստական գյուղի կյանքի դինամիզմի արտահայտությունն է նրա անընդհատ բարելավման տենդենցը։ Հեղափոխությունից հետո, սովետական իշխանության տարիներին, մեր երկրում շարունակվում են տնտեսական նոր վերելքը, կուլտուրական վերափոխումները, որոնք կհանգեցնեն գյուղաբնակների կյանքի առավել բարելավմանը, նրա կենցաղի հետագա առաջընթացին ու կատարելագործմանը։

Հայկական ՍՍՀ գյուղական վայրերում կան սոցիալ-տնտեսական համապատասխան նախադրյալներ և նյութա-տեխնիկական անհրաժեշտ բազա՝ քաղաքաբնակների և գյուղաբնակների կենսամակարդակների մերձեցման համար։

Միաժամանակ պետք է նշել, որ բնակարանա-կենցաղային պայմանների և ընտանիքի եկամտի չափերով, սովխոզների բանվորների համեմատ, ավելի բարենպաստ պայմաններում է կոլտնտեսային գյուղացիությունը, որն, ինչպես



հայտնի է, կազմում է մեր երկրի գյուղական բնակչության գերակշռող մասը և գյուղատնտեսական աշխատանքի առաջատար ուժն է։ Գյուղական կյանքի առաջընթացն անխուսափելիորեն հարուցում է մի շարք նոր, անհետաձգելի խնդիրներ։ Այստեղ, սոցիալ-հիգիենիկ մեթոդով, կարելի է լուսաբանել դրանցից մի քանիսը։ Այսպես, գյուղական ընտանիքի արդի վիճակի մեր սոցիալ-հիգիենիկ ուսումնասիրությունը հիմք է տալիս ասելու, որ

1. Մեր հետազոտած ութ շրջանների 10.255 ընտանիքների, հետևաբար և նրանց անդամների համահավաք կոնտինգենտը մեր հաշվարկումներով ըստ տարիքի հետևյալ պատկերն ունի. մինչև 30 տարեկան՝ 5,1 31—40-ը՝ 30,4, 41—50-ը՝ 31,6, 51—60-ը՝ 15,3, 61—70-ը՝ 13,2 և 71-ից բարձր 4,3 տոկոս։

2. Մեր ուսումնասիրած ընտանիքների կազմն ըստ սոցիալական խմբերի հետևյալն է. կոլտնտեսական՝ 39,5, բանվորական՝ 26,7, ծառայողական 20, թոշակառու՝ 13,8 տոկոս։

Զբաղմունքով ընտանիքի աշխատողների 32,2 տոկոսը դաշտավարներ են, 15,7-ը՝ այգեգործներ, 6,1-ը՝ անասնապահներ, 11,1-ը՝ մեխանիզատոր-տրակտորիստներ, 1,3-ը՝ գյուղատնտես և զոոտեխնիկներ և 23,3-ը՝ այլ գործավորներ։

3. Ըստ կրթական ցենզի. ընտանիքի աշխատողների 39,7 տոկոսն ունեն տարրական կրթություն, 32,6-ը՝ ոչ լրիվ միջնակարգ, 17,4-ը՝ միջնակարգ, 5,4-ը՝ միջնակարգ մասնագիտական և 4,9-ը՝ բարձրագույն կրթություն։ Նրանց ընդհանուր թվից միայն 2,1 տոկոսն է ուսումը համատեղում աշխատանքի հետ։ Գյուղական վայրերում ընտանիքների միայն 0,5 տոկոսը չի բաժանորդագրված թերթերի ու ամսագրերի։

4. Գյուղական վայրերում ժամանակակից ընտանիքը բաղկացած է 5—6 անդամներից, որոնցից հաճախ 3—4-ը երեխաներ են։

5. Ըստ բնակարանային պայմանների, գյուղաբնակ ընտանիքների 79,5 տոկոսն ապրում է սեփական տներում, կոլտնտեսություններում դրանք կազմում են 97,6 և սովխոզներում՝ 49,3 տոկոս։

6. Գյուղաբնակ ընտանիքների ընդհանուր թվից կոմունալ հարմարություններ ունեն 4,2-ը, թերի հարմարություններ՝ 81,6, բոլորովին չունեն՝ 14,2 տոկոսը։

Ջրամատակարարման տվյալներով բնակարանների 15,3 տոկոսն ունի ջրմուղ, ընտանիքների 84 տոկոսն օգտվում է փողոցների ջրբաշխ կետերից, ջրամատակարարման այլ աղբյուրները կազմում են 0,07 տոկոս։

Գյուղերի 91,6 տոկոսում կան բաղնիքներ, գյուղաբնակների 5,0 տոկոսը բնակարաններում ունեն ցնցուղներ։ Ընտանիքների 85,5 տոկոսն օգտվում է գազից։

7. Գյուղական ընտանիքներում հազվադեպ են ամուսնալուծությունները. այս փաստը վկայում է, որ հանրապետության գյուղական շրջաններում ընտանիքն ամուր է, բարեկեցիկ, հանգամանք, որը չի կարող դրականորեն չազդել բնակչության վերարտադրության վրա։

8. Կոլտնտեսություններում, հետազոտված ընտանիքների 97,6 տոկոսն ապրում է հարմարավետ, նորակառույց սեփական տներում, ուր մեծ մասամբ (74;4 տոկոսում) ընտանիքի ամեն մի անդամի ընկնում է ինը և ավելի քառակուսի մետր տարածություն։ Լվացքի մեքենաներ ունեն 67,5 տոկոսը, փոշե-

ծծիչներ՝ 14,3, կարի մեքենաներ՝ 82,3, ռադիոընդունիչներ՝ 80,5 և հեռուստացույցներ՝ 79,8 տոկոսը։ Այդ ընտանիքների ընդհանուր թվի 13,5 տոկոսն ունի սեփական ավտոմեքենա։

Վերոբերյալից պարզվում է, թե ինչու գյուղաբնակն այժմ չի ցանկանում բուժվել գյուղական վայրերում դեռևս առկա վատ սարքավորված, պարզունակ կահավորանքով, տեղամասային փոքրիկ հիվանդանոցներում, որոնց հարմարությունները հաճախ չեն համապատասխանում իրենց բնակարանա-կենցաղային պայմաններին։ Դրան երբեմն ավելանում է և հիվանդների խնամքի, բուժման, դիագնոստիկայի անբավարար մակարդակը։ Այդ հիվանդանոցների մահճակալային ֆոնդը Հայկական ՍՍՀ-ում դեռևս կազմում է 2.730։ Այստեղից հետևում է, որ ժամանակակից գյուղաբնակների բնակարանա-կենցաղային պայմանների մակարդակը նշանակալիորեն բարձր է՝ գյուղական առողջապահության կազմակերպման համեմատությամբ։

9. Ուսումնասիրվող կոնտինգենտը հասարակական խմբերով բաշխելիս, 39,5 տոկոսում ընտանիքի գլխավորները կոլտնտեսականներ են, 26,7-ում՝ բանվորներ, 13,8-ում՝ թոշակառուներ և 20,0 տոկոսում ծառայողներ։

Մեր թռուցիկ հետևություններից ակնհայտ է, որ ժամանակն է լուծելու գյուղական բնակչության առողջապահության առջև ծառացած հանգուցային խնդիրները։ Արդի գյուղի բնակչության սոցիալական կազմի զգալի որակական տեղաշարժերը թելադրում են հաշվի առնել և լուծել գյուղական բնակչությանը բժշկական պատշաճ օգնությամբ ապահովելու դժվարին հարցը։ Այժմ անհանդուրժելի է, որ Հայկական ՍՍՀ-ում, ուր 354 մարդուն ընկնում է 1 բժիշկ, հանրապետության 1.010 գյուղերից (որտեղ ապրում են հիմնականում գյուղատնտեսական արտադրությամբ զբաղվողները, նրանց ընտանիքի անդամները) 640-ում նախատեսված չեն բժշկական հաստատություններ և գործում են միայն բուժա-մանկաբարձական կետեր։

10. Հետազոտված ընտանիքների տղամարդկանց ընդհանուր թվի 62 տոկոսը ծխողներ են, իսկ գյուղական վայրերում մշտապես ալկոհոլային խմիչքներ օգտագործողները կազմում են 4,8 տոկոս։ Բնակչության առողջության պահպանման նպատակով բուժաշխատողները պետք է սանիտարա-լուսավորչական առավել լայն գործունեություն ծավալեն մասսաների շրջանում, պայքարեն ծխելու, ալկոհոլիզմի դեմ՝ որպես մարդու առողջությանը, ընտանիքի հաստատունությանն ու բարեկեցությանը վնասող արատների։

11. Գյուղական վայրերում անբարեհաջող ընտանիքների 4,3 տոկոսի վատ փոխհարաբերությունների պատճառը երեխա չունենալն է։ Այս առումով մեծ է բուժ-պրոֆիլակտիկ ծառայության դերը։ Բժիշկ-մասնագետները պետք է ջանան վաղ հայտնաբերել և հնարավորին չափ ժամանակին վերացնել անզավակության պատճառները։

12. Ուսումնասիրվող կոնտինգենտի ընդհանուր թվից յուրաքանչյուր 1.000 ընտանիքի ընկնում է նախադպրոցական հասակի 428 երեխա, որոնցից մանկամսուր են հաճախում 42,5 և մանկապարտեզ՝ 126,6-ը, ընդ որում առաջին դեպքում կոլտնտեսություններում 10,4, իսկ սովխոզներում՝ 32,1, մանկապարտեզ կոլտնտեսություններում՝ 54,6, իսկ սովխոզներում մատնանշված բարձր կոնտինգենտի 72 երեխաներ։ Մոր ու մանկան համար անբարենպաստ այս վիճակը շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում հետևանք է մանկական նախադպրոցական հաստատությունների տեղի զգալի պակասի, որին



պետք է հատուկ ուշադրություն նվիրեն նաև բուժաշխատողները՝ ամեն կերպ հիմնավորելով նախադպրոցական նորանոր հաստատությունների կառուցման անհրաժեշտությունը։

Կարծում ենք՝ առողջապահական մարմինների համար հետաքրքրական կլինեն մեր ուսումնասիրության արդյունքները, որոնք կարելի է օգտագործել առողջապահության հետագա զարգացման, սոցիոլոգիական հիմնավորման նպատակով։ Անհրաժեշտ է այսուհետև ևս ավելի լայն չափերով ուսումնասիրել մեր ողջ բնակչության կենսապայմանները. Նման ուսումնասիրություններն զգալի չափով կնպաստեն համապատասխան ու ճշգրիտ եզրակացությունների հանգելու, դրանով իսկ նպաստելու բնակչության կենսամակարդակի բարձրացմանը, առողջապահության կազմակերպման բարելավմանն ու հետագա կատարելագործմանը։

ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ. Հրապարակելով հանրապետության ութ շրջանների սոցիալական հիգիենայի ու գյուղական ընտանիքի արդի վիճակին նվիրված բժշկական գիտությունների դոկտոր Ա. Հայրիյանի ուսումնասիրության վերոհիշյալ համառոտակի թեզերը, անհրաժեշտ ենք գտնում հիշատակել, որ սոցիոլոգիական նման հետազոտություններն այսօր էական նշանակություն ունեն երկրի հարատև պրոգրեսի բոլոր բնագավառների համար:

Գիտության և տեխնիկայի զարգացման ներկա մակարդակը մեր հայրենիքում ռեալ հնարավորություններ է ընձեռում կառավարող և պլանավորող հաստատություններին՝ հետայսու ավելի սիստեմատիկ և համակողմանի օգտագործելու կատարվող սոցիոլոգիական կոնկրետ ուսումնասիրությունների գիտական հետևությունները, այդպիսիք կիրառելու հասարակական կյանքի բոլոր ոլորտներում:

Այս առումով իսկ Ա. Հայրիյանի ուշագրավ հետազոտությունը կարևոր ազդակ կծառայի հանրապետության բազմաթիվ շրջանների աշխատավորության բուժսպասարկման անհրաժեշտ գործի ընթացքը համեմատաբար ճիշտ կանխորոշելու ու պլանավորելու համար:

## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ԱՆՍՊԱՌ ԱՂԲՅՈՒՐԸ

ՍՎԵՏԼԱՆԱ ՇԱՀԲԱԶՅԱՆ

Ազգաբնակչության ողջ ուժերի ճիշտ օգտագործման համար անհրաժեշտ է հաշվի առնել մի շարք սոցիալական և տնտեսական պրոցեսների փոխադարձ կապերը՝ արտադրաուժերի տեղաբաշխումը, ժողովրդական տնտեսության ճյուղերում աշխատանքային ռեսուրսների բաշխումը, տնային և օժանդակ տնտեսությունում զբաղված աշխատունակ բնակչության ներգրավումը հասարակական արտադրությունում և այլն։

Քանի որ հիմնական արտադրաուժը մարդն է, ապա բնակչության զբաղվածությունը մեծ նշանակություն ունի հասարակության արտադրաուժերի զարգացման, իսկ սոցիալիզմի պայմաններում՝ նաև ժողովրդի բարեկեցության համար։

Մարքսիզմն ուսուցանում է, որ բնակչությանը վերաբերող բոլոր պրոցեսների ու երևույթների հիմքում ընկած են արտադրահարաբերությունները, հասարակության տնտեսակարգը։ Արտադրության տվյալ հասարակական եղանակից դուրս հնարավոր չէ դատել ազգաբնակչության մասին։ «Բնակչությունը, — գրել է Մարքսը,— այդ աբստրակցիա է, եթե ես, օրինակ, մի կողմ թողնեմ այն դասակարգերը, որոնցից այն բաղկացած է։ Բայց և այնպես այդ դասակարգերը դատարկ հնչյուն են, եթե ես չգիտեմ այն տարրերը, որոնց վրա նրանք հենվում են, ինչպես, օրինակ՝ վարձու աշխատանքը, կապիտալը և այլն» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. XII, ч. 1, 1933, стр. 190)։

Ազգաբնակչության օրենքի էությունն առաջինը բացահայտեց Կ. Մարքսը, նշելով, որ «...արտադրության ամեն մի առանձին պատմական եղանակին իրականում հատուկ են բնակչության առանձին, պատմական բնույթ ունեցող օրենքներ։ Բնակչության վերացական օրենքը գոյություն ունի միայն բույսերի ու կենդանիների համար, քանի դեռ մարդը պատմականորեն չի ներխուժում այդ բնագավառը» (Կապիտալ, հ. I, 1954, էջ 662)։



Զարգացնելով Մարքսի ուսմունքը ազգաբնակչության օրենքի մասին, Վ. Ի. Լենինը Նարոդնիկության տնտեսական բովանդակությունն ու նրա քննադատությունը Պ. Ստրուվեի գրքում աշխատության մեջ քննադատելով «Ռուսաստանում վերաբնակեցման գործոնների վերաբերյալ Ստրուվեի հայացքները, գրել է. «Մարդու բազմանալու պայմաններն անմիջականորեն կախված են տարբեր սոցիալական օրգանիզմների կառուցվածքից, ուստի և ազգաբնակչության օրենքը պետք է ուսումնասիրել յուրաքանչյուր այդպիսի օրգանիզմի համար առանձին, և ոչ թե «աբստրակտ կերպով», հասարակական կառուցվածքի պատմականորեն տարբեր ձևերից անկախ» (Երկեր, հ. I, էջ 579)։ Ինչ վերաբերում է ազգաբնակչության կապիտալիստական օրենքին, ապա Մարքսը գրել է. «...բանվոր բնակչությունը կապիտալի կուտակում առաջ բերելով՝ հենց դրանով էլ ինքը աճող չափերով արտադրում է այն միջոցները, որոնք նրան դարձնում են հարաբերականորեն ավելցուկ բնակչություն։ Սա բնակչության արտադրության կապիտալիստական եղանակին հատուկ օրենքն է...» (Կապիտալ, հ. I, 1954, էջ 661—662)։

Հաշվի առնելով, որ յուրաքանչյուր ժամանակաշրջանում ազգաբնակչության էությունը բնութագրվում է ո՛չ միայն արտադրաուժերի զարգացման մակարդակով, այլև արտադրահարաբերություններով, որոնց սուբյեկտը բնակչությունն է, Մարքսն ուսուցանում է, որ նրան հարկավոր է մոտենալ «...ոչ թե որպես ամբողջովին վերցրած մի քաոսային պատկերացման, այլ իբրև բազմաթիվ որպիսություններով ու հարաբերություններով հարուստ հանրագումարի» (К. Маркс и Ф. Энгельс, т. XII, стр. 726, второе изд.), այսինքն՝ բնակչությանն անհրաժեշտ է ուսումնասիրել քանակական և որակական բնութագրերով՝ իր հարստության մեջ, որոնցից կարևոր են սոցիալ-տնտեսական գործոնները։ Ազգաբնակչության բնագավառում հատուկ հետազոտությունները դառնում են հասարակական կյանքի գիտական իմացության հիմնական աղբյուրներից մեկը և հրատապ նշանակություն ունեն ներկայումս, երբ դրսևորվում են մարդու ընդունակություններն իրենց հարմոնիկ զարգացմամբ, հասարակական արտադրությունում, գիտության, տեխնիկայի և կուլտուրայի առաջընթացում։

Սոցիալիզմին հատուկ են բնակչության առաջընթացի հիրավի այլ օրենքներ։ Ամենից առաջ, սոցիալիզմի ժամանակ ապահովվում է հասարակական արտադրության անընդհատ աճը և, հետևաբար, բացառվում հարաբերականորեն ավելորդ բնակչության գոյացման հնարավորությունը։ Սա նշանակում է, որ վերանում է բնակչության բարգավաճման գլխավոր խոչընդոտը, որը մնում է կապիտալիստական երկրներում։ Սոցիալիզմի հաստատմամբ, արտադրամիջոցները հանրային սեփականություն դառնալով, արմատապես փոխում են աշխատուժի օգտագործման աստիճանն ու բնույթը։ Արտադրամիջոցների հանրային սեփականության հիման վրա վերացվում է հարաբերական վերաբնակեցումը և առաջանում նոր տնտեսական կատեգորիա՝ հասարակականորեն օգտակար աշխատանքով աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածությունը։ Քանի որ աշխատանքային ռեսուրսների աճի բազան բնակչության բնական աճն է, այդ պրոբլեմը, բնականաբար, մեզ թելադրում է հետազոտել բնակչության ծնելիության և բնական աճի վիճակը։ Այդ ուսումնասիրելիս չի կարելի սահմանափակվել միայն ժամանակակից վիճակի կամ մոտ ապագայի վերլուծությամբ։ Աշխատանքային ռեսուրսների վերարտադրությունը երկար ժամա-

նակ է պահանջում և անխզելիորեն կապված է ժողովրդագրական պրոցեսների հետ, որոնց վրա ներգործելն ու անհրաժեշտ վերակառուցումը բարդ ու դժվարին գործ է։ Ուստի, աշխատանքային ռեսուրսների վերարտադրության հետազոտությունը պետք է սկսել դրանց արտադրության, այսինքն՝ բնակչության բնական աճի պրոբլեմի քննարկումից։

Սովետական իշխանության տարիներին բնակչության բնական աճի դինամիկան բնութագրվում է հետևյալ տվյալներով.

| Տարիներ | Բնական աճը 1000 բնակչի հաշվով | |
|---|---|---|
| | ՍՍՀՄ-ում*) | Հայաստանում**) |
| 1926 | 23,7 | 36,9 |
| 1937 | 19,8 | 33,7 |
| 1940 | 13,2 | 27,4 |
| 1950 | 17,0 | 23,6 |
| 1960 | 17,8 | 33,5 |
| 1970 | 9,2 | 17,0 |

Վերջին տարիներին բնակչության բնական աճը ծնելիության պակասի հետևանքով իջնում է։ Այնուամենայնիվ, սովետական իշխանության տարիներին ինչպես ՍՍՀՄ-ում, այնպես և մեր հանրապետության բնակչության թիվը, չնայած առաջին համաշխարհային պատերազմի և, հատկապես, Հայրենական մեծ պատերազմի տարիներին կրած հսկայական կորստին, աճել է բավական արագ տեմպերով։ Եթե 1913 թ. Հայաստանում այն կազմել է (ըստ ներկայիս սահմանների) 1,0 մլն մարդ, 1940 թ. 1,3 մլն, ապա 1970 թ. հունվարի 15-ի համամիութենական մարդահամարի տվյալներով բնակչությունը եղել է 2,49 մլն, որի 48 տոկոսն աշխատունակ (տե՛ս «Коммунист», 15 հունիսի, 1971)։ Փոփոխվել է նաև բնակչության տարիքային կառուցվածքը, կրճատվում է ցածր տարիք ունեցողների տեսակարար կշիռը, բարձրանում մեծահասակներինը։

Փաստերը վկայում են, որ Հայկ. ՍՍՀ-ում աշխատունակների թիվը աճում է, որը նույնպես մեծ նշանակություն ունի մեր հանրապետության աշխատանքային ռեսուրսների լրիվ օգտագործման համար։

Անհրաժեշտ է նշել, որ հասարակության առկա աշխատանքային ռեսուրսների լրիվ օգտագործման օբյեկտիվ նախադրյալները դեռևս չեն ստեղծում աշխատանքի համընդհանրություն։ Կոմունիստական հասարակարգի առաջին փուլում աշխատանքը դեռ չի դարձել առաջին կենսապահանջ։ Ուստի, հասարակությունը ո՛չ միայն ապահովում է յուրաքանչյուրի աշխատելու հնարավորությունը, այլև պահանջում է դրա ընդհանուր պարտադիր լինելը։ Կոմունիզմի ժամանակ այն իր տեղը զիջում է կենսականորեն պահանջվող աշխատանքին, իսկ դա նշանակում է, որ հասարակությունը, որն առավել լրիվ կբավարարի մարդկանց պահանջները, պետք է լիովին ապահովի կենսական առաջին պահանջը՝ աշխատանքը։

Աշխատունակ բնակչության լրիվ զբաղվածության ապահովումն աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման կարևոր և հիմնական խնդիրներից մեկն է։

*) Տե՛ս «Народное хозяйство СССР в 1969 году, стр. 31.
**) Տե՛ս «Советская Армения за 50 лет» и Народное хозяйство Армянской ССР в 1970 году, стр. 13.



Ինչպես վկայում են վիճակագրական տվյալները, այն քաղաքներում, որտեղ բնակչությունը 50 հազար է, բնակվում է քաղաքային բնակչության 40 տոկոսը։ Այստեղ պատմական և տնտեսական պայմանների բերումով չեն կառուցվել արդյունաբերական ձեռնարկություններ և, այսպիսով, ստեղծվել է բանվորական ուժի ավելցուկ։ Ահա թե ինչու կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներում նշված է միջին և փոքր քաղաքներում արդյունաբերական ձեռնարկությունների ավելի լայն տարածման, աշխատուժով ապահովելու և նրանց լիովին օգտագործելու մասին։ Իսկ դա, իր հերթին, պահանջում է բնակչության կազմի, կառուցվածքի և վերարտադրության ուսումնասիրություն, աշխատունակ բնակչության տեղաբաշխում ըստ զբաղվածության բնույթի, տնտեսության ճյուղերի, աշխատանքային ռեսուրսների հեռանկարային հաշվարկ և աշխատուժի պահանջ՝ ողջ ժողովրդական տնտեսության և առանձին շրջանների համար։

Այս ասպարեզում զգալի գործ է կատարվել մեր հանրապետության շրջաններում և քաղաքներում։ Միայն 1965—1970 թթ. կառուցվել են 60 գործարաններ և արտադրամասեր, որոնք կնպաստեն աշխատանքային ռեսուրսների լայն օգտագործմանը։ Այդ հարցին մեծ նշանակություն է նվիրվել ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանում։

Ելնելով ՍՄԿԿ XXIV համագումարի սահմանած գլխավոր խնդիրներից, իններորդ հնգամյա պլանը նախատեսում է լուծել մի ամբողջ շարք տնտեսական առաջադրանքներ, որոնք նշանակալիորեն կբարձրացնեն սովետական ժողովրդի բարեկեցությունը, կնպաստեն աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը։ Դրա շնորհիվ կշարունակվի նոր ձեռնարկությունների տեղաբաշխումը հանրապետության այն քաղաքներում ու շրջաններում, որտեղ համապատասխան աշխատուժ կա։

Որքան ռացիոնալ են օգտագործվում աշխատանքային ռեսուրսները, այնքան ավելի շատ է արտադրանքը, հետևաբար առավել մեծ է աշխատավորների աճող նյութական և կուլտուրական պահանջները լրիվ բավարարելու հնարավորությունը։ Ազգաբնակչության օրենքի երկրորդ գիծն աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումն է։ Սոցիալիզմի ժամանակ այն արտահայտվում է հասարակության հիմնական արտադրաուժերի առավել նպատակահարմար ու արդյունավետ օգտագործմամբ, ապահովում հասարակական աշխատանքի արտադրողականության աճի բարձր տեմպեր և այդ հիման վրա առավել լրիվ բավարարում ողջ հասարակության ու նրա անդամների հարաճուն պահանջները։

Հասարակական արտադրության մեջ աշխատուժի ռացիոնալ օգտագործման պրոբլեմը լուծելու համար կարևոր է արտադրության ոլորտների ու ժողովրդական տնտեսության ճյուղերի միջև աշխատանքային ռեսուրսների բաշխման օպտիմալ համամասնությունների սահմանումը։ Նյութական արտադրության և ոչ-արտադրական ոլորտներում զբաղվածների թվի հարաբերակցությունը պայմանավորված է մի շարք գործոններով և, ամենից առաջ, արտադրաուժերի զարգացման մակարդակով ու հասարակական աշխատանքի արտադրողականությամբ։ Այս մարզում կատարվել են որոշակի փոփոխություններ, որոնք կարելի է ցույց տալ մեր հանրապետության օրինակով։

Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության նյութական և ոչ-նյութական ճյուղերում զբաղված աշխատանքային ռեսուրսների բաշխումը (տոկոսներով)*

| Զբաղված են հասարակական արտադրության ճյուղերում | Տարիներ | | |
|---|---|---|---|
| | 1960 | 1965 | 1970 |
| Ընդամենը հանրային տնտեսության մեջ | 100,0 | 100,0 | 100,0 |
| Նյութական արտադրության ճյուղերում | 82,0 | 79,0 | 75,0 |
| այդ թվում՝ արտադրության ու շինարարության մեջ | 29,0 | 33,0 | 37,0 |
| Գյուղատնտեսության, անտառային տնտեսության մեջ (ներառյալ անձնական օժանդակ տնտեսությունները) | 44,0 | 35,0 | 26,0 |
| Նյութական արտադրության այլ ճյուղերում | 9,0 | 11,0 | 12,0 |
| Ոչ-արտադրական ոլորտում | 18,0 | 21,0 | 25,0 |
| այդ թվում՝ լուսավորության, առողջապահության, գիտության և գիտական ծառայության մեջ | 13,0 | 15,0 | 18,0 |
| Ոչ-արտադրական ոլորտի այլ ճյուղերում | 5,0 | 6,0 | 7,0 |

Աղյուսակի տվյալներից երևում է, որ գյուղատնտեսության աշխատանքային ռեսուրսների կրճատմամբ համեմատականորեն նվազում է տվյալ նյութական արտադրության ոլորտում զբաղված աշխատուժը և ոչ-նյութական արտադրության ոլորտում ավելանում է նրա բաժինը։

Արդի պայմաններում նյութական արտադրության ոլորտի գիտատեխնիկական բազայի զարգացումը պահանջում է սոցիալիստական հասարակության աշխատողների կուլտուր-տեխնիկական և կրթական առավել բարձր մակարդակ, իսկ դա պահանջում է ընդհանուր և պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության ցանցի ընդլայնում, որն ուժեղացնում է ոչ-արտադրական ոլորտում զբաղվածության մեծացման տենդենցը։

Այսպիսով, աշխատանքային ռեսուրսների պլանաչափ բաշխման հարցը էական նշանակություն ունի ժողովրդական տնտեսության պլանավորման, հասարակական արտադրության և աշխատանքի կազմակերպման կատարելագործման, երկրի աշխատանքային ռեսուրսների վերաբաշխման և կադրերի պատրաստման գործում։

Սոցիալիզմի ժամանակ էկոնոմիկայի անշեղ աճը և պլանային բնույթն օբյեկտիվորեն պայմանավորում են աշխատունակ բնակչության ռացիոնալ օգտագործման հնարավորությունն ու անհրաժեշտությունը։ Քանի որ սոցիալիստական հասարակարգում օբյեկտիվորեն սահմանվում է աշխատանքային ռեսուրսների լրիվ զբաղվածությունը և ռացիոնալ օգտագործումը, ապա ազգաբնակչության օրենքի՝ որպես աշխատանքային ռեսուրսների ձևավորման հիմքի, հասարակության աշխատանքային ռեսուրսների լրիվ ու արդյունավետ օգտագործումը պետք է կատարվեն հանրօգուտ աշխատաոլորտում ներգրավելու միջոցով։

*) Տե՛ս «Народное хозяйство Армянской ССР в 1970 году», Ереван, 1971 г. стр. 115, 116. Армения в цифрах в 1971 г., Ереван, 1972, стр. 133—134.

# ՁՈՐԱԿԱՊԻ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՌՕՐՅԱՆ

Զրուցակիցս՝ Անիի շրջանի Ջորակապ գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ Ա. Սաղաթելյանը, անհանգիստ է, ստեպ-ստեպ նայում է ժամացույցին։ Առաջարկում եմ գնալ չորանոց։ Իսկ նա կարծես դրան էր սպասում, իսկույն բարձրանում է բազկաթոռից։

— Գնա՛նք, ցորենի զտումը հիմա կվերջացնեն, հացահատիկ պետք է ուղարկենք մթերակայան։

Ճանապարհին շարունակում ենք ընդհատված զրույցը։

— Հարցնում եք, թե ինչպե՞ս ենք ձեռք բերել հաջողությունները։ Դրան կարճ պատասխան տալ չի լինի։ Ամեն մի հաջողություն ծնվում է դժվարությունները հաղթահարելու միջոցով։ Իսկ դժվարություններ միշտ էլ լինում են, որոնք հաղթահարվում են մեր մարդկանց միահամուռ ջանքերով։

— Բայց չէ՞ որ նույն մարդիկ առաջ էլ էին աշխատում։

— Այո՛, աշխատում էին...

Նա ընդհատում է խոսքը, ծխախոտ է վառում։ Ծխում ու շարունակում լռել։ Ես հասկանում եմ. տնտեսության նախկին ղեկավարների աշխատանքի սխալների մասին չի ուզում խոսել, հարկ չկա։

— Դուք լրագրող եք,— դառնալով ինձ՝ ասում է նա,— այդ հարցին ինքներդ էլ կարող եք պատասխանել։ Ա՛յ, վերջերս կուսակցության շրջանային կոմիտեից եկել էին մեր կոլտնտեսության վարչության և սկզբնական կուսկազմակերպության աշխատանքի փորձն ուսումնասիրելու։ Շրջկոմի ներկայացուցիչները ծանոթացան կուսկազմակերպության, տնտեսության գործունեությանը։ Այդ ամենի մասին խոսեցին շրջկոմի բյուրոյում։

Այո՛, ՀԿԿ Անիի շրջանային կոմիտեի բյուրոյում Ջորակապի կոլտնտեսության վարչության, սկզբնական կուսկազմակերպության աշխատանքի փորձի մասին խոսեցին հանգամանորեն։ Բյուրոյի նիստին հրավիրված կոլտնտեսությունների վարչությունների նախագահները, սովխոզների դիրեկտորները, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարները, գյուղատնտեսության մասնագետները ուշի-ուշով ունկնդրեցին բոլոր ելույթները։ Նրանց խոհուն հայացքներում կարելի էր կարդալ մի միտք. «Եթե բոլորս այսպես աշխատենք, մեր սրի երկու կողմն էլ կկտրի»։

Իսկ ինչպե՞ս են աշխատում Ջորակապի կոլտնտեսության վարչությունը, սկզբնական կուսկազմակերպությունը։

Մի ժամանակ Ջորակապի կոլտնտեսությունը Անիի շրջանի ամենահետամնաց տնտեսությունն էր։ Այստեղ գրեթե տարին մեկ անգամ փոխվում էր վարչության նախագահը, հաճախակի՝ բրիգադավարներն ու ֆերմաների վա-

րիչները, իսկ առաջընթաց չկար ու չկար։ Տարեվերջին կոլտնտեսությունն իր հաշվեկշիռը փակում էր վնասով ու հսկայական պարտքերով։ 1966—1967 թթ. հացահատիկի հեկտարի միջին բերքատվությունը չէր անցնում 12—13 ցենտներից, մեկ կովի կաթնատվությունը՝ 950—1.000 կգ-ից։ Բարձր էր արտադրվող հացահատիկի, մսի, կաթի, բրդի ինքնարժեքը, չէր կատարվում հանրային հոտի գլխաքանակի ավելացման պլանը, հոտում ցածր էր մայրական կազմի տոկոսը, մեծ չափերի էին հասնում սատկումն ու անկումները։

Կուսշրջկոմը, շրջսովետի գործկոմի գյուղատնտեսության վարչությունը, մանրազնին ուսումնասիրելով տնտեսության գործունեությունը, կադրերի տեղաբաշխման ու աշխատանքի կազմակերպման վիճակը, որոշեցին այլ պաշտոններից եկածների փոխարեն տնտեսության ղեկավարությունը հանձնել կոլտնտեսային արտադրության մեջ կոփված երիտասարդներին։ Կոլտնտեսության վարչության նախագահ ընտրվեց ոչխարաբուծական ֆերմայի վարիչ, մասնագիտությամբ անասնաբույժ Ա. Սաղաթելյանը, կաթնապրանքային ֆերմայի ղեկավարությունը հանձնվեց անասնաբույժ, սկզբնական կուսկազմակերպության քարտուղար Մ. Սանոյանին, ոչխարաբուծական ֆերման՝ հմուտ հովիվ Գ. Պապոյանին, դաշտավարական բրիգադան՝ երիտասարդ կոմունիստ Ս. Սիմոնյանին։

Կոլտնտեսությունում ծայր առավ պայքարը արտադրության առաջընթացի համար։ Սկզբնական կուսկազմակերպության 1968 թ. հաշվետու-ընտրական ժողովի որոշման մեջ կարդում ենք. «Կոլտնտեսության արտադրության բոլոր ոլորտներում ապահովել կոմունիստների ավանգարդային դերը, ամրապնդել աշխատանքային կարգապահությունը բոլոր օղակներում ու տեղամասերում, լայն թափ հաղորդել սոցիալիստական մրցությանը, նյութական միջոցներով խրախուսել առաջավորներին, անհաշտ լինել թերացողների նկատմամբ»։ Թվում է, թե սրանք սովորական մտքեր են, որ օգտագործվում են արձանագրություններում։ Բայց, ո՛չ։ Կուսկազմակերպությունը, իրականում, հարազատ մնալով իր որոշմանը, վճռականորեն հանդես եկավ տնտեսության թերությունները հաղթահարելու համար։ Կազմակերպության 15 անդամներից 12-ը անմիջականորեն ներգրավվեցին բուն արտադրության ոլորտը։ Նրանց վրա պարտականություն դրվեց իրենց իսկ օրինակով ամրապնդել աշխատանքային կարգապահությունը։ Արտադրական ճյուղերի ղեկավարներ Ս. Սիմոնյանից, Մ. Սանոյանից, Գ. Պապոյանից, Փ. Բաղդասարյանից պահանջվեց դաստիարակչական աշխատանք տանել դաշտավարների, մեխանիզատորների, անասնապահների ու հովիվների շրջանում, բարձրացնել նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Դրան հասնելու համար կոլտնտեսության վարչությունը, կուսկազմակերպությունը ժամանակին լուծում էին այն բոլոր հարցերը, որոնք բարձրացնում էին դաշտավարներն ու անասնապահները։ Իսկ պահանջները շատ էին. մեքենաների համար անհրաժեշտ էին պահեստամասեր, հինը պետք էր նորոգել, հարկավոր էին հանրային հոտի համար կուտակել առատ, հատկապես հյութալի կեր, մեքենայացնել աշխատատար պրոցեսները, կառուցել հարմարավետ շենքեր և այլն։

Կոլտնտեսության վարչությունը աստիճանաբար հաղթահարում էր այդ դժվարությունները։ Եթե առաջներում կաթնապրանքային և ոչխարաբուծական ֆերմաներում աշխատող ձեռքի խիստ կարիք էր զգացվում, ապա հետո սկսեցին ֆերմաները աշխատանքի գնալ երիտասարդները։ Ոմանք նախընտրեցին



տրակտորի ղեկը։ Նրանցից շատերն այժմ արտադրության առաջավորներ են, ինչպես օրինակ՝ վերջերս Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանի արժանացած կթվորուհի Ջուլիետա Խաչատրյանը, տրակտորիստ-կոմբայնավար Իսրայել Ներսիսյանը, հովիվ Սպարտակ Պողոսյանը, Սերյոժա Բաղդասարյանը և շատ ուրիշներ։

Իսկ կուսակցության շրջկոմում, գյուղատնտեսության վարչությունում ուշիուշով հետևում էին կուսկազմակերպության, կոլտնտեսության վարչության գործունեությանը և միաժամանակ անհրաժեշտ օգնություն ու աջակցություն ցույց տալիս՝ ծառացած հարցերը կարգավորելու համար։ Կոլտնտեսության վարչության նիստերում, կուսկազմակերպության ժողովներում, ամեն անգամ արտադրական, տնտեսական կամ կազմակերպական, քաղաքական-մասսայական հարցեր քննարկելիս և որոշումներ ընդունելիս, վարչության անդամները, կոմունիստները մեծ տեղ էին տալիս դաշտավարների ու անասնապահների առաջարկություններին ու նախաձեռնություններին։ Այսպես, երիտասարդ կոմունիստ, գյուղատնտես Ղ. Ղազարյանը առաջարկեց և՛ գարնանացանը, և՛ աշնանացանը անպայման կատարել ցելերի և ոչ թե դրանց մի մասը՝ խոզանի վրա։ Կուսժողովում հենց նրան էլ հանձնարարվեց անհրաժեշտ ուղղումներ մտցնել ցանքաշրջանառության մեջ։ Կոլտնտեսության մարդիկ աստիճանաբար հրաժարվեցին խոզանի վրա ցանք կատարելու պրակտիկայից և սկսեցին գերակատարել ցրտահերկի ու կրկնավարի պլանները։ Այժմ և՛ աշնանացանը, և՛ գարնանացանը կատարվում են մաքուր ու պարարտացված ցելերի վրա։

Կուսկազմակերպությունն առանձնակի ուշադրություն է նվիրում սոցիալիստական մրցության կազմակերպմանը, ամեն կերպ ջանում, որպեսզի այն ձևական բնույթ չկրի, այլ դառնա արտադրության մարդկանց աշխատանքային գործունեության խթանիչ ուժը։ Այդ նպատակով ստեղծեց սոցիալիստական մրցության շտաբ, որի ղեկավարությունը հանձնվեց կոմունիստ Կ. Կնյազյանին։ Յուրաքանչյուր ամսվա և եռամսյակի վերջում ամփոփվում են մրցության արդյունքները, ներկայացվում կոլտնտեսության վարչությանը՝ խրախուսման, պարգևատրման համար։

Հաջողության հասնելու կարևոր գործոններից մեկն էլ աշխատանքային կարգապահության ամրապնդումն էր։ Այդ հարցը հաճախ էր արծարծվում կուսակցական ժողովներում ու բյուրոյի նիստերում, և ի վերջո, տնտեսության ղեկավարությունը լուծեց այն. աշխօրերի պարտադիր մինիմումի կատարումը դարձավ խստագույն պահանջ՝ նախ բոլոր կոմունիստների, ապա՝ շարքային կոլտնտեսականների համար։ Մինիմում չկատարողները զրկվում էին կոլտնտեսականին տրված շատ արտոնություններից, յուրաքանչյուրի աշխատանքը գնահատվում էր նրանով, թե ինչպես է մասնակցում հանրային արտադրությանը։

Պակաս կարևոր չէին ֆերմաներն իրենց գործը սիրող անասնապահներով ու կթվորուհիներով ապահովելը, հանրային հոտի համար հարմարավետ շենքեր ունենալը, ֆերմաների աշխատատար պրոցեսների մեքենայացումը, կերի կայուն բազայի ստեղծումը։ Կթվորուհիների ու անասնապահների աշխատանքը թեթևացնելու նպատակով գոմերում տեղադրվեցին գոմաղբի փոխադրիչներ, ջրի ավտոմատ խմոցներ, մեքենայացվեց կիթը, հանրային հոտի խնամքի ու կերակրման համար ստեղծվեցին նորմալ պայմաններ։

Երբ կոլտնտեսությունում ամուր հիմքերի վրա դրվեց աշխատանքային

կարգապահությունը, բարձրացավ հողագործության ու անասնաբուծության վարման կուլտուրան, և մարդիկ, մտնելով համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, սկսեցին պայքարել նոր բնագծերի համար։ Կուսկազմակերպությունը, կոլտնտեսության վարչությունը մոբիլիզացրին անասնապահների ու դաշտավարների ուժերը՝ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները անշեղորեն կենսագործելու, իններորդ հնգամյակում գյուղատնտեսության արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար։ 1971 թ. սեպտեմբերին սկզբնական կուսկազմակերպության ժողովը քննարկեց «ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները և սկզբնական կուսկազմակերպության խնդիրները» հարցը և ընդունած որոշման մեջ մտցրեց այսպիսի մի կետ. «Չհանգստանալ տնտեսության ձեռք բերած նվաճումներով, հաշվի առնելով գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու հնարավորությունները, դաշտավարների ու անասնապահների շրջանում լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, խրախուսել առաջավորներին, արմատավորել նրանց փորձը, հասնել արտադրական բարձր ցուցանիշների, արտադրության բոլոր տեղամասերում ապահովելով կոմունիստների ավանգարդային դերը»։

Ի՞նչն էր հիմք ծառայում կուսկազմակերպությանը այսպիսի որոշում ընդունելու համար։ Ամենից առաջ այն, որ կոլտնտեսությունը ութերորդ հնգամյակը փակեց գոհացուցիչ արդյունքներով, հաղթահարեց տևականորեն ետ մնալը, ամրապնդեց աշխատանքային կարգապահությունը, տնտեսության նյութատեխնիկական բազան։

Եվ ահա շրջանային կոմիտեում, գյուղատնտեսության վարչությունում ծանոթանում են ձորակապցիների՝ նոր հնգամյակի առաջին տարվա աշխատանքի արդյունքներին։ Դրանք գոհացուցիչ էին, ուրախացնող. մեկ կովի միջին կաթնատվությունը 1.764 կգ էր, որը 550 կգ-ով ավելի էր շրջանի և 350 կգ-ով հանրապետության միջին ցուցանիշից։ Անջրդի պայմաններում հացահատիկի մեկ հեկտարի բերքատվությունը հասավ 28 ցենտների, մսի, կաթի, բրդի արտադրության ու պետությանը դրանց վաճառքի տարեկան առաջադրանքները գերակատարվեցին 30—40 տոկոսով։ Նախորդ տարիների համեմատությամբ զգալիորեն նվազեց արտադրված մթերքների ինքնարժեքը, աճեցին դրամական եկամուտները։ Այսպիսով, Ձորակապի կոլտնտեսության աշխատավորները հնգամյակի առաջին տարին ավարտեցին բարձր արդյունքներով՝ երեք եռամսյակ իրենց ձեռքում պահելով ՀԿԿ Անիի շրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշը։

Երբ մամուլում հրապարակվեց ՍՄԿԿ Կենտկոմի «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» որոշումը, սկզբնական կուսկազմակերպությունում հանգամանորեն ծանոթացան դրան և ապա քննության առան կազմակերպության ժողովում։ Կաթնապրանքային ֆերմայի վարիչ, կուսկազմակերպության քարտուղար Մ. Սանոյանն իր ելույթում նշեց, որ ֆերմայում բոլոր հնարավորությունները կան մեկ կովի միջին կաթնատվությունը 2.000 կգ հասցնելու համար, լուծվել է կերի բազայի հարցը, մեքենայացվել են աշխատատար պրոցեսները, կան լավագույն կթվորուհիներ ու իրենց գործը սիրող անասնապահներ։ Ոչխարաբուծական ֆերմայի վարիչ Գ. Պապոյանը ժողովին հաղորդեց, որ հովիվները կարող են բրդի արտադրությունն ավելացնել մեկ կիլոգրամով, 100 ոչխարից ստանալ ու պահպանել 93 գառ։ Դաշտավարական բրիգադի բրիգադավար Ս. Սիմոնյանը ժողովին



պատմեց, որ մրցությունն իրենց մեծ չափով օգնում է ետ մնալը հաղթահարելու համար, և այս տարվա ցուցանիշները հենց դրա ապացույցն են։ «Մեր դաշտավարներն ու մեխանիզատորները,— ասաց նա,— պարարտացված ցելերի վրա առաջին դասի սերմացուով բարձրորակ աշնանացան են կատարել։ Մենք ժամանակին կսնուցենք ցանքերը, կմաքրենք քարերից ու մոլախոտերից և կապահովենք բարձր բերք»։

Կուսակցական ժողովում նշվեց նաև, որ դեռևս մրցության կազմակերպման գործում կան թերություններ, լավ չեն մասսայականացվում մրցության արդյունքները, անհրաժեշտ բարձրության վրա չի գտնվում նյութական ու բարոյական խթանման գործը։ Իր ընդունած որոշման մեջ ժողովը հանձնարարեց կոլտնտեսության վարչությանը, ճյուղերի ղեկավարներին՝ իրենց կոլեկտիվներում նոր թափ հաղորդել սոցիալիստական մրցության կազմակերպմանը, որոնել ու օգտագործել նոր ռեզերվներ։ Հանձնարարվեց սոցմրցության շտաբին՝ ապահովել սոցիալիստական մրցության պայմանագրերի կնքումը ֆերմաների ու բրիգադների, ինչպես նաև մրցակից Լանջիկի կոլտնտեսության միջև։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման նպատակով մրցության առաջին նախաձեռնությունը ծնվեց կաթնապրանքային ֆերմայում։ Առաջավոր կթվորուհի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Զուլեյտա Խաչատրյանը հանդես եկավ ամեն մի կովից 2.000 կգ կաթ ստանալու կոչով։ Այն արժանացավ կոլտնտեսության կուսկազմակերպության հավանությանը, տպագրվեց շրջանային «Անի» թերթում։ ՀԿԿ շրջկոմի բյուրոն ևս քննության առավ Զ. Խաչատրյանի նախաձեռնությունը, հավանություն տվեց դրան և հանձնարարեց կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսկազմակերպություններին, տնտեսությունների ղեկավարներին՝ կոչը լայնորեն մասսայականացնել կթվորուհիների շրջանում և սոցիալիստական մրցություն ծավալել Անիի շրջանի պայմաններում այդպիսի բարձր ու պատվավոր բնագիծը նվաճելու համար։

Ոչխարաբուծական ֆերմայի կոլեկտիվն իր համար նախատեսեց նոր բնագծեր. 100 մաքիից ստանալ ու պահպանել 96 գառ, մեկ ոչխարի բրդատվությունը հասցնել 3,5 կգ-ի։ Դաշտավարները, որոնք արդեն երրորդ տարին է, ինչ անընդմեջ բարձր բերք են աճեցնում, չցանկացան ետ մնալ իրենց մրցակից Լանջիկի կոլտնտեսության դաշտավարներից և պարտավորվեցին հոբելյանական տարում յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը հասցնել 30 ցենտների։ Ամբողջ տարվա ընթացքում կուսկազմակերպությունը, կոլտնտեսության վարչությունը, օգնում, աջակցում ու ընդառաջում էին բոլոր մրցողներին՝ ստանձնած պարտավորությունները կատարելու համար։ Յուրաքանչյուր ամիս ու եռամսյակ քննարկում էին մրցության արդյունքները, խրախուսում ու պարգևատրում առաջավորներին։

ՍՍՀՄ ժողովուրդների փառապանծ տոնի նախօրյակին, երբ ՀԿԿ շրջկոմում ամփոփում էին հոբելյանական տարվա արդյունքները, ամենաբարձր ցուցանիշները գրվեցին Ձորակապի կոլտնտեսության անվան դիմաց։ Ահա դրանք. անջրդի պայմաններում 284 հեկտար ցանքատարածության միջին բերքատվությունը կազմեց 42,8 ցենտներ, պետությանը հացահատիկ վաճառելու հնգամյա պլանը կատարվեց երկու տարում։ Այդպիսի բարձր բերք դաշտավարներն աճեցրին ամենից առաջ ագրոկոմպլեքսն անթերի կիրառելու, հողագործության

վարման կուլտուրան բարձրացնելու, ցանքատարածությունները պաշտպանելու, բերքահավաքը արագ և անկորուստ ավարտելու շնորհիվ. այդ ամենին գումարած՝ մեխանիզատորների նվիրված, սրտացավ, բարեխիղճ աշխատանքը։ Նրանց անվանացուցակը երկար է, բայց հարկ է նշել մասնավորապես տրակտորիստ-կոմբայնավար, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Ի. Ներսիսյանի, տրակտորիստներ Ս. Հակոբյանի, Ֆ. Սանոյանի, կոմունիստ, ավտովարորդ Ա. Դավթյանի, դաշտավարներ Ռ. Սահակյանի, Ջ. Պողոսյանի անունները։

Կթվորուհիներն ու անասնապահները ևս պատվով կատարեցին իրենց սոցիալիստական պարտավորությունները։ Կաթնապրանքային ֆերման իր բարձր արդյունքներով շրջանում միակն էր։ Այստեղ եղած 153 կովերի միջին կաթնատվությունը կազմեց 2.000 կգ, իսկ մրցության նախաձեռնող Ջուլետա Խաչատրյանն իր խնամքին հանձնված 18 կովի միջին կաթնատվությունն հասցրեց 2.445 կգ, նրա մրցակից ընկերներն ամեն մի կովից կթեցին 2.100—2.250 կգ կաթ։ Հովիվներն էլ իրենց խոստման տերը դարձան բրդի արտադրության և գլխաքանակի ավելացման գործում։

Կոլտնտեսությունում այս հաջողությունները պայմանավորված են նաև նրանով, որ մշտապես կիրառվում են նյութական խրախուսման միջոցները։ Այսպես, եթե հովիվը 100 մայր ոչխարից ստանա ու մինչև մայիս-հունիս ամիսն անկորուստ պահպանի նույնքան գառ, ապա նա, որպես պարգև-հավելում կստանա 100 ռուբլի։ Կթվորուհիները, անասնապահները, հորթապահները, պարգև-հավելում են ստանում պլանից ավելի արտադրած կաթի, հորթերի անկորուստ պահպանության, բրդի ու քաշաճի առաջադրանքների գերակատարման համար՝ չհաշված մրցությունում շահած մրցանակները։ Միայն անցյալ տարի կոլտնտեսականներն ստացան 12.000 ռուբլի լրացուցիչ վարձատրություն և 2.500 ռուբլի պարգև։ Նյութական շահագրգռվածության խթանումը, առաջավորների խրախուսումը կուսկազմակերպության և կոլտնտեսության վարչության կազմակերպական աշխատանքի բաղկացուցիչ մասն են։

Իններորդ հնգամյակի վճռական տարում ձորակապցիները հաշվարկներ են անում, թե ինչպես են կենսագործում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի և ՀԱՄԿԽ-ի որոշումը։

— Կաթի արտադրության տարեկան պլանը կատարել ենք 7 ամսում,— ասում է կոլտնտեսության վարչության նախագահը, պետությանը կաթի վաճառքի հնգամյա պլանը՝ երեք տարում։ Այդ մասին ամառանոցից հաղորդել է ֆերմայի վարիչ, կուսկազմակերպության քարտուղար Մ. Սանոյանը։ Մենք մսուրային շրջանն անցկացրինք անկորուստ, մինչև օրս ոչ մի անասունի անկում չի գրանցվել։ Կատարել ենք բրդի արտադրության ու վաճառքի տարեկան պլանը, գերակատարել հանրային հոտի գլխաքանակի ավելացման, մսի վաճառքի պարտավորությունները։

— Դե՜, հիմա էլ տեսնում եք այս հսկայական շեղջերը,— շարունակում է նախագահը։— Դաշտավարները վատ չաշխատեցին։ Այս տարվա բնակլիմայական անբարենպաստ պայմաններում հացահատիկի մեկ հեկտարի բերքատվությունը հասել է 35 ցենտների։ Մի խոսքով, մեր կոլտնտեսականները հնգամյակի վճռական տարին կավարտեն մրցությամբ ստանձնած պարտավորությունները պատվով կատարած։



Ես գրում եմ նրա բոլոր ասածները, ծոցատետրս լցվում է աշխատանքի մարդկանց, նրանց նվաճումների ու գալիք խնդիրների մասին հիանալի փաստերով ու անուններով։

Իսկ մինչ այդ ցորենի շեղջի մոտ հավաքված կալվորներն ավարտում են ավտոմեքենաների հացահատիկով բեռնումը։ Կշռվում են մեքենաները, գրվում են անհրաժեշտ փաստաթղթերը, լրացվում ուղեգրերը, և մեքենաները շարժվում են դեպի մթերակայան։

— Մենք, պլանի համաձայն, այս տարի պետությանը պետք է վաճառենք 350 ցենտներ հացահատիկ, բայց պարտավորվել ենք հայրենիքի շտեմարաններն ուղարկել 1.500 ցենտներ ցորեն, չորս անգամ ավելի՝ սահմանված պլանից։ Ընդ որում, այժմ հացահատիկ ենք հանձնում տասներորդ հնգամյակի հաշվին։

Մենք հեռանում ենք չորանոցից։ Նախագահը նորից ծխախոտ է վառում և շարունակում զրույցը։

— Չպետք է կարծել, որ եթե մեր տնտեսությունը դարձել է առաջավոր, փոխանցիկ դրոշներ է շահում, մեր աշխատանքի փորձը քննարկում են շրջկոմի բյուրոյում, ապա մեզ մոտ ամեն ինչ հարթ է ընթանում։ Ո՜չ։ Մեզ տեխնիկա ու ավտոտրանսպորտ են հարկավոր, մելիորացիոն բարձրորակ աշխատանք, ավտոպահեստամասերը պետք է մատակարարվեն ժամանակին, շինանյութերի ուշ և քիչ ստանալու պատճառով շատ ենք տուժում։ Սենաժ պատրաստելու մեքենաներ չկան և այլն։ Եվ հետո, դյուրին չէ, երբ առաջավորի անուն ես վաստակում և սկսում թաքնվել միջին շարքերում։ Մենք մեր նվաճված դիրքերից չենք նահանջի, մեր բռնած վերելքի ուղին հաստատ է։

— Ինչ խոսք, որտեղ աշխատանք կա, դժվարությունները նրա ստվերն են,— ընդհատում եմ ես,— գլխավորը ոտքի կանգնելն է, քայլելը հեշտ է։

— Այո՜, նախ պետք է ուժեր ունենալ, ապա՝ շարժվել։

Ձորակապի կոլտնտեսությունում այդ ուժը կենսահաստատ է։

Հ. Ս. ՄԱՆՈՒԿՅԱՆ
«Անի» թերթի խմբագիր

# ԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

Գ. Խ. ՍՏԵՓԱՆՅԱՆ
Արվեստի վաստակավոր գործիչ

## ՌՈՄԱՆՏԻԶՄԻ ՇՐՋԱՆԻ ԱՐԵՎՄՏԱՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԹԵՄԱՆ

Հայ ժողովրդի պատմական ճակատագրի բերումով՝ նրա նոր շրջանի գրականությունը զարգացել է երկու ուրույն ճյուղավորումով՝ արևելահայ և արևմտահայ, պայմանավորված այդ երկու հատվածների քաղաքական իրավիճակով:

Անդրկովկասի միավորումով Ռուսաստանին՝ հայ ժողովրդի արևելահայ հատվածն իր ճակատագիրը կապեց ռուս ժողովրդի հետ, տնտեսական կյանքին զուգընթաց հնարավորություն ստացավ զարկ տալու նաև մշակույթին, գրականությանը: Ուղեցույց ունենալով ռուսական ռեալիստական գրականության ավանդները, արևելահայ գրողները գեղարվեստական գրականության առանցքային հարցերից մեկը դարձրին սոցիալական անհավասարության, աշխատավոր ժողովրդի դաժան կեղեքման, նրա ընդվզման հարցը: Աբովյանի, Պռոշյանի, Աղայանի ստեղծագործություններում ամենից առաջ երևում է արևելահայ գյուղն իր ներքին, սոցիալական վիճակով ու պայքարով:

Միանգամայն այլ ճակատագիր վիճակվեց մեր ժողովրդի արևմտահայ հատվածին. այն շարունակեց ապրել մշակույթով անհամեմատ ցածր մակարդակի վրա գտնվող և կրոնով տարբեր թուրքական բարբարոսական լծի տակ, ենթակա տիրապետող տարրի և նրա կամակատար հայ վաշխառուների կամայականություններին:

Սակայն նոր դարը տարբեր էր նախորդ ժամանակաշրջանից: Դա օսմանյան բռնապետության ճիրաններում ապրող ժողովուրդների ազատագրության շրջանն էր: Թուրքիայում տեղի ունեցած տնտեսական ու քաղաքական իրադարձությունները ծայր էին տվել հպատակ ժողովուրդների պարբերական ապստամբություններին: Մեկը մյուսի հետևից պոկվել էին այն շղթայի օղակները, որ դարեր շարունակ կաշկանդել էր բազմաթիվ ժողովուրդների ձեռքերը, կասեցրել նրանց մտավոր զարգացումը:

Հայերը պատրաստ էին հետևելու բախտակից ժողովուրդների օրինակին, ձեռք բերելու քաղաքական և տնտեսական ազատություն, մանավանդ որ լուսավորական շարժման, ազգային ուժերի համախմբման համար որոշ նախապայմաններ էին ստեղծվել Սուլթան Մեջիդի 1839 թ. հայտնի ռեֆորմներից և



1856 թվականի Թանզիմաթից հետո: Հայերին հաջողվել էր գեթ կրոնական, կրթական գործերի ղեկավարման սահմանում ձեռք բերել որոշ ինքնուրույնություն: Ստեղծվել էր ընտրական մի մարմին, «Ազգային ժողով» մեծադղորդ հորջորջմամբ, որն ուներ իր կանոնադրությունը, նույնքան ցուցադրող անունով՝ «Ազգային սահմանադրություն»: Անկախ այն փաստից, թե հայ բուրժուազիան ինչպիսի հեռավոր հույսեր էր կապում այդ բոլորի հետ և ինչպիսի երազներով էր օրորվում, վերոհիշյալ սահմանադրությունը նկատելի դեր կատարեց ժողովրդական լայն զանգվածների քաղաքական ակտիվացման, ազգային ինքնագիտակցության բարձրացման, լուսավորական շարժման ծավալման, դավանաբանական անիմաստ և ուժեր ջլատող պայքարի թուլացման գործում:

Արևմտահայ գրականության զարգացման առաջին շրջանը զուգադիպեց քաղաքական այս զարթոնքին, շարունակվեց երեք տասնամյակ, այսինքն՝ մինչև ռուս-թուրքական պատերազմի վերջը, երբ համիդյան բռնապետությունը լայն ճակատով անցավ պայքարի՝ ազգային ամեն մի խլրտման դեմ. արգելվեց հայ ժողովրդի պատմության, աշխարհագրության դասավանդումը դպրոցներում, փակվեցին հայկական թատրոնները, այլևս չէր լսվում հայ երգը:

Սույն հոդվածում մեզ զբաղեցնող ժամանակաշրջանի համար բնութագրական է ոչ այնքան գեղարվեստական գրականության զարգացումը, որքան հասարակական մտքի պոռթկումն իր բոլոր արտահայտություններով՝ մշակութային, կրթական միությունների ստեղծում, թատրոն, երաժշտություն, հրապարակախոսություն և այլն: Դա սովորական լուսավորական շարժում չէր՝ որի նպատակը լիներ զարկ տալ մարդկանց հոգևոր կյանքին, մտավոր զարգացմանը. ուներ քաղաքական խոր բովանդակություն: Օրակարգի հարց էր մոտ հինգ դարու բռնապետական տիրապետության տակ խեղճացած մի ժողովրդի ազգային ինքնագիտակցության զարթոնքը: Ռոմանտիկ էր մթնոլորտը, լիցքավորված ազատագրական պայքարի պաթոսով: Համախմբումներ, ծրագրեր, ճառեր, ազգային, հասարակական գործիչների առատություն, միամտության հասնող հավատ՝ ամեն կարգի հռետորների, նրանց տված խոստումների նկատմամբ: Կղերական գաղափարախոսության թուլացում, հայրենասիրական պոռթկումների, պատմական անցյալի վաղուց հուշ դարձած հերոսական դեպքերից ուժ առնելու ձգտում. այս էր օրվա ոգին և այդ ոգին էլ պայմանավորելու էր գրականության զարգացումը, թելադրելու ուղղությունը, սեռը:

Բուռն զարգացան չափածոն ու դրամատուրգիան: Ղ. Ալիշանի, Մ. Պեշիկթաշլյանի, Պ. Դուրյանի բանաստեղծությունները իրենց հայրենասիրական պաթոսով արագ տարածվեցին, եղանակավորվելով անցան շրթեշուրթ և հասան մինչև մեր օրերը: Դրամատուրգիան, գերազանցապես պատմական ողբերգություններ, նույնպես կատարեց իր դերը, հայ թատրոնի բեմերից ազդարարելով, թե հայերի ներկա վիճակը վերուստ սահմանված չէ, որ հայերն էլ անցյալում ունեցել են իրենց պետականությունը, ազատությունը և կարող են նորից այն ձեռք բերել: Այդ պիեսները խանդավառեցին երիտասարդությանը, սակայն գրականության մեջ տեղ չգրավեցին: Հարյուրավոր ողբերգություններից,— որոնք բեմադրվել են հայ թատրոնում,— այսօր հնարավոր չէ թեկուզ մեկը բեմ հանել: Դրանց պակասում էր՝ գեղարվեստական ուժը, որի շնորհիվ միայն պիտի կարողանային համընթաց քայլել սերունդների հետ:

Քաղաքական այս մթնոլորտը, որի դրոշակակիրն էր բարձրացող բուրժուազիան, շղարշում, փակում էր սոցիալական անարդարությունից ու աշխատավորների շահագործումից առաջացած մեծ ողբերգությունը: Լիբերալ գրողները, հրապարակախոսները ձգտում էին վարագուրել դասակարգային պայքարը, օրվա հիմնական հարցը համարելով հայ ժողովրդի միասնականության ամրապնդումը, դավանական, սոցիալական տարբերությունների անտեսումը:

Իրականում հայ աշխատավորը երբեք այնպիսի ծանր տնտեսական տագ-

նապի ու շահագործման մեջ չէր եղել, որքան այդ ռոմանտիկ շրջանում։ Ի վերջո խանդավառ մթնոլորտը տիրապետում էր Պոլսում և Զմյուռնիայում, որոնք հայ կուլտուրայի կենտրոններ էին, բայց ոչ բուն հայ իրականությունը։ Արևմտյան Հայաստանի տարբեր գավառներում ապրող մոտ 3 միլիոն հայեր գտնվում էին շահագործման, կեղեքման այնպիսի ծանր վիճակում, որի նմանը չէր եղել մարդկության պատմության ողջ նախընթաց շրջանում։ Թուրքական կառավարությունը օրեցօր ավելացնում էր հայ գյուղացուց գանձվող հարկերի չափն ու տեսակները, այդ հարկերի գանձման համար գործադրելով ամենավայրագ եղանակներ, որոնց իրականացմանը մասնակցում էին հայ որոշ մեծամեծներ՝ ամիրաները, վաշխառուները, գյուղական ջոջերը, քանի որ թուրքական կառավարությունը նրանց միջոցով էր գանձում պետական տուրքը։

Հայ աշխատավորության համար յուրահատուկ մի պատուհաս էր եկեղեցին։ Հոգևոր մարմինները, համագործակցելով պետական պաշտոնյաների հետ, հայ գյուղացուց ստացվող իրենց բաժինը վաղուց դուրս էին բերել նվիրատվության սահմաններից, դրել օրինական հարկի շրջանակի մեջ։ Հայ գյուղացին ո՛չ միայն պարտավոր էր եկեղեցուն տալ հացահատիկ, կաթնեղեն, մրգեղեն և այլն, այլև տարվա մեջ մի քանի օր ձրի աշխատել վանքապատկան հողերի վրա, եթե գութան ուներ՝ գութանով, չուներ՝ ձեռքի աշխատանքով։ Հայ գյուղացին հարկադրված էր անել այս բոլորը ո՛չ միայն իր հետամնացության պատճառով, հավատալով թե այլապես քահանան իրեն կամ իր հարազատներին դժոխք կուղարկի, այլ վախենալով բանտից ու աքսորից, քանի որ շատ հաճախ կրոնական տուրքը չտվող մարդանց կառավարության մոտ հոգևոր պետերը ներկայացնում էին որպես անբարեհույս և խռովարար տարր։ Այս բոլորը քայքայում էր հայկական գյուղը, մղում զանգվածային գաղթի, մասնավորապես պանդխտության, որն ամենամեծ չարիքն էր դարձել. օսմանյան կայսրության մայրաքաղաքն էին թափվել 50.000-ից ավելի գավառացի երիտասարդներ, հայրենիքում երեսի վրա թողած իրենց հարսնացուներին, կանանց, երեխաներին։ Եկել էին նրանք Պոլիս՝ փող վաստակելու, գյուղում ունեցած իրենց պարտքերը մարելու սին հույսով։

Այս էր բուն արևմտահայության վիճակը այն օրերին, երբ պոլսահայ բուրժուազիան քաղաքական խրախճանքի մեջ՝ նրա անունից հանդես էր գալիս սնամեջ ճառերով, կոչերով։

Սահմանադրական պատրանքների մեղրալուսնային այդ օրերին, արհեստավորության ու ամիրայության բուռն պայքարի շրջանում, ստեղծվում է յուրահատուկ մի գրականություն, որը հայտնի է մեր օրերում «գռեհիկ սեռի գրականություն» հորջորջումով՝ իր պարունակած որոշ անպատշաճ արտահայտությունների պատճառով։ Պամֆլետային բնույթ ունեցող չափածո այդ գրականության մեջ սոցիալական սուր հարցեր չեն արծարծվում, բայց առաջին անգամ քննության նյութ են դառնում ամիրայական խավի առօրյան ու կենցաղը, նրանց ներքին կյանքը, ցույց է տրվում, թե ժողովրդի աշխատանքի արդյունքով հարստացած և կղերամիտ գրչակների կողմից ազգի բարերար, մարդասեր ներկայացված այդ խավը ինչ հարաբերությունների մեջ է եղել իր զոհերի հետ։

Այս գրականության մի մասը ժամանակին բազմացվել է, որպես թռուցիկ տարածվել ժողովրդի մեջ, բայց այնպես էլ մոռացվել է։ Մի մասը, սակայն, արտագրվելով հատուկ կազմված ժողովածուների մեջ, սերնդեսերունդ անցնելով, հասել է մեր օրերը, տպագրվել մամուլում («Անահիտ», 1931—1932)։

Առաջին բանը, որ աչքի է զարնում այս գրականության մեջ, նրա հարձակողական, անզիջող, թունոտ ոգին է, մերկացնող էությունը, այն էլ այնպիսի ամիրաների հասցեին, որոնց մասին մարդիկ մինչ այդ միայն շողոքորթող տողեր են գրել։ Գրական արժեքից բավականաչափ հեռու, պարզունակ շարադրանքով, տեղ-տեղ գռեհիկ ոճով այդ ոտանավորներն ուղղված են ո՛չ միայն ամիրայական դասի, այլև նրանց կամակատար գրողների ու հոգևորական գործիչների, անգամ պատրիարքների դեմ։ Դրանով ավելի է ընդգծվում նրանց հասարակական արժեքը։



Բերենք մեկ-երկու նմուշ «գռեհիկ» այդ գրականությունից։ Գրողներից մեկը, փառաբանելով արհեստավորների հայտնի ցույցի կազմակերպիչ գինեպան Իսկենդերին և նրան համարելով «հայոց ազգի պարծանք», հարձակվում է այն ամիրայի վրա, որն ասել է, թե իր ափի մեջ 90.000 հայ կա, եթե սեղմի, բոլորի հոգին կհանի։ Էսնաֆ դասի շահերի պաշտպանը զայրագին գրում է.

**Դու ո՞ր շունն ես, շան որդի շուն,**
**Ուրացողի, փասակա հանգույն,**
**Սուր, թո՞փ ունիս, թագավո՞ր ես,**
**Այսքան ազգը քենե վախնա՞...**

Մերկացնելով Ճանիկ ամիրային, որը տարածել է, թե ինքը բազմաթիվ որբ աղջիկների է օգնել, ամուսնացրել, ապրուստով ապահովել, բանաստեղծության հեղինակը բացատրում է, թե որքան է արժել այդ «ողորմությունը» հեգ աղջիկներին, որոնց այդ ամիրան շահագործել է աշխատանքում և արատավորել նրանց պատիվը։ Նա ասում է, թե նրանցից 24-ի անունն ու աշխատանքի վայրը հայտնի է, և մարդիկ կարող են գնալ ու ստուգել։

**Բաղնիքի մեջ անոնք կուգան,**
**Ոտքդ շփեն, չըպուխդ տան,**
**Դու գիտես թե մենք չե՞նք գիտեր,**
**Ով անօրեն, անբարտավան։**

Այսպիսի մերկացնող ու ցասումնալից քառյակներ ենք գտնում նաև Կելկել ամիրայի մասին։

Ամիրաները այս հարձակումներին պատասխանել են երկու ճակատով. մի կողմից՝ փորձել են իրենց հակառակորդներին լռեցնել կառավարության միջամտությամբ, ձերբակալություններով, մյուս կողմից՝ իրենց վարձկան գրիչների միջոցով։ Օրինակ՝ Խ. Միսաքյանը, որ պահպանողական խավերի պաշտոնական պոետն է համարվել, գրել է հենց այդպիսի գռեհիկ ոտանավորներ՝ արհեստավորների դեմ, իսկ ժամանակի հետադիմական շարժման պարագլուխ Հովհ. Տերոյենց-Չամուռճյանը փորձել է տեսականորեն հիմնավորել շահագործման անհրաժեշտությունը։ Տերոյենցը, որի մասին Պարոնյանը գրել է, թե իր աղոթքներում ասում էր «Ամիրաներ տուր ինծի, աստված, և ամեն բան ունեցած կըլլամ» (Երկեր, հատ. 2, էջ 42), իր տխրահռչակ «Երևակ» պարբերականում գրում էր, թե միշտ էլ, դեռևս հեթանոսական շըրջանից, եղել են տերեր ու ծառաներ, ծառաներն աշխատել են տերերի համար, թե մարդիկ տուրք են վճարել ո՛չ միայն տերերին, այլև եկեղեցու պաշտոնյաներին, որպեսզի փրկեն իրենց հոգին, թե դա է օրինական ճանապարհը. «Ամիրաներուն բարբարոս և անգութ և ասոնց (այսինքն՝ առաջադիմականներին) ազգասեր և ազգախնամ անունը տալը,— ասում է Տերոյենցը,— բառերուն նշանակությունը հակառակի դարձնել է» («Երևակ», 1861, № 111, էջ 72)։

Ուշագրավ է Տերոյենցի այն դիտողությունը, թե հավասարություն ու արդարություն քարոզող մարդկանց «մտքի մեջ գաղիացվոց քոմունիստներուն սկզբունքն ալ մտած է», թե միշտ «ամեն ատեն աղքատ կա աշխարհքս, բայց հավատք եղած ատենը աղքատները չեն ապստամբիր» (նույն տեղը, № 119), թե թագավորները ժողովրդի հայրն են, քահանաները կրթիչ դաստիարակ, ազնվականները՝ երեց եղբայր, թե քոմունիստների քարոզած «սոսկալի հավասարութենեն մեզ ազատողը կրոնքն է», իսկ Միք. Նալբանդյանի քարոզած վարդապետությունը «մոլորական և գայթակղեցուցիչ է» (նույն տեղը, № 123)։

Ինչպես տեսնում ենք, Տերոյենցը բավականաչափ անսքող է քարոզել ամիրաներին հնազանդելու անհրաժեշտությունը։ Բնական է, որ «գռեհիկ գրականության» հեղինակներն էլ չէին խնայելու նրան։ Զանց առնելով առավել

անպատշաճ արտահայտություններով լի քառյակները, բերենք համեմատաբար զուսպ մի քանի տող.

**Քեզ ալ կըսեմ, ո՛ անհավատ, չարագրգիռ Չամուռճյան,**
**Պապադավան և անհոգի, կաշառակեր փտած շուն:**
**Մինչև ե՞րբ դուն պիտի դիմես, վատ աներես, լրբության,**
**Մինչև ե՞րբ կուգաս քանդել հայոց նախանձելի կենաց տուն:**

Իսկ Խաչատուր Միսաքյանի մասին ասված է.

**Էյ էդեպսիզ, փիս Միսաքյան.**
**Երախտագետ դու ես միայն**
**Ամիրային, ոչ թե ազգին...**

Ամիրաների ու նրանց գաղափարախոսների դեմ ստեղծված այս գրականության հեղինակները, որոնցից միայն մեկի՝ Կարապետ Պապազյանի անունն է հասել մեզ, արտահայտել են արհեստավորության շահերը: Նրանց չի զբաղեցրել գավառներից Պոլիս թափված պանդուխտների վիճակը ու շահագործումը նույն այդ հարուստ խավի կողմից, էլ չենք խոսում առհասարակ գավառի հայության վիճակը: Հրապարակախոսության և գրականության մեջ հասարակական այդ խավի շահերի պաշտպանությամբ առաջինը հանդես եկան դեմոկրատական հոսանքի պարագլուխներ Հ. Սվաճյանը, Հ. Պարոնյանը, Պ. Դուրյանը և ուրիշներ:

Սվաճյանը 1860 թ. հունվարին իր ընթերցողներին հայտնելով, թե Թուրքիայի հայերի գործերով զբաղվող մի մարմին, այսինքն՝ Ազգային խորհուրդը, չի կարող բաղկացած լինել միայն ամիրաներից ու էսնաֆներից, թե պետք է այնտեղ իրենց ձայնն ունենան հասարակական բոլոր խավերի ներկայացուցիչները, առաջ է քաշում հատկապես աշխատավոր խավի «բեռ կրող, պատ հյուսող, երկրագործ» խավի մասնակցության հարցը: Նույն հոդվածից իմանում ենք, որ Հայաստանից Պոլիս թափված այդ պանդուխտ բեռնակիրներն էլ «Մեղուն» համարել են իրենց միակ բարեկամն ու պաշտպանը և իրենց սեղանների վրա առաջին բաժակը բարձրացրել են «Մեղվի» կենացը:

Գավառի մեծ ողբերգությունը գրականության նյութ դարձնելու առաջին պատիվը պատկանում է Գ. Սրվանձտյանցին: «Արծուի Վասպուրականի» պարբերականի 1862—1863 թթ. միացյալ համարում տպագրած «Ծինական հայոց կյանք ի Հայաստան» հոդվածում նա մեծ հուզականությամբ նկարագրել է հայ գյուղի տնտեսական ամենածանր վիճակը, նրա քայքայումը:

Հոդվածի առաջին մասում նկարագրվում է մի կին, որը երեխան գրկին՝ դաշտերից ցախ է հավաքել, որպեսզի քաղաքում հագուստով փոխի, երեխաների մերկությունը ծածկի, բայց ուժասպառ ընկել է պատի տակ: Կիսամեռ երեխան թույլ շարժումներով ծծում է մոր կուրծքը: Ինքնին ցնցող մի տեսարան է սա՝ ավելի տպավորիչ, քան կարող էր լինել ընդարձակ մի հետազոտություն կամ վեպ: Հոդվածի երկրորդ մասում նկարագրվում է հայ գյուղացու տառապալից կյանքի մի այլ կողմը: Տան տղամարդը, պարտքի մեջ խրված, իր տունն ու տեղը գրավ դրած, մեկնել է Պոլիս՝ փող վաստակելու: Նա ժամանակին չի կարողացել վերադառնալ ու պարտքը տալ: Անխիղճ պարտատերը եկել, գրավել է ո՛չ միայն նրանց ամբողջ ունեցվածքը, այլև՝ կնոջը, «յուր ամուսինը, յուր երկու տարվան առած նորահարս ամուսի՞նը», մղկտում է Սրվանձտյանցը՝ թշվառության ցնցող այս տեսարանի վարագույրը փակելիս և եզրակացնում.

«Դու տեսե՞ր ես նոցա մանուկները. կաթն ու ցավն միասին կը ճաշակեն, պարզ ջուր և դառն քրտինք միասին կը ջամբեն, հացն ու հարվածը միասին կուտեն: Առանց վարտիքի և շապիկի, մերկ-մերկ՝ մոխիրներու մեջ, արևու և բուքերու առջև կը թավալին, նոցա մատաղ աղջիկները ոտբոբիկ, գլխիբաց, դաշտի մշակաց հետ, նոցա պես ու նոցա հավասար կը տքնին. փշերը կոխելով, տավար շահելով, հաց հանելով, բանջար ժողվելով, մարդ և գազան տեսանելով, երկյուղ և չարիք կրելով, ձեռքով գարի կը քաղեն, ցորեն կը



հնձեն, տան ծառայությունները կը հոգան: Հիվանդ եմ ասել՝ ամոթ է, իրենց կերածն է կորեկ և գարի. ցորենը պարտուց փոխարեն կամ շարք տալու համար միայն կը վաստըկին. եղ կը հանեն, իրենց բաժին չկա» («Արծուի Վասպուրականի», 1862—63, № 3):

Այս էր բուն հայ ժողովրդի վիճակը արևմտահայ գավառում այն օրերին, երբ նույն այդ աշխատավոր ժողովրդին շահագործող մարդիկ մայրաքաղաքում ապրում էին իշխանական դղյակների մեջ, ամենաշռայլ ու փարթամ կյանքով:

Այս բոլորն իմանալուց հետո միայն պարզ կարող է դառնալ, թե ինչո՛ւ պոլսական խելացնոր ոգևորության մթնոլորտում բացառություն է կազմել Հ. Պարոնյանը, անխնա ծաղրել է լիբերալ շաղակրատներին, ծաղրել իր գրեթե բոլոր ստեղծագործություններում, իմանալով հանդերձ, որ ազատագրական գաղափարների պրոպագանդան առաջադիմական էր այդ տասնամյակում:

Պարոնյանը ծննդավայրից Պոլիս էր եկել սահմանադրական խանդավառությունների ամենամոլեգնոտ օրերին, 1867 թվականին, լսել էր այդ բոլոր ճառերը, բայց և տեսել սոցիալական անհավասարությունը, անմարդկային կեղեքումը հենց մայրաքաղաքում: Եվ հաջորդ տարին՝ 1868 թ., լույս ընծայած իր առաջին գեղարվեստական գործում՝ «Ատամնաբուժն արևելյան» կատակերգությունում, զարմանալի զգաստությամբ՝ դիրքեր էր գրավել հարուստ և քաղքենիական խավերի դեմ, հրապարակի վրա դրել նրանց ընտանեկան, կենցաղային այլանդակությունները և, միաժամանակ, մատնացույց արել հասարակական մի ամբողջ խավի՝ իրենց ֆիզիկական աշխատանքով ապրող, շահագործվող պանդուխտ հայերին ու ազդարարել, որ հայ ժողովրդի ապագան ոչ թե լիբերալ շաղակրատների ձեռքին պիտի լինի, այլ հայաստանցի այդ երիտասարդների: Մեծ երգիծաբանն իր այդ կատակերգության հերոսներից մեկի միջոցով ասում է. «Մեր պանդուխտ եղբայրները ըսել կուզեմ, որ բեռնակրության անտանելի լուծին երկնցնելով իրենց վիզը, հազիվ կրնան իրենց օրական ապրուստը ճարել, փողոցի մեջ, քարերու վրա, գիշերն ալ պանդոկներու մեջ, հեռու հայրենիքեն, զուրկ ընտանիքեն... Որովհետև ազգին վիճակը իմանալ կուզես, բաց ականջներդ, լսե, խորհե և թող աչքերեդ արտասվաց հորդառատ վտակներ վայր իջնան ծնոտդ ի վայր, անոնց համար կը խոսիմ, վասնզի Հայաստանի զավակունք են և հայրենիքը իր ազատության հույսը անոնց բազուկներուն վրա դրած է, այն բազուկներուն, որք այսօր տկարանալու վրա են և թերևս օր մը բոլորովին ոչնչանան հայրենյաց հուսո հետ» (Երկեր, հատ. 1, էջ 120):

Պարոնյանը խոսում էր այն պանդուխտների մասին, որոնց գավառում թողած ընտանիքների վիճակը տեսանք Սրվանձտյանցի նկարագրությունից:

Երգիծաբանը պանդուխտ հայերի նկատմամբ այդ ջերմ վերաբերմունքը պահեց մինչև վերջը: Հիշենք «Մեծապատիվ մուրացկաններ» երգիծավեպը, որտեղ մարդկային ամենավեհ նկարագրով են գծված միայն երկու հայ բեռնակիրները, երկուսն էլ պանդուխտ հայեր անշուշտ: Այդ նույն բանը նկատում ենք «Լեռը մարգարեին քովը չերթա նե՝ մարգարեն լեռան քովը կերթա» ներահայտ երգիծավեպում: Վերջապես այդ նույն վերաբերմունքն ենք տեսնում «Թատրոն մանկանց» պարբերականում, որտեղ նա տպագրել է չորս առույգ հայ պանդուխտ բեռնակիրների ներկայացնող մի նկար, հետևյալ բացատրությամբ. «Ահա աշխարհ, ահա մարդ»:

Գավառի հայերի ծանր վիճակը նույնպես հաճախ է զբաղեցրել երգիծաբանին: Նկարագրելով Բաղեշի շրջանի հայ գյուղացիության տնտեսական և քաղաքական ստրկական վիճակը, նա «Թատրոնում» գրել է. «Գավառաց մեջ հայերն ապահովություն չունին ոչ ստացվածքի, ոչ կյանքի և ոչ պատիվի. խեղճերը կը կողոպտվին, կանպատվվին և այս վիճակին մեջ բազկատարած գթություն կը հայցեն: Գավառաց մեջ հայոց հպատակությունը գերություն է, գերութենեն ավելի գեշ է: Ի՞նչ է այս խեղճերուն հանցանքը, ի՞նչ է այս

մարդոց մեղքը, որ այսչափ չարչարանոք կը քաշեն: Ինչո՞ւ համար գերիներու տրված ազատությունը անգամ չեն կրնար վայելել»:

Պարոնյանը համարձակ ձեռնոց է նետում նաև հոգևոր իշխանություններին. հիշենք «Մեծապատիվ մուրացկաններ» երգիծավեպում ներկայացված քահանայի կերպարը, «Պաղտասար աղբարում» դատաստանական խորհրդի զավեշտային տեսարանը: Իսկ հրապարակախոսության մեջ նա այնքան հեռուն է գնում, որ ուղղակի հայտարարում է թե ժամանակն է, որ հայ ժողովուրդը հույսը կտրի հոգևոր պետերից և իր ճակատագրի մասին մտածի ինքը. «Ժամ է արդ,— գրում է նա,— որ ժողովուրդն մայր աթոռեն և պատրիարքարանեն հույսը կտրելով՝ ինքզինքն հովվե, ինքզինքը պաշտպանե: Հերիք ինքզինքնիս խաբեցինք և մինչև այս աստիճան իջանք» («Թատրոն», 1874, № 48):

Նման համարձակ մերկացումների համար Պարոնյանի թերթերը քանի՜ցս փակվել են, սակայն պատնեշի վրա կանգնած խիզախ խմբագիրը շարունակել է պայքարը նույն ուժգնությամբ, հայտարարելով՝ «Լավ է ժողովրդյան օրհնությամբ մեռնիլ, քան թե անոր անեծքովը ապրիլ»:

Սոցիալական հարցը Պարոնյանի ստեղծագործության առանցքային խնդիրներից է. ավելորդ ենք համարում մանրամասնությունների մեջ մտնել, քանի որ այդ մասին շատ է գրվել, և մենք էլ ավելի հանգամանորեն խոսելու առիթ ենք ունեցել Պարոնյանին նվիրված մեր աշխատություններում:

Գավառի տնտեսական ողբերգությունը գրականության նյութ դարձնելու գործում նշանակալից դեր է կատարել վանեցի գրող Սեդրակ Տեր-Սարգսենցը (Տնկանց): Ապրած լինելով գավառում ու մոտիկից ծանոթ իր հայրենակիցների վիճակին, իր «Ծահենն ի Սիպիր» հայտնի վեպում (տպ.՝ Կ. Պոլիս, 1877), նա ամենայն հարազատությամբ նկարագրել է վանեցի գյուղացիության օրհասական վիճակը: Այդ վեպը իր սյուժետային կառուցվածքով, գեղարվեստականությամբ նշանակալից երևույթ չէ, անշուշտ, սակայն ուշագրավ է իր հասարակական արժեքով, բարձրացրած հարցերով: Վեպում առանցքային հարցը պանդխտության ու գաղթականության դեմ պայքարելու կոչն է, այդ երևույթը հեղինակը համարում է մեծագույն չարիք և գյուղի քայքայման հիմնական պատճառներից մեկը: Գրեթե նույն ժամանակամիջոցում պանդխտության դեմ ցնցող տողեր են գրել Միք. Նալբանդյանը «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ» նշանավոր աշխատությունում և Գ. Սրվանձտյանցը արդեն հիշատակած հոդվածում, Տնկանցն էլ նույնպիսի կրքոտությամբ դեմ է դուրս գալիս այդ երևույթին: Բայց սա չէ նորությունը վեպում, այլ գավառի հայերի տնտեսական վիճակի հարազատ ցուցադրումը:

Ինչպես արևելահայ գրականության մեջ Խ. Աբովյանը, Պ. Պռոշյանը, Ղ. Աղայանը հայ գյուղացուն արյունաքամ անող տզրուկներ են համարել պետության պաշտոնյաների հետ նաև գյուղի հայ քյոխվաներին ու հոգևորականությանը, Տնկանցն էլ նույն այս եռյակին է ներկայացնում որպես հայ գյուղացուն շահագործող ցեցեր: Այստեղ էլ, թուրք և քուրդ բեկերի, աղաների կիսատ թողածը շարունակում են հայ մեծամեծները՝ ռեսն ու վաշխառուն, հոգևորական դասը, խլելով դժբախտ գյուղացուց նրա վերջին ունեցվածքը: Հայ ռեսը, օրինակ, առանց հաշվի առնելու, թե գյուղացու մոտ մնացե՞լ է որևէ բան, պահանջում է, սպառնում, վախեցնում բանտ ու աքսորով: Իսկ գյուղացիները, հուսահատության դուռը հասած, պոռթկում են, վիճում, ընդդիմանում:

«Ի՞նչպես պեռլ պեռլ կը բրդե մեր Ռես Միրզոն,— ասում է նրանցից մեկը,— մեր ճտի պարտքն է, տանք պիտի, կասե, չի հարցներ՝ էլ տալու բան ունի՞ք, էլ կոր պլիկ մը մնացե՞ր է ձեր ծոց, ձեր կնկտոց ճակատը, չորցած, ցամքած հոգի մ՚ունինք, զենիկ էլ առեք, պրծնենք... Տվե՛ք, տվե՛ք, հա՛, տվեք... ի՞նչ տանք, ախպեր... կտոր մը կորեկ հաց ունինք, այն էլ մեր բերանը չի հասած՝ արտի մեջ կերեն մնձուր կը դարձնեն, միևնույն պահուն թրով թվանքով մարդիկ կուգան հոգվույդ վրա կը կանգնին, տուրք կուզեն, տուգանք կուզեն, դուն բան չունիս, երդում պատռտում արա, անոնց ձեռք թող՝



ոտքեր պագիր, պոռա, կանչե, թե ցորեն չունիմ, ասա թե կուտ մը կորեկ կար, այն էլ վառեցին, իսկ նա խոսք չի հասկնար... Նա չար գրողի պես հոգիդ կուզե, վառվել մառվել չի հասկնար, աղեկ մը տփոցը կուտես, հետո վառված կորեկիդ ցորենի հաշվով տասանորդ կուտաս: Ա՜խ, եթե միայն տասանորդ լիներ, այլ հարյուրին հիսուն պետք է տալ. բայց դու ստակ չունիս, ջուխտ մ՚եզ ունիս, որով վար ու ցանք կանես, անոնք քո հույս ապավենդ են, հարկահանը ծեծով տոկանքով կառնե կը տանի զանոնք: ...Պարտքատեր կուգա խարիր կուռուշի տեղ խազար կուզե... փարա կուզե. քիչ մը թթու խոսելուդ պես՝ կը տանե զքեզ բռնատուն կը թալե և այնտեղ կը մնաս մինչև ոսկորներդ փտտի» («Ծահենն ի Սիպիր», էջ 160—161):

Ահա և հայ աշխատավոր գյուղացու մյուս պատուհասը՝ հոգևորականը. «Պարտքատերը յուր ոտք շեմքեն դուրս չի ձգած՝ քիթ բերնի վրա վազելով կուգա սևավոր մարդ մը, ծոցեն խաչ մը կը հանե, համբուրե կըսե, խաչհամբույր կուզե, ժամ կը գնա, երկու դժոխի արքայության վրա սարեն ձորեն գլխից դուրս կուտա, փարա տուր, գավազանապտուղ տուր, կըսե, զավակդ կամ հերդ մերդ մեռերի, աստված հոգին լուսավորե կըսե, կողոպուտը կը պահանջե... Այսպես ահա մեր ողջ անձը պրինտար եղեր է, իսկի տեղ դարման չունինք, երթանք մեր ոտքով գերեզման մտնենք, ազատինք այս զուլումներեն» (էջ 162):

Գյուղացին հասկանում է շատ բան, բայց ոչինչ չի կարող անել. թուրքական իշխանությունները, հանձին եկեղեցու տեսնելով իրենց համար հուսատու հենարան, հլություն, համբերություն քարոզող մի կենտրոն, պաշտպանում են նրա իրավունքները, լսում վարդապետներին ու երբեմն պատժում ըմբոստ գյուղացիներին:

Տեր-Սարգսենցը նկարագրում է ցնցող մի պատկեր. Աղթամարի Նվիրակ վարդապետը շատ է չարչարվել, բայց չի կարողացել մուղսի Նազարեթի կնոջից խլել հոգեբաժին եզը՝ որպես նրա ամուսնու հոգու փրկագին: «Չորս հատ եթիմ ունիմ կասե, ունեցած չունեցածս երկու եզ, երեք էծ ու չորս հատ մաքի է, մեկ եզն քեզ տամ, հապա մեր դատող բանող ո՞րը կը մնա, մեկ եզով վարուցանք կանե՞ն»: Վարդապետը ասել է. «Ծո լեզվանի կնիկ, քո էրկան հոգին չե՞ս մտածեր որ մեջ երկինք, մեջ գետինք կախված, ճոլոլիկի պես կերթա-կուգա, առանց հոգեբաժնի չի կրնար աստուծո երեսը ելնել, հոգեբաժինը հոգիներու անցագիրն է»: Իսկ պառավը պատասխանել է. «Էրկանս հոգին ազատելու համար իմ ճժե՞րս մեռցնեմ... հոգին թող երթա աստված հոգա, խաց չուտեր, խալավ չի հագնիր, հոգեբաժինն ինչ պետք է անե...» (էջ 176):

Էջեր կարելի է լցնել արևմտահայ գավառի տնտեսական ողբալի վիճակը ցուցադրող նման նկարագրություններով: Բավական է թերթել Պ. Նաթանյանի «Արտոսր Հայաստանի», Գ. Սրվանձտյանցի «Թորոս աղբար», Մ. Միրախորյանի «Նկարագրական ուղևորություն ի հայաբնակ գավառս արևելյան Տաճկաստանի» և այլ աշխատություններ, տեսնելու համար թե ինչպիսի՜ համատարած թշվառություն, տգիտություն ու շահագործում է տիրել ողջ Արևմտյան Հայաստանում, թե որքան կտրված են եղել գավառից՝ Պոլսում նստած, Հայաստանի անունից խոսող, նրա բախտը իրենց ձեռքը վերցրած մարդիկ:

Սոցիալական պայքարի հարցը միանգամայն այլ տեսանկյունից է բարձրացված Պետրոս Դուրյանի ստեղծագործություններում, մասնավորապես պատմական ողբերգություններում և «Թատրոն կամ թշվառներ» դրամայում: Հայտնի է, որ մինչև Դուրյանը հայ դրամատուրգիան զարգացել է բացառապես մխիթարյանների կղերա-ֆեոդալական գաղափարախոսությամբ և մխիթարյանների ստեղծած սխեմաներով: Այդ ոգով են գրված ո՛չ միայն մխիթարյանների վանքում հորինված ու բեմադրված տասնյակ պիեսներ, այլև Ս. Հայկունու, Խ. Գալֆայանի, անգամ Մ. Պեշիկթաշլյանի ողբերգությունները, որոնցում պատմական անցյալն ամբողջապես ներկայացված է մի հոտ մի հովվի սկզբունքով, այսինքն՝ այն մտայնությամբ, թե պատմական Հայաստանում չեն եղել դասակարգային հակամարտություններ, շահագործում, ներքին ճնշում, թե հայ ժողովրդի գլխին եկած բոլոր չարիքներն արդյունք են

արտաքին միջամտությունների, հարձակումների և հայ նախարարական տների անմիաբանության, որոշ նախարարների, իշխանների դավաճանության: Այլ խոսքով ընդունել են Տերոյենցի այն տեսակետը, թե թագավորը ժողովրդի հայրն է, իշխանները, զորականները՝ նրա պաշտպանները, հոգևորականները՝ նրա հոգու փրկիչները:

Արևմտահայ բեմում ցուցադրվող նման պիեսներ եթե մի կողմից կատարում էին դաստիարակչական դրական դեր հայ ժողովրդի մեջ ազգային ինքնագիտակցություն զարգացնելու, նրան քաղաքական պայքարի մղելու, դավանական տարբեր հատվածների միջև համերաշխություն ստեղծելու տեսակետից, ապա՝ վնասակար դեր էին խաղում հանդիսականի տեսադաշտից շահագործող դասակարգին հեռու պահելով՝ ապակողմնորոշելով նրան: Պատմական այդ ողբերգություններում անտեսվում էր աշխատավոր ժողովուրդը. այնտեղ տեսնում ենք թագավորներ, իշխաններ, նախարարներ, բայց ոչ շինականին, արհեստավորին, մտքի մշակին. իսկ դա թուլացնում էր շահագործող խավերի դեմ մղվող պայքարը: Անհրաժեշտ էր մի համարձակ գրող, որ հենց նույն այդ բեմից խոսեր ժողովրդի հետ այլ լեզվով, անցյալը ներկայացներ իր հարազատ վիճակում, ասեր, թե թագավորները երբեք էլ ժողովրդի հայրերը չեն եղել, այլ նրանց ճնշողներն ու շահագործողները, որ թագավորներն ու իշխանները ժողովրդին ճորտական վիճակի մեջ պահելով, շահագործելով է որ դիզել են այդքան հարստություն, այդ բարիքները ստեղծողներին պահելով ամենածանր կարիքի մեջ:

Ահա այս ճշմարտությունն ասողը դարձավ 19—20 տարեկան մի պատանի՝ հայ չափածո գրականության ամենատաղանդավոր ներկայացուցիչներից մեկը՝ Պետրոս Դուրյանը:

«Անկումն Արշակունի հարստության» ողբերգության հերոսներից մեկը՝ Ծահանդուխտը, ասում է. «Իրավունք ունին խեղճ զինվորները, իրենց արյամբ թագավորին և ազնվականաց երջանիկ ապագան կգնեն, բայց դարձյալ անոնցմե կը նախատվին, վասնզի ձայն չունին, վասնզի ցնցոտին, մարդը անարգության կը դատապարտե... Աղքատն իր տնակին մեջ չոր և նեխուտ հացով կը գոհանա, իսկ հարուստին ապարանքը նոր խորտիկներ կը հնարվին... Զինվորը պատերազմի փողին գոռումեն կը սարսռի, վասնզի իր սիրելիեն պիտի բաժնվի, թագավորը անդին կույս աղջիկ մը կառևանգե մոր գրկեն... ի՞նչ սոսկալի են ասոնք, ո՞հ, որչափ երջանիկ եմ, որ աղքատ ծնա. աղքատության մեջ սիրտը չի կորսվիր» (Պ. Դուրյան, Երկեր, հ. Բ, էջ 215):

«Ի՞նչ է թագը,— ասում է նույն ողբերգության հերոսներից մի ուրիշը,— թռչող աստղ մը, ի՞նչ է ծիրանին, ժողովրդյան արյամբը կարմրած պատանքի կտոր մը, զոր դարձյալ ժողովուրդը կը կարկտե, ի՞նչ է պալատը, վիրապ մը, ուր մարդիկ շղթա և տապար կը կրեն իրենց նմանները հարվածելու»: Դուրյանի խոր դեմոկրատիզմի արտահայտությունն է այն, որ նա հասարակական տարբեր խավերի մեջ ամենից արժանավորներ է համարում ֆիզիկական աշխատանքով ապրողներին, ճակատի քրտինքով ընտանեկան համեստ բույնի մեջ իրենց երջանիկ զգացողներին: «Որչա՞փ երջանիկ է այն կինը, որ երեկոյան իր ամուսնույն քրտինքը կը սրբե...» (Նույն տեղը, էջ 228):

Պատմական անցյալին այդքան խորաթափանց ակնարկ նետող բանաստեղծը չէր կարող չվերանայել նաև այն գնահատականը, որ պահպանողական գրողները տալիս էին եկեղեցուն, նրան ներկայացնելով որպես մարդկանց հոգու փրկության հենարան, իսկ հոգևորականներին՝ ժողովրդի հոգևոր հայրեր: Ահա հոգևորական հերոսներից մեկի՝ Սուրմակի բնութագիրը. «Այս մարդը խաչը կը կոխկրտե, ուրիշին պաշտել կուտա, այս մարդը սիրտ չունի և ուրիշներուն սիրտ կը քարոզե, այս մարդը փիլոնին տակ դաշույն ունի և կոչնակին զանգյունին մեջ սպանելույն վերջին հեծեծանքը կը խեղդե» (Նույն տեղը, էջ 210):

Եթե նկատի ունենանք, որ պատմական անցյալի վերհանումը մեր գրողների մոտ եղել է միջոց՝ ժամանակակից իրադարձությունների ու մարդկանց մատնանշման, և հաճախ այնքան թափանցիկ, որ մարդիկ Պեշիկթաշլյանի



հերոսներից Կոռնակի մեջ ճանաչել են Վատիկանի մոլի գործակալ Անտոն Հասունյանին, ապա պարզ կարող է դառնալ, թե Դուրյանը որքան համարձակ է քննադատել հենց իր ժամանակի մեծահարուստ ամիրաներին ու հոգևորականներին, մանավանդ որ այդ ամիրաներից մեկի որդու մոտ նրան տրվել էր իր արժանապատվությունը վիրավորող պաշտոն:

Բայց Դուրյանը միայն պատմական անցյալի պատկերմամբ չէ, որ ներկայացրել է սոցիալական հակամարտություններ, հարուստի ու աղքատի միջև ընկած խորխորատը, օրվա հացի կարոտ մարդկանց ողբերգությունը: Նա սոցիալական դրամայի հիմնադիրն է արևմտահայ գրականության մեջ իր «Թատրոն կամ թշվառներ» երկով, որտեղ, Վ. Հյուգոյի նկատելի ազդեցությամբ բարձրացնում է շատ ցավոտ ու նուրբ մի հարց, թե տնտեսական կարիքը, աղքատությունը բուրժուական հասարակարգում կարող են մղել մարդկանց անգամ իրենց պատիվը վաճառելու ծանր մեղանչման: Ահա թե ինչպես է հիմնավորում այդ արարքը իր աղջկան դեպի մարմնավաճառություն մղող հայրը. «Ա՜հ, աղջկանս դահիճը կըլլամ, ալ մուրացկան չեմ ըլլար... ի՞նչ պիտի ընե խեղճը այսպես գեղեցիկ ու թշվառ մնալով, մեկը կին չառներ զինքը, վասնզի հայրը մուրացկան է... այո՛, թող անպատիվ ըլլա, բայց ոչ անոթի... վասնզի անոթի մարդը, աղքատ մարդն արդեն անպատիվ է... այո՛, անպատիվ կըլլամ, բայց ոչ անոթի»: Այդ նույն դրամայում հեղինակը իր վիճակն է ներկայացնում, երբ հերոսներից մեկի միջոցով ասում է. «Եթե չես ուզեր բացարձակ մուրացկան մըլլալ, կրակը նետե այդ մրոտած թուղթերը, որոց վրա ընդունայն քիրտ ու լույս կը թափես... տաղերգությանց մեջ սիրուհիվույդ առջև խոստմունքներ, անձնուրացություններ կը շարես, բայց երբ ամուսին ըլլաս, չոր հաց անգամ չես կրնար տանիլ անոր... հրաժարե այդ քաղցր, բայց խաբուսիկ երևակայություններեն և երազներեն, հրաժարե այդ թովիչ փառքեն, ջախջախե այդ մուրացկանության նպաստող քնարը»:

Մեզ զբաղեցնող ժամանակաշրջանի ամենապայծառ դեմքերից է Մ. Մամուրյանը: Իր «Սև լեռին մարդը» վեպում և «Հայկական նամականի» ու «Անգղիական նամականի» երկերում, քննության առնելով հայ ժողովրդի ճակատագիրը, նա նույնպես իր մասը դնում է սոցիալական չարիքի վրա: Ներկա հոդվածի սահմանները թույլ չեն տալիս մանրամասնությունների մեջ մտնել, մասամբ էլ դա ավելորդ է, քանի որ հրապարակի վրա կա պատմաբան Հ. Ղազարյանի արժեքավոր հետազոտությունը Մամուրյանի մասին, որտեղ հանգամանորեն քննության են առնված նման հարցեր:

Մենք շատ թռուցիկ մի ակնարկ գցեցինք 1850—1870-ական թվականների արևմտահայ գրականության մեջ սոցիալական հարցի առաջին դրսևորումների վրա, մի ժամանակաշրջան, որը գրականության պատմության մեջ հայտնի է որպես ռոմանտիզմի, ազգային ազատագրական գաղափարների բորբոքման շրջան:

Սոցիալական հարցը արևմտահայ գրականության մեջ առանցքային դարձավ ռուս-թուրքական պատերազմից հետո, 1880-ական թվականների կեսերից, երբ մի խումբ գրողներ, Ա. Արփիարյանի գլխավորությամբ, լայն պայքար սկսեցին ամիրայական դասի դեմ մամուլում և փորձեցին գեղարվեստական գրականությունն էլ ծառայեցնել այդ պայքարին, գրականության նյութ դարձնել իրական կյանքը, աշխատավոր խավերի վիճակը: Տ. Կամսարականը վիպագրության մեջ, Արփիարյանը, Բաշալյանը, Երուխանը, Զոհրապը նորավեպերի մեջ, Ա. Չոպանյանը դրամատուրգիայում ստեղծեցին գրական մի շարժում, որը հայտնի է արևմտահայ ռեալիզմ ընդհանուր անունով, և որի քննարկումը դուրս է ներկա հոդվածի սահմանից:

# ՀՈՒՇԱԳՐՈՒԹՅՈՒՆ

**Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ**

# ՆԻԺՆԻ ՆՈՎԳՈՐՈԴՈՒՄ*

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՃԻ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ[1]

Հիշողությունիցս չի կարող ջնջվել կուսակցու-
թյան Կենտրոնական կոմիտեի 1922 թվականի
մայիսի կեսերին կայացած պլենումը, որտեղ
նախագահում էր Լենինը։ Ես մասնակցում էի
այդ պլենումին, քանի որ XI համագումարում
ընտրվել էի Կենտկոմի անդամության թեկնածու։

Պլենումը տեղի էր ունենում ժողկոմսովետի
նիստերի դահլիճում։ Կենտկոմի անդամներն ու
անդամության թեկնածուները նստել էին երկար
սեղանի շուրջը, իսկ Լենինն զբաղեցրել էր նա-
խագահի տեղը և տեսանելի էր բոլորին։ Նա
ձեռքում պահել էր գրպանի ժամացույցը և խիստ
հետևում էր ելույթ ունեցողների կողմից ռեգլա-
մենտի պահպանմանը։ Իրադրությունը շատ գոր-
ծարար էր, չկար ժողովին խանգարող ոչ մի
կողմնակի խոսակցություն։ Որքան հիշում եմ,
զեկուցումների համար Լենինը տալիս էր երեք,
առանձին դեպքերում՝ յոթ րոպե, ինչպես, օրի-
նակ, Ռուձուտակին, որ զեկուցում էր Ջենովայի
կոնֆերանսի մասին. մտքերի փոխանակությամբ
հանդես եկողներին տրվում էր մեկ-երկու րոպե։
Զեկուցողները փորձված էին. կարողանալով
կարճ ֆրազով բացատրել հարցի էությունը և
խոսքը բերանից չթռած հասկանալ իրար, նրանք
լիովին բավականանում էին Լենինի սահմանած
խիստ ռեգլամենտով։

Օրջոնիկիձեն ու Կիրովն այդ պլենումին ներ-
կա չէին։ Աշխատանքի հանգամանքները նրանց
թույլ չէին տվել այդ պահին բացակայել Կով-
կասից։ Տարբեր պատճառներով չէին եկել նաև
Կենտկոմի մի քանի այլ անդամներ ու անդամու-
թյան թեկնածուներ։ Ահա թե ինչու պլենումում
հավաքվել էին Կենտկոմի ընդամենը 18 անդամ
(27-ից) և անդամության 4 թեկնածու (29-ից)։

Առաջինը քննարկվեց Ջենովայի կոնֆերանսի
մեր պատվիրակության անդամ Ռուձուտակի զե-
կուցումը։ Նա քննադատեց պատվիրակության
աշխատանքի մի քանի կողմեր, գտնելով, որ Չի-
չերինն ու Կրասինը բանակցությունների ժամա-
նակ հարկ եղածից ավելի մեծ զիջումներ են ա-
նում։ Ապա շարադրեց այն հարցերը, որ հետա-
գա բանակցությունների համար դրվում էին Ջե-
նովայի մեր պատվիրակության առջև։

Լենինը, իհարկե, լիովին տեղյակ էր գործին,
քանի որ ինքն էր իրականացնում պատվիրակու-
թյան գործնական ղեկավարությունը. բացի այդ,
նա պաշտոնապես այդ պատվիրակության նա-
խագահն էր (առանց Ջենովա մեկնելու)։ Նա
չասաց, թե իր քննադատության մեջ ինչում իրա-
վացի չէ Ռուձուտակը, նշելով միայն, որ մինչև
վերջին ժամանակներս պատվիրակությունը ճիշտ
է կատարել իր խնդիրները։ Լենինն առաջարկեց
Չիչերինին դիրեկտիվ տալ այն գործնական հար-
ցերի վերաբերյալ, որպիսիք Ռուձուտակի զե-
կուցման մեջ դրվեցին Կենտկոմի առջև։ Նախ,
անթույլատրելի համարել հանձնաժողովի աշխա-

---

* Սկիզբը տե՛ս «Լենինյան ուղիով», № 10, 1973 թ.:

[1] Այս գլուխը կրճատված ձևով զետեղված է իմ «Խոհեր և հիշողություններ Լենինի մասին» գըր-քում:



տանքի ենթադրվող փոխադրումը Հաագայից
Ռուսաստան։ Եթե այդ հնարավոր չլինի, ապա
համաձայնել, որ հանձնաժողովի աշխատանքը
կատարվի Սոչիում կամ Լիվադայում (Ղրիմ)։
Երկրորդ, ամեն կերպ բողոքել սովետական երկ-
րի հետ առանձին տերությունների անջատ պայ-
մանագրերի արգելման դեմ, ընդմին ավե-
լացնելով, որ մենք ոչ մի դեպքում չենք են-
թարկվի դրան։

Հետաքրքրական է մեր պատվիրակությունը
Ջենովայի կոնֆերանս ուղարկելու պատմությու-
նը։ Այն ձևավորվեց ՍՍՀՄ կազմավորումից ա-
ռաջ, երբ յուրաքանչյուր սովետական հանրապե-
տություն իրավունք ուներ կոնֆերանս ուղարկե-
լու իր պատվիրակությունը։

Սակայն ամեն ինչ կատարվեց այլ կերպ։ Պահ-
պանվել է 1922 թվականի փետրվարի 22-ի Հա-
մառուսաստանյան ԿԳԿ նախագահ Մ. Ի. Կալի-
նինի մոտ կայացած հատուկ խորհրդակցության
արձանագրությունը։ Այդ խորհրդակցությանը
ներկա էին սովետական ութ հանրապետություն-
ների (Ադրբեջան, Վրաստան, Հայաստան, Բե-
լոռուսիա, Ուկրաինա, Խորեզմ, Բուխարա և Հե-
ռավոր-արևելյան հանրապետություն) ներկայա-
ցուցիչները։

Քննարկելով 28 կապիտալիստական երկրների
և սովետական պետության՝ Ջենովայի համաեվ-
րոպական կոնֆերանսի հարցը, որը հրավիրվում
էր տնտեսական ու ֆինանսական մի շարք հար-
ցերի քննարկման նպատակով, Կալինինի մոտ
հավաքված սովետական հանրապետությունների
ներկայացուցիչները որոշեցին «հանձնարարել
ՌՍՖՍՀ-ին՝ այդ կոնֆերանսում ներկայացնել ու
պաշտպանել նշված ութ հանրապետությունների
շահերը և նրանց անունից կնքել ու ստորագրել
թե՛ կոնֆերանսում մշակվելիք ակտերը, թե՛ այդ
կոնֆերանսի հետ ուղղակի կամ անուղղակի
կապված ամեն տեսակ առանձին միջազգային
պայմանագրեր ու համաձայնագրեր, ինչպես նըշ-
ված կոնֆերանսում ներկայացված, այնպես էլ
ամեն մի այլ պետության հետ և ձեռնարկել
դրանից բխող բոլոր քայլերին»։

Հայտարարությամբ հանդես գալով այդ խոր-
հըրդակցությունում, Համառուսաստանյան ԿԳԿ
նախագահ Մ. Ի. Կալինինն ասաց, որ գոր-
ծելով ըստ համառուսաստանյան ԿԳԿ կող-
մից իրեն տրված լիազորությունների, ինքը
ՌՍՖՍՀ անունից գոհունակությամբ է ընդունում
դաշնակից ու եղբայրական հանրապետություննե-
րի այդ հանձնարարությունը, որն «ամբողջովին
համապատասխանում է Ռուսաստանի Հանրապե-
տության շահերին ու մտադրություններին»։

Նա հայտարարեց, որ «Ռուսաստանի Հանրա-
պետության կառավարությունը միջոցներ ձեռք
կառնի, որպեսզի իր հետ եղբայրական ու դաշ-
նակցային անխզելի կապերով առնչված բոլոր
պետությունների շահերը պատշաճ չափով պաշտ-
պանվեն այդ կոնֆերանսում։ Նա աշալուրջ կհե-
տևի, որ Ռուսաստանին ու նրա դաշնակիցներին
համաեվրոպական կոնֆերանսում ներկայացնելու
համար Ռուսաստանի Հանրապետության կառա-
վարության կողմից լիազորված պատվիրակու-
թյունն աներեր պաշտպանի նրանց շահերը և
դաշնակից ու եղբայրական հանրապետություն-
ների կառավարություններին անպայման տեղե-
կացնի կոնֆերանսի աշխատանքի ընթացքին»։

Սովետական կառավարությունը հաստատեց
Ջենովայի կոնֆերանսի՝ արտակարգ լիազորու-
թյուններով օժտված միասնական սովետական
պատվիրակությունը հետևյալ կազմով— Լենին
(պատվիրակության նախագահ), Չիչերին (նա-
խագահի տեղակալ), Ռուձուտակ, Կրասին, Լիտ-
վինով, Ռակովսկի, Վորովսկի, Իոֆֆե, Նարիմա-
նով, Մդիվանի, Բեկզադյան, Խոջաև, Յանսոն,
Շլյապնիկով և Սապրոնով։

Ինչպես հայտնի է, կապիտալիստական պետու-
թյունները փորձում էին Ջենովայի կոնֆերանսում
հասնել այն բանին, որ մենք ճանաչենք ցարա-
կան պարտքերը, օտարերկրացիներին վերա-
դարձնենք նրանց ազգայնացված ձեռնարկու-
թյունները, վերացնենք արտաքին առևտրի մե-
նաշնորհը և այլն։

Մեր պատվիրակությունը վճռականորեն մեր-
ժեց այդ բոլոր պահանջները, առաջ քաշելով իր
հակապահանջները, մասնավորապես օտարեր-
կըրյա ինտերվենցիայի ու բլոկադայի հետևան-
քով Սովետական Ռուսաստանին հասցված վնաս-
ների հատուցումը, որը գումարային արտահայ-
տությամբ գերազանցում էր կապիտալիստական
երկրների կողմից մեզ ներկայացված պահանջ-
ներին։

Սակայն, ցանկանալով հող գտնել կապիտա-
լիստական պետությունների հետ գործարար հա-
մաձայնագրեր կնքելու համար, մեր պատվիրա-
կությունը սովետական կառավարության ցուցու-
մով հայտարարեց, որ Սովետական Ռուսաստանը
համաձայն է տնտեսական որոշ զիջումներ անե-
լու (նախապատերազմյան պարտքերի ճանաչում
և այլն)՝ սովետական պետությունը ճանաչելու,
նրան ֆինանսական օգնություն ցույց տալու և
պատերազմական բոլոր պարտքերը չեղյալ հայ-
տարարելու պայմանով։ Միաժամանակ մեր
պատվիրակությունը առաջարկություն մտցրեց
ընդհանուր զինաթափման մասին, որը, ինչպես
այդ ընդունեց Համառուսաստանյան ԿԳԿ 3-րդ
նստաշրջանը (1922 թվականի մայիս) արտա-
հայտում էր «ո՛չ միայն Ռուսաստանի աշխա-
տավոր մասսաների շահերն ու ցանկությունները,
այլև ողջ աշխարհի աշխատավորների և ճընշ-

ված ու ստրկացված բոլոր ժողովուրդների և ազգերի կենսական շահերը»։

Կապիտալիստական պետությունների մեղքով կոնֆերանսում դրված հարցերը չլուծվեցին, դրանց մի մասը կա՛մ ընդհանրապես հանվեց քննարկումից (ընդհանուր զինաթափման հարցը և այլն), կա՛մ թողնվեց Հաագայում կայանալիք հաջորդ միջազգային կոնֆերանսի քննարկմանը։

Սակայն Ջենովայի կոնֆերանսի ընթացքում մեր դիվանագետներին, այնուամենայնիվ, հաջողվեց ճեղքել միասնական իմպերիալիստական ճակատը և Գերմանիայի հետ կնքել միջազգային հարաբերությունների հետագա զարգացման համար սկզբունքորեն շատ կարևոր պայմանագիր, որը հայտնի է որպես Ռապալոյի պայմանագիր (իտալական Ռապալո քաղաքի անունով, որտեղ ստորագրվել է այն 1922 թվականի ապրիլի 16-ին)։ Այդ պայմանագրով Գերմանիան ճանաչում էր ձեռնարկությունների ազգայնացումը, հրաժարվում մեր նկատմամբ ամեն տեսակ ֆինանսական պահանջներից, իսկ մենք, մեր կողմից, հրաժարվում էինք Գերմանիայից ռեպարացիաներ պահանջելու մեր իրավունքից։

Պետք է ասել, որ այդ պայմանագրի վերաբերյալ բանակցություններ էին վարվել նաև առաջ, բայց Գերմանիայի ներկայացուցիչները տատանվում էին այն ստորագրել։ Ջենովայի կոնֆերանսում, հասկանալով մեկուսացման իրենց աննախանձելի դրությունը արևմտյան տերությունների շարքում, գերմանացիք, մյուսների համար անակնկալ, ստորագրեցին այդ պայմանագիրը, որն Անտանտի համար հնչեց ինչպես պարզ երկնքից ճայթող ամպրոպ։

Երկու մեծ տերությունների միջև կնքված առաջին իսկական իրավահավասար և փոխշահավետ պայմանագիրն էր այդ, որը պատմական զարգացման որոշակի էտապում սեփականության երկու սիստեմների՝ կոմունիստականի և բուրժուականի խաղաղ գոյակցության լենինյան գաղափարի պրակտիկ կենսագործումն էր։

Պատահական չէ, որ համառուսաստանյան ԿԳԿ 3-րդ նստաշրջանը, ողջունելով Ռապալոյի պայմանագրի ստորագրումը, որը տվեց «դժվարություններից, քաոսից ու պատերազմների վըտանգից դուրս գալու միակ ճիշտ ելքը...», կապիտալիստական պետությունների հետ ՌՍՖՍՀ-ի հարաբերությունների համար նորմալ համարեց «միայն այդպիսի պայմանագրերը» և հանձնարարեց սովետական կառավարությանը՝ հետագայում ևս քաղաքականություն վարել այդ կարգի պայմանագրերի ոգով, շեղումներ թույլ տալով «միայն այն բացառիկ դեպքերում, երբ դրանք կփոխհատուցվեն ՌՍՖՍՀ և դաշնակից սովետական հանրապետությունների աշխատավոր մասսաների համար միանգամայն առանձնահատուկ օգուտներով»։

Երկրորդ հարցը, որի մասին զեկուցեցին Բուխարինն ու Զինովևը, այն դիրեկտիվի նախագիծն էր, որը Կոմինտերնի՝ մեր կուսակցության ներկայացուցիչը պետք է մտցներ Կոմունիստական ինտերնացիոնալի գործկոմ երեք ինտերնացիոնալների (II, II$^1/_2$ և III) ներկայացուցիչների՝ այն ժամանակ տեղի ունեցող նիստերի առընչությամբ։

Այն ժամանակ արտասահմանյան բանվորական մամուլի էջերում լայնորեն քննարկվում էր Կոմինտերնի առաջ քաշած միասնական բանվորական ճակատի ստեղծման գաղափարը և այդ կապակցությամբ՝ բանվորական կազմակերպությունների համաշխարհային կոնֆերանսի նախապատրաստման վերաբերյալ առաջարկությունը, կոնֆերանս, որը պետք է «կազմակերպի բանվոր դասակարգի պաշտպանողական պայքարը միջազգային կապիտալի դեմ»[1]։

Զինովևը կարդաց դիրեկտիվի համառոտ նախագիծը, որը, հավանաբար, նախօրոք համաձայնեցված էր Լենինի հետ։ Այդ դիրեկտիվի էությունն այն էր, որ Կոմինտերնի պատվիրակությունը, «իննի հանձնաժողովի» նիստերում բանակցություններ վարելիս, ուլտիմատիվ կերպով պահանջի շուտափույթ հրավիրել համաշխարհային բանվորական համագումար, նվազագույն կարճ ժամկետում, որն իսկույն պետք է որոշվի կողմերի համաձայնությամբ։

II ինտերնացիոնալի սաբոտաժի դեպքում Կոմինտերնը «իննի հանձնաժողովից» ետ է կանչում իր ներկայացուցիչներին և շարունակում ագիտացիան հօգուտ միասնական պրոլետարական ճակատի։

Որպես զիջում II ինտերնացիոնալի ներկայացուցիչներին, ենթադրվում էր, թե ՌԿ(բ)Կ ներկայացուցիչները պատրաստակամություն կհայտնեն «...ընդհանուր պլատֆորմից ջնջելու Սովետական Ռուսաստանին պաշտպանելու, գործադրկության և այլնի դեմ պայքարելու խոստումը, ամբողջ պայքարը կենտրոնացնելով 8-ժամյա աշխատանքային օրվա վրա»[2]։

Եթե երկու ինտերնացիոնալների ներկայացուցիչները ոչ թե խոսքով, այլ գործով պատրաստակամություն հայտնեն բանվորական կազմակերպությունների համաշխարհային կոնֆերանս հրավիրել, ապա մենք կհամաձայնենք մեր պատվիրակները կրկին ուղարկել «իննի հանձնաժողով»։

Բացի դրանից, Կոմինտերնի գործկոմում մեր

[1] «Коммунистический Интернационал в документах. Решения, тезисы и воззвания конгрессов Коминтерна и пленумов ЦККИ. 1919—1932». М. 1933, стр. 269.
[2] ЦПА ИМЛ, ф. 17, оп. 2, д. 79, л. 2.



կուսակցության ներկայացուցիչներին հանձնարարված էր բոլշևիկյան կուսակցության փորձի մասին գրքույկ հրատարակել միասնական ճակատի տակտիկան լուսաբանելու նպատակով։ Այս բոլորն ընդունվեց առանց դիսկուսիայի։

Կենտկոմի պլենումից հետո պետք է կայանար Համառուսաստանյան ԿԳԿ նստաշրջանը, ուստի պլենումում քննարկվեցին նրա մի քանի հարցեր։

Չգիտեմ ինչու հիշողությանս մեջ դրոշմվել է արժեքավոր իրերի դուրսբերման կամպանիայի հարցի քննարկումը։ Այդ հարցի վերաբերյալ զեկուցեց Տրոցկին։ Խոսքը վերաբերում էր այն բանին, որ պետական հիմնարկություններից և թանգարաններից դուրս բերվեն այն արժեքավոր իրերը, որոնք պատմական կամ գիտական հետաքրքրություն չէին ներկայացնում, բայց կարող էին վալյուտայով վաճառվել արտասահմանում։ Այդպես էլ ես չհասկացա թե ինչու հենց Տրոցկին էր զբաղվում այդ հարցով և դրա մասին զեկուցողն էր պլենումում։ Բոլորի համար անվիճելի էր այն առաջարկությունը, թե պետք է անհրաժեշտ համարել առավելագույն չափով արագացնել արդեն հավաքված արժեքավոր իրերի իրացումը։ Այդ խնդրի կենսագործման համար որոշեցին հանձնաժողով ստեղծել, պարտավորեցնելով նրան ամիսը երկու անգամ Կենտկոմին հաղորդել արժեքավոր իրերի իրացման ընթացքի մասին։

Վեճ հարուցեց արժեքավոր իրերի իրացումից ստացված գումարների 5 տոկոսը Հանրապետության Ռազմա-հեղափոխական խորհրդի տնօրինությանը հանձնելու մասին Տրոցկու առաջարկը։

Ստալինը, որը նստել էր Տրոցկու կողքին, հանդես եկավ միայն այդ հարցի շուրջ, առարկելով Տրոցկու առաջարկությանը։ Ինչպես սովորաբար, նա խոսում էր ցածրաձայն ու հանգիստ և մեկ րոպեից ոչ ավելի։

Տրոցկին, որ շատ տաքարյուն էր, իսկույն, ինչպես ասում են, կրակ կտրեց և ավելի քան երեք րոպե վիճելով Ստալինի հետ, ապացուցեց իր առաջարկության ճշմարտացիությունը։ Այդ ժամանակ, ցույց տալով ժամացույցը՝ Լենինն ասաց.

— Առաջարկում եմ պահպանել ռեգլամենտը։

Տրոցկին ենթարկվեց։ Ստալինը նորից ձայն խնդրեց և կրկին, խոսելով մեկ րոպեից ոչ ավելի, հանգիստ ասաց, որ հարկավոր չէ բանակի համար այդպիսի հատկացումների հաստատուն տոկոս սահմանել ամբողջ ժամանակ, այլ այդ հարցը պետք է լուծել ըստ հարկի, նայած ինչպիսի նպատակների համար պետք կլինեն այդ միջոցները։ Իսկ մուտքի ամբողջ գումարը պետք է դրվի կառավարության տրամադրության տակ։

Է՛լ ավելի բորբոքվելով, Տրոցկին նորից խոսեց։ Մի քանի խոսքից հետո պարզ դարձավ, որ վեճն ավելի է թեժանալու և չափից ավելի ժամանակ է խլելու։ Ըստ էության Ստալինն իրավացի էր. դա զգացվում էր նաև Կենտկոմի անդամների տրամադրությունից, որոնք հասկանում էին, որ Տրոցկու առաջարկությունը «գերատեսչական» է, սխալ։ Այդ ժամանակ Լենինը վճռեց դադարեցնել հետագա քննարկումը և առաջարկեց այդ հարցը լսել հատուկ հանձնաժողովում, պարտավորեցնելով նրան երկօրյա ժամկետում իր առաջարկությունները ներկայացնել քաղբյուրո, իսկ այդտեղ տարաձայնություններ ծագելու դեպքում հարցը նորից քննարկել Կենտկոմի պլենումում։ Առաջարկությունն ընդունվեց։

Այդ հարցը լուծելիս չափազանց վառ դրսևորվեց Լենինի զարմանալի հմտությունը՝ երբեք թույլ չտալ, որ Կենտկոմի անդամների միջև ավելորդ վեճեր ծագեն ու ավելի ծավալվեն։ Լենինի առաջարկությունը համաձայնություն չէր ոչ Տրոցկու, ոչ Ստալինի հետ, ուստի և չէր կարող դիպչել նրանց ինքնասիրությանը։ Մյուս կողմից, գործը տրվում էր հանձնաժողովին, որը հանգիստ, գործարար իրադրության մեջ կարող էր նախապատրաստել ճիշտ լուծումը։

Տրոցկու առաջարկությամբ նորից քննարկվեց նաև, այսպես կոչված՝ «Մոսկվայի կոմբինացված փնջի» հարցը։ Խոսքը այն մի քանի սովխոզների ու ձեռնարկությունների գործունեության որոշ կողմերի մասին էր, որ կազմակերպել էին զինվորականները և որոնց շեֆությունն էր ըստանձնել Տրոցկու գլխավորած Ռազմա-հեղափոխական խորհուրդը։ Նա վիճարկում էր տեղական սովետական օրգանների ինչ-որ որոշումներ և առաջ քաշում ինչ-որ պահանջներ, որոնք նույնիսկ Կենտկոմի պլենումի քննարկմանը ներկայացնելու հարկ չկար։ Լենինն իսկույն առաջարկեց այդ հարցը քննարկել սովետական կարգով, տեղական օրգաններին չկաշկանդելով Կենտկոմի որոշումներով, իսկ քարտուղարությանը հանձնարարվեց այդ հարցին վերաբերող բոլոր փաստաթղթերն ուղարկել Կենտկոմի անդամներին՝ հարցի էությանը ծանոթանալու։ Ըստ էության, Տրոցկու առաջարկությունը մերժվեց, բայց մեծ տակտով ու մեղմորեն։

...Չեմ մոռացել մի զվարճալի դիպված, որ տեղի ունեցավ այդ պլենումի ժամանակ։

Ես նստել էի Ջերժինսկու կողքին, սեղանի ծայրին։

Պետք է ասել, որ Ջերժինսկին թունդ ծխող էր։ Սակայն բոլորս լավ գիտեինք, որ Լենինի առաջարկությամբ նիստերում ծխելը կտրականապես արգելվում էր։

Իսկ Ջերժինսկին ուզում էր լսել ելույթներն առանց նիստը թողնելու, բայց չէր կարող երկար դիմանալ առանց ծխելու։ Այդ ժամանակ նա, հավանաբար, վճռեց խորամանկել։ Մեր

նստած տեղից ոչ հեռու հոլանդական վառարան էր։ Սպասելով հարմար պահի, Ձերժինսկին վեր կացավ, մոտեցավ այդ վառարանին այնպես, որ մյուսները չտեսնեն, և մի կուշտ ծխեց, ծուխն աննկատելիորեն բաց թողնելով վառարանի օդանցքի մեջ։ Հետո, ասես ոչինչ չէր պատահել, հանգիստ վերադարձավ իր տեղը։

Ես դիտում էի ողջ տեսարանը և մտքումս պահեցի այդ «չարաճճիության» մեղավորի գոհ, երեխայական խորամանկությամբ ժպտացող դեմքը. նա բացահայտորեն գոհ էր իր «գործողությունից»...

...Ներկա լինելով նիստին (և, իհարկե, ո՛չ միայն այդ անգամ), տեսնում էի, որ, չնայած հարցերի քննարկման ժամանակ տեղի ունեցող բախումներին, Լենինը երբեք ձայնը չէր բարձրացնում, խիստ դիտողություններ չէր անում, երբեմն նույնիսկ խուսափում էր արտահայտվել, միայն թե պահպանվի ավելի խաղաղ իրադրություն։ Դա, իհարկե, ինձ վրա, որ այն ժամանակ Կենտկոմում դեռևս նորեկ էի, մեծ տպավորություն էր թողնում։

Ե՛վ այն ժամանակ, և՛ հետագայում համոզվեցի, թե քաղաքական ղեկավարի համար որքա՜ն կարևոր է գնահատել ժամանակը, ավելորդ բաներ չասել, կարողանալ համառոտակի շարադրել գործի բուն էությունը։ Եվ, եթե հարցը հնարավոր չէ տվյալ նիստում լուծել, ապա, թույլ չտալով սնամեջ վեճեր, կարողանալ ժամանակին այն հանձնել գործարար հանձնաժողովին, նրա աշխատանքի և որոշումների նախագծեր ներկայացնելու համար նշանակելով կարճ ժամկետ։ Թերևս, հենց միայն դրա շնորհիվ էր Լենինը կարողանում ամենակարճ ժամկետներում այնքան շատ, ամենատարբեր հարցեր քննարկել։ Եվ երբ այժմ կարդում ես նիստերի արձանագրությունները, Լենինի առաջադրանքները, գրությունները, հանձնարարությունները, հարցումները, զարմանում ես նրա կատարած աշխատանքի վիթխարի ծավալով, նրան հուզող պրոբլեմների բազմազանությամբ ու խոր բովանդակությամբ, լինեն դրանք տեսական, քաղաքական, թե վերաբերեն առօրյա, ամենանեղ, թվում է՝ նույնիսկ մեծ նշանակություն չունեցող պրակտիկ գործերին...

Ես միշտ էլ զարմացել եմ, թե Լենինն ինչպիսի՜ ուշադրությամբ էր վերաբերվում այն «մանր» հարցերին, որոնք ծագում էին «ներքնախավերում»։

Սկզբում, հավանաբար պետական գործերում դեռ անփորձ լինելու պատճառով, ինձ թվում էր, որ, ղեկավարելով հսկայական ու բարդ պետություն, Լենինն զբաղված է միջազգային ու ներքին քաղաքականության միայն կարևորագույն պրոբլեմների լուծմամբ, ուստի և չի կարող, ասենք և չպետք է զբաղվի այն «մանր» հարցերով, որոնք մեզ մոտ շարունակ ծագում էին տեղերում։ Բայց հետո հասկացա, որ լինում են տարբեր հարցեր, իսկ որոշակի հանգամանքներում որոշ, «մանր» թվացող գործերն աճում են կամ կարող են աճել ու հասնել համապետական այնպիսի «խոշոր» գործերի մակարդակին, երբ դրանցով արդեն պետք է զբաղվեն իրենք՝ կառավարության ղեկավարները։ Եվ այս առումով ակնառու և համոզիչ շատ դասեր է տվել մեզ Լենինը։

Ուզում եմ պատմել մի քանի փաստերի մասին, որոնք ժամանակին մեծ տպավորություն են թողել ինձ վրա։

1920 թվականի վերջին Նիժնիում հեռագիր ստացանք Լենինից։ Հեռագիրը շրջաբերական էր և վերաբերում էր մի շարք նահանգների։ Այնտեղ ասվում է, որ կարմիր բանակին պակասում է ոտնամանը, որ բանակում նույնիսկ տրեխներ չկան...

Այդ կապակցությամբ Լենինն առաջարկում էր նահանգգործկոմներին կից շտապ կազմակերպել կարմիր բանակի համար քրձենու տրեխների հայթհայթման արտակարգ հանձնաժողովներ։

Այդ առաջադրանքն առաջին հայացքից մեզ նույնիսկ փոքր-ինչ տարօրինակ թվաց. Լենինը պահանջում է կազմակերպել... տրեխների արտադրություն։ Ազնիվ խոսք, ես նույնպես առաջին պահ մի տեսակ ակամա շփոթվեցի այդպիսի անակնկալ հանձնարարությունից, բայց հետո հասկացա, որ եթե Լենինն է պահանջում, ուրեմն գործը շատ կարևոր է և շտապ։ (Հետագայում իմացա, որ Լենինի առաջարկով Աշխատանքի և պաշտպանության խորհրդի որոշմամբ վալենկաների, տրեխների ու կիսամուշտակների հայթհայթման արտակարգ հանձնաժողով— կրճատ՝ ՉԵԿՎԱԼԱՊ— է ստեղծվել նաև կենտրոնում)։

Մեզ մոտ անհապաղ ստեղծեցինք այդպիսի հանձնաժողով։ Հասկանալով այդ գործի մեծ պատասխանատվությունը, վճռեցի ինձ վրա վերցնել հանձնաժողովի աշխատանքի անմիջական ղեկավարումը, թեև, ճիշտն ասած, գրեթե ոչ մի պատկերացում չունեի քրձենու տրեխների, առավել ևս՝ դրանց արտադրության մասին. մեզ մոտ՝ Կովկասում, ինչպես հայտնի է, երբեք այդպիսի տրեխներ չէին հագնում։ Սակայն ես հույսով էի, որ մոտիկից զբաղվելով դրանով, տեղական տնտեսավարների օգնությամբ, կկարողանամ հաղթահարել այդ «գիտությունը» և պատշաճ արդյունքների հասնել։

Եվ իրոք, մի քանի պայմանագրեր կնքեցինք տեղական տնայնագործական միության հետ ու համեմատաբար կարճ ժամկետում ապահովեցինք բանակի համար 1,5 միլիոն զույգ տրեխների արտադրությունը։ Պարզվեց, որ այդ առաջադրանքն այնքան էլ դժվար չէր կատարել, քանի որ Նիժնինովգորոդցի գյուղացիները տրեխների պատրաստման մեծ փորձ ունեին, իսկ մեր նահանգում դրա համար բավարար քանակությամբ հումք կար։

Սակայն լավ հիշում եմ՝ ինչպես մենք՝ նահանգգործկոմի բոլոր աշխատողներս, այն ժամանակ զարմացած էինք, համոզվելով, որ Լենինն զբաղվում է նաև այնպիսի «մանրունքներով»,—ինչպիսին տրեխների մթերումն է։ Բայց, ինչպես լավ ասել է բանաստեղծը. Լենինն իրոք կարողանում էր «ամեն մանրուքի ետևում համաշխարհային հեղափոխություն տեսնել...»։

Հիշում եմ նաև այսպիսի մի դեպք։

1921 թվականի աշնանը մենք ստացանք Լենինի կողմից ստորագրված մի հեռագիր, որտեղ ասվում էր, թե մեզ մոտ սպասվող նավագնացության վաղ փակման և Վոլգայի սառցակալման կապակցությամբ կարող է կորչել գետով ուղարկվող մեծ քանակությամբ փայտեղենը։

Այդ առնչությամբ Լենինն առաջարկում էր մինչև սառցակալումն սկսվելը ամենակարճ ժամկետում այդ փայտեղենը հավաքել գետախորշերում։

Պետք է ասել, որ մինչև Լենինի հեռագրի ըստանալը, տեղական աշխատողների անփութության պատճառով, որոնք չէին ահազանգել նահանգային ղեկավարությանը, մենք նույնիսկ չէինք պատկերացնում, թե որքան տագնապալի է փայտեղենի ուղարկման վիճակը։ Լենինի հեռագիրը ճիշտ ժամանակին «թափ տվեց» մեզ բոլորիս։ Անհրաժեշտ միջոցներ ձեռք առանք փայտեղենի ուղարկման գործը աշխատուժով, պարենով և անասնակերով ապահովելու համար։ Ի վերջո փայտեղենը փրկեցինք։ Եթե չլիներ Լենինի եռանդուն միջամտությունը, փայտեղենի ուղարկման վիճակը ևս կարող էր աղետալի դառնալ...

Նույն թվականի ձմռանը մեր նահանգգործկոմում, Լենինից ստացվեց մի հեռագիր ևս, ուր նա մատնացույց էր անում Կանավինոյում Ռետեշխինի ուռկանագործական ֆաբրիկայի վատ աշխատանքը. այն պարբերաբար ձախողում էր ուռկանասարքերի արտադրության ծրագրի կատարումը. սարքերը խիստ անհրաժեշտ էին Աստրախանի ձկնորսներին, որոնք պատրաստվում էին գարնանային որսաշրջանին, երբ սովորաբար, տեղի է ունենում ձկան հիմնական, վճռական որսը։

Ստանալով այդ հեռագիրը՝ նահանգային ժողտնտխորհի նախագահի հետ ուղևորվեցինք Կանավինոյի ֆաբրիկան և, քննելով գործի էությունը, պարզեցինք, որ ֆաբրիկայի հետ կապված բացերից ու թերություններից զատ ուռկանների արտադրությունն արգելակվում է նաև Կոստրոմայից մանվածքը ժամանակին չստանալու պատճառով։

Աշխատանքը ֆաբրիկայում բարելավելու նպատակով անհրաժեշտ միջոցներ ձեռք առնելուց հետո, անմիջապես կապվեցինք Կոստրոմայի հետ։ Այնտեղից շուտով մանվածքն ստացվեց և մեզ հաջողվեց կարգավորել սարքերի արտադրությունն ու ժամանակին դրանցով ապահովել Աստրախանի ձկնորսներին։

Հիշում եմ, թե Լենինը որքա՜ն մանրակրկիտ էր խորամուխ լինում այն «մանր» արտադրական հարցերում, որոնք կապված էին մեր տորֆային արդյունաբերությունը սարքավորմամբ ապահովելու հետ, սարքավորում, որի մի մասն էլ արտադրվում էր Նիժնի Նովգորոդի գործարաններում։

1921 թվականի հունվարին Լենինից ստացանք այսպիսի մի հեռագիր. «Սորմովոյի գործարանը թրթուրավոր կռունկ է պատրաստում Հիդրոտորֆի համար, բայց այդ չափազանց դանդաղ է պատրաստվում... խնդրում եմ գործադրել բոլոր ջանքերը, ապրիլ ամսին այդ կռունկը լրիվին ավարտելու համար, որպեսզի մայիսի սկզբին հասցվի «էլեկտրոպերեդաչա»-ին, որտեղ բազմակողմանի կստուգվի այն հաշվով, որ բոլոր անհրաժեշտ կատարելագործումները բացահայտելուց հետո այդ նմուշի հիման վրա ձեռնամուխ լինեն կռունկների մասսայական պատրաստմանը։ Լենին»[1]։

Երկիրն այն ժամանակ, վառելանյութի պակասության պատճառով, խիստ կարիքի մեջ էր, և տորֆը մեծ չափով կօգներ, քանի որ ձեռքի տակ էր։

Դժվար չէ հասկանալ, որ այն ժամանակ մենք արեցինք այն ամենը, ինչ անհրաժեշտ էր, որպեսզի այդ կռունկը պատրաստելն ու «էլեկտրոպերեդաչա»-ին հասցնելն ապահովեինք ճիշտ Լենինի սահմանած ժամկետներին։

Երբեք չեմ մոռանա, թե Լենինը որքան խիստ էր կարգապահության պահպանման, պետական ապարատի աշխատանքի հստակության նկատմամբ, ինչպես չէր հանդուրժում քաշքշուկը, թափթփվածությունը՝ բյուրոկրատիզմը։

Աշխատանքի և պաշտպանության խորհրդի գործերի կառավարչությունը 1921 թվականի մայիսի 7-ին հեռագրով հարցում էր արել Նիժնի Նովգորոդի տնտեսական խորհրդակցությանը (ՆԱՀԱՆԳՏՆՏԽՈՐՀ), թե ճի՞շտ է, արդյոք, որ նա նախատեսել է 1921 թվականին արդյունահանել 6,7 միլիոն փութ տորֆ։ Պատասխան չստանալով, կառավարչությունը մայիսի 26-ին ուղարկել էր երկրորդ հարցումը։

[1] В. И. Ленин. ПСС, т. 52, стр. 55.

# ԺՈՒՌՆԱԼԻՍՏԻ ՀԱՅԵՑԱԿԵՏՈՎ

## ԳՐԱՍԵՐԻ ԼՐԱԳԻՐԸ

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

Ճանաչել զիմաստություն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ— այս խորագիրն է ընտրել հնգամյա «Գրքերի աշխարհ» թերթը, որի նպատակն է ընթերցողներին ներկայացնել գրահրատարակչական գործը մեր հանրապետությունում, ցույց տալ հրատարակվող գրքերի դերն ու նշանակությունը հասարակության կուլտուրական ու գիտական առաջընթացում, հրապարակել գրքի վերաբերյալ ամենատարբեր բնույթի նյութեր, լուրեր, թվեր ու փաստեր։ Այս լրագրում հանդես են գալիս գրողներ, թարգմանիչներ, խմբագիրներ ու տեխնիկական խմբագիրներ, գրքի գեղարվեստական ձևավորողներ՝ խմբագիր-նկարիչներ և հրատարակչական հաստատությունների ղեկավար ու շարքային այլ աշխատողներ։

Լրագրի էջերում զետեղվում են անոտացիաներ հրատարակվող գրքերի մասին, փոքրածավալ հոդվածներ, մեկական էջ դրանց նախաբանից կամ առաջաբանից, փոքրիկ պատմվածքներ ու բանաստեղծություններ լույս ընծայված ժողովածուներից։ Այդ ամենը խթանում է մեր հասարակության ընթերցասիրությունը և, պետք է ասել, որ այս ասպարեզում, ինչպես և մեր գրավոր կուլտուրայի պրոպագանդման մարզում «Գրքերի աշխարհը» ակնբախ շնորհակալ գործ է կատարում։ Լրագրի 7-րդ էջում զետեղված Մատենագիտական տեղեկանքն օգնում է ընթերցողներին՝ ժամանակին իմանալու երբ, ինչպիսի՛ գրքեր են ընդունվել վաճառքի և ինչպիսիք լույս կտեսնեն. այսպիսով, ընթերցողը հնարավորություն է ունենում ժամանակին ձեռք բերելու իրեն հետաքրքրող գրականությունը։

Հրատարակվել է Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Ընտիր երկերի եռհատորյակի առաջին հատորը. այդ առթիվ այս տարվա № 1-ում զետեղված է ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի ընդարձակ ծանուցումը։ Լենինյան գվարդիայի հայ մարտիկներին նվիրված ալբոմի մասին գրել է ՀՍՍՀ հեղափոխության թանգարանի դիրեկտորի տեղակալ Բ. Ղարիբյանը (№ 2)։ «Կ. Մարքսի կենսագրությունը» գրքի ներածությունից բերված հատվածում (№ 2) հայտնվում է, որ այս ուսումնասիրության համար արժեքավոր են եղել «Կոմունիստների միության I ինտերնացիոնալի, բանվոր դասակարգի զանազան ազգային կազմակերպությունների՝ Մարքսի հետ սերտորեն կապված ներկայացուցիչների անձնական ֆոնդերը»։

Լույս է տեսել Լ. Ի. Բրեժնևի Լենինյան կուրսով հոդվածների ու ճառերի ժողովածուի III հատորը. գրքի թարգմանության խմբագիր Հ. Ղազարյանն իր Հանուն հետևողական սոցիալիստական հեղափոխության հաղորդման մեջ (№ 3) նշում է, որ այն «...լավագույն նվեր է մարքսիզմի տեսությամբ զբաղվողների, սովետական պետության արտաքին և ներքին քաղաքականության հարցերով հետաքրքրվողների համար»։ Իսկ № 4-ում Նոր կյանքի դասընթացը խորագրի տակ հայտնվում է, որ առաջիկա տասը տարում լույս կընծայվի Վ. Ի. Լենինի երկերի 55-հատորյակը. հայ ընթերցողը կունենա առաջնորդի ստեղծագործությունների լիակատար ժողովածուն, որի բաժանորդագրության կազմակերպմանն է նախապատրաստվում գրքի առևտրի վարչությունը։

«Հայաստան» հրատարակչության լույս ընծայած գրականության մեջ զգալի ծավալ է կազմում գեղարվեստականը— թե՛ ժամանակակից, թե՛ ինքնուրույն և թե թարգմանական։ Բնականաբար, լրագիրը ևս մեծ տեղ է հատկացրել այդ գրականության ներկայացմանը, զետեղելով նաև այն հեղինակների նկարը, որոնց գործերի մասին գրվում է։ Հետաքրքրական են Դասական էջեր խորագրի տակ ամփոփված նյութերը։

Լույս են տեսել Ե. Չարենցի Ընտիր երկերը, Վ. Տերյանի և Պ. Սևակի երկերի ժողովածուների հատորները։ Հայ պոեզիայի աստղալից պահերը խորագրի տակ զետեղված են այդ մեծ պոետների նկարները և մեկական բանաստեղծություն՝ ժողովածուներից։ Իրենց ստեղծագործությունների հրատարակման առիթով լրագրում արժանի տեղ են գտել նաև ռուս և այլազգի գրողները։ Ահա Շանդոր Պետեֆիի բանաստեղծությունների թարգմանիչ, բանաստեղծ Վահագն Դավթյանի Հանճարեղ բանաստեղծն ու հասարակ զինվորը՝ գրված հունգար մեծ պոետի բանաստեղծությունների ժողովածուի լույսընծայման առթիվ (№ 2).

> «Չնայած իր 150-ամյա տարիքին,— վերջացնում է իր խոսքը Վ. Դավթյանը,— Պետեֆին այսօր էլ քայլում է՝ հանճարեղ բանաստեղծի ծիրանին ուսին, քայլում է, բաժանելով ազատության շունչ, սեր ու գորովանք»։

Հետաքրքրական է Դ. Գասպարյանի Արքնացած բառը, Ռ. Դավոյանի Մեղրահաց, ինչպես և Մ. Փիլոյանի Ինքնահաստատման ճանապարհով՝ Լ. Դուրյանի Եղեգան փող բանաստեղծությունների ժողովածուների մասին (№ 3)։ Ներկայացնում է թարգմանիչը, կամ Թարգմանչի ամբիոն բաժիններում հանդես են գալիս իրենք՝ թարգմանիչները, նկարագրում այդ գործի հետ կապված դժվարությունների հաղթահարումը։

«Գրքերի աշխարհ» լրագիրն զգալի տեղ է հատկացրել Հայաստանի սովետական նկարիչների միության X համագումարի մասնակիցներին, որոնց օգտակար, խելացի խոսքն է հրապարակել իր № 2-ի Գիրքն ու նկարիչը բաժնում։ Նկարազարդված գիրքը ունի երկու հեղինակ՝ գրող և նկարիչ ընդհանուր վերնագրով։ Հնարավոր չէ մեկ առ մեկ անդրադառնալ դրանց. հարցազրույցի ընթացքում նկարիչների պատասխանների սոսկ վերնագրերը գաղափար կտան ընթերցողին նկարիչների պատասխանատվության խոր զգացումի, նրանց հոգսերի ու անհանգստությունների մասին։ Ահա դրանք. Լավ նկարիչը դեռ լավ ձևավորող չէ (Ս. Մուրադյան), Գրքի առաջին ձևավորողը գրողն է (Հ. Սիրավյան), Գրական պատմությունը հարկավոր է վերածել նկարչական պատմության (Մ. Ավետիսյան)։ Նկարազարդ գիրքը հավերժ բաց ցուցահանդես է (Ա. Գրիգորյան)։ Վեր հանելով նկարչի դերը գրքի, մանավանդ մանկական գրքի գեղարվեստական ձևավորման, այն առավել տպավորիչ դարձնելու գործում, նրանք հիմնականում հայտնում են այն կարծիքը, որ նկարիչը չպետք է հրապուրվի քանակով, այստեղ ավելի, քան այլուր կարևոր է որակը, քանի որ նկարիչը՝ ստեղծագործությունը գույների լեզվով թարգմանողը, արտացոլում է ոչ թե գրքի տողը, բառը, այլ ոգին։ Նշելով, որ նկարիչը գրողի հեղինակակիցն է, նրանք իրավամբ գտնում են. «...միայն տաղանդավոր գործերն են ձևավորելի», «Թույլ գործերով ոգեվորվել հնարավոր չէ»։ Մենք ևս համամիտ ենք նրանց այն կարծիքին, որ «Հայաստան» հրատարակչությունը ճիշտ կվարվի, «...եթե գոնե տասը տարին մեկ հրատարակի լավագույն նկարազարդումների ընտրանին»։

Ահա և Մեր գլոբուսը՝ № 2-ի 7-րդ էջի աջ մասում։ Կարդալով այս փոքրիկ հաղորդումները՝ ընթերցողը տեղեկանում է աշխարհի տարբեր երկրների հրատարակչական նորություններին։ Սակայն այս բաժիններում տեղ են գտնում նաև նյութեր, որոնք ոչ մի կապ չունեն հրատարակչական գործի որևէ բնագավառի հետ և որոնց հրապարակումը, մեր կարծիքով, չի համարում այս լրագրի բնույթին։ Կան համապատասխան ամսագրեր, թերթեր («Արվեստ», «Советский экран», «Ֆիլմ»), որոնց միջոցով ընթերցողն ավելի հանգամանորեն կարող է տեղեկանալ Բրիջիդ Բարդոյի կինոյից հեռանալու, Լոուրենս Օլիվիեի՝ թատրոնը թողնելու և նման այլ իրադարձությունների մասին, ուստի նման կցկտուր հաղորդումներին այստեղ չարժե տեղ տալ։ Աշխարհի հրատարակչական բնագավառն այնպես հարուստ է բազմազան նյութերով, լուրերով ու նորույթներով, որ հարկ չկա Հետաքրքրական լուրերին, Մեր գլոբուսին, ինչպես և Զանազան զարմանազանին սրկե-նրկեի տեսք տալ։

Հետաքրքրական է լրագրի երրորդ էջը, որով այն իր ավանդն է ներդնում հայ գրականությունը, ինչպես և «Հայաստան» ու մեր հանրապետության այլ հրատարակչությունների՝ ռուսաց լեզվով լույս ընծայված գրքերը ռուս և այլազգի ընթերցողների սեփականությունը դարձնելու շնորհակալ գործում։ Հրապարակվում են նաև հաղորդումներ ռուս և այլազգի գրողների երկերի լույսընծայման մասին, նշվում նրանց հոբելյանական տարելիցները։

Ռուսաց լեզվով լույս է տեսել հայ գրողների պատմվածքների ժողովածու՝ Կեսօր (Полдень) վերնագրով։ Այս առիթով «Գրքերի աշխարհը» ձայնը տվել է կազմող Վ. Բարլոյանին, գրողների (Ս. Խանզադյան, Զ. Խալափյան), թարգմանիչների (Գ. Թաթոսյան)։ Լիովին համամիտ ենք Ս. Խանզադյանին. որքան շատ գրական ստեղծագործություններ թարգմանվեն ռուսերեն, համամիութենական ընթերցողն այնքան ավելի մո-

ակումբի, կամ Հավատարմություն ուրախությանը, հավատարմություն աշխատանքին հապավման մասին։ Այստեղ արդեն, մեզ թվում է, խմբագրությունը դուրս է գալիս իր նպատակային գործունեության սահմաններից, հրապարակելով Հայաստանի այս կամ այն շրջանի, քաղաքի կամ վայրի անեկդոտները։

Կատակների ու սրամտության, ծիծաղի համար կանաչ լույս պահանջողը նման նմուշները պետք է ընտրի խիստ ճաշակով, բանիմացորեն։ Այդ առումով լավ են Բոգդանովկայի «Արշալույս» լրագրի խմբագիր Մ. Սեդրակյանի «Ջավախքի ժպիտները» (№ 4, էջ 8)։

Սրամիտ են և այլ ժողովուրդների անեկդոտները, զվարճախոսությունները, որ զետեղված են լրագրում, չնայած, մեր կարծիքով, եթե դրանք հրատարակված գրքերից չեն, հարկ չկա «Գ. Ա.»-ում հրապարակելու։ Եվ ընթերցողը դրանք ընդունում է այնպես, ինչպես մատուցվում է, իր լեզվով ու ավելին էլ պահանջել չի կարող։ Մնում է՝ ինչպես դրանք, նույնպես և հայկական սրամտությունները, ըստեռնուրաբանական բառարանները, Կարճ լուրերը և ընդհանրապես հումորի բաժինը կազմելիս հանդես բերել խիստ բծախնդրություն, մշտապես հավատարիմ մնալով ժողովրդի ստեղծածի ոգուն, չաղավաղելով, շինծու չդարձնելով դրանք։ Այժմ այնքան էլ հեշտ չէ ծիծաղեցնել ընթերցողին. վերջինս շատ շուտ է զգում հումորի, սատիրայի բնականությունն ու շինծությունը, զոռով ձեռք բերված հումորը ոչ թե ծիծաղ, այլ քմծիծաղ է հարուցում. մի բան, որ երբեք չի եղել ու չի լինելու հումորի նպատակը։ Այնպես որ, որքան էլ խմբագրությունն իր հույսը դնի վանեցիների «մտքի լայնախոհության» վրա, մախաթը պարկում չի տեղավորվի։ Մանավանդ, երբ դրանից վեր կոչ է անում ընթերցողներին. «Եկեք, ուրեմն ծիծաղենք, բարեկամներ։ Ծիծաղենք մեր իսկ թերությունների վրա». լայնախոհ վանեցին հասկանում է, որ դուք հավատում եք՝ թե նա իրոք ունի այդ թերությունները. ահա ինչու ձեր հույսը այնքան էլ ամուր հիմքի վրա չէ։

Ո՛ր տեղի և ինչպիսի՛ զվարճախոսություններ էլ հրապարակելու լինի որևէ խմբագրություն (մանավանդ, երբ այն ժողովածու չէ), պետք է առաջնորդվի ջերմ հայասեր, հայ գրականության, արվեստի մեծ ջատագով ու պրոպագանդիստ Յուրի Վեսելովսկու հետևյալ խոսքերով. «...Սունդուկյանի կենցաղային կոմեդիաներից, Պատկանյանի խայթող ծաղրից, Շահազիզի սարկաստիկ տողերից, Րաֆֆու պատկառազդու մերկացումներից, Պարոնյանի վարակիչ ծիծաղից հետո չի կարելի ասել, թե հայերն իրենք չեն գիտակցել իրենց կյանքի ստվերոտ ու բացասական կողմերը և չեն կարողացել կայրանալ դրանց վրա։ Բայց ինչպիսի թերություններ էլ մենք նկատելու լինենք հայկական հանրության առանձին ներկայացուցիչների կամ նույնիսկ առանձին շերտերի մեջ, երբ խոսքը ողջ ժողովրդի մասին է, որպես մի ամբողջության... պետք է հանդես գա ազգի փոխադարձ հարգանքը» (Очерки армянской литературы, истории и культуры. «Айастан», 1973, стр. 362—363)։ Նման փոխադարձ հարգանք պահանջելու իրավունք ունեն և մեր ժողովրդի մի հատվածի ներկայացուցիչները՝ վանեցիները, որոնք, եթե ունեցել են կամ ունեն թերություններ, ընդհանուր չեն եղել և դրանք մեծ վարպետությամբ, խելքով ու սրամտությամբ կարողացել են ծաղրել հենց իրենք։

Համենայնդեպս (կասեր վանեցին), եթե խմբագրությունը որոշել է անպայման հրապարակել նման զվարճապատումներ, ապա թող կատարի գոնե Հուհա-ի խորհրդի պատվավոր նախագահ Սուրեն Վահունու պահանջը՝ «...ընթերցողները պետք է ուղարկեն միայն սրամիտ, միայն թարմ, միայն ինքնատիպ նյութեր...» (ընդգծումները մերն են— Է. Ս.)։ Ընթերցողները նման անեկդոտների հետ միասին կարող են ուղարկել նաև ո՛չ միայն այդպիսիք. բայց խմբագրությունը պարտավոր է հրապարակել իրոք միայն սրամիտ, միայն նոր, ինքնատիպ նյութեր և ոչ թե անճաշակ գրական մշակման ենթարկվածը։ Վանեցիներին վերագրված և լրագրում զետեղված անեկդոտները սրտխառնուքի չափ գռեհիկ են։

Անեկդոտների մասսայականացման, դրանց միջոցով թերությունները ծաղրելու գործում շատ կարևոր է լեզվական կոլորիտի պահպանումը։ Թե չէ ի՞նչ եք կարծում ծիծաղ կառաջացնե՞ն Պըլը-Պուղու, Պոլոզ-Մուկուչի, կամ ընդհանրապես լենինականյան անեկդոտները՝ մաքուր գրական լեզվով. զվարճախոսությունը, անեկդոտը պետք է պատմվի այնպես, ինչպես ասել է տվյալ տեղի ժողովուրդը։ Վանեցին հիմար չէ և, ինչպես ինքն է ասում՝ իր պան կիտի, ունի հումորի սուր զգացում։ Ահա թե ինչու երբ նրան հարցնում են՝ Ախաննես աղա (դե՛, բոլոր վանեցիներն իրենց համար աղա են՝ բեռնակրից սկսած, մինչև հարուստ վաճառականն ու այգետերը) կասեն ցուրտ ծմեռ պիտի էլնի, ի՞նչ պիտի անես։ Տաքանալու համար մեջքը հարևանի պատին դեմ տալու փոխարեն նա պատասխանում է. «Ասպիրին կիմեմ, կնիկս կառնեմ կպառկեմ»։

Վանեցուն ճանաչողը պետք է իմանա, որ վանեցին լավ գիտի իր արյան գինը, լավ գիտի՝ որտեղ պետք է արյուն թափել և երբեք ասֆալտին թափված յուղի համար իր մատը չի կտրի. (տե՛ս № 6, էջ 8), ուրիշին գուցե առաջարկի այդ անել, բայց իրենը՝ երբեք։

Բանահավաքի դեր ստանձնողը պետք է ամենից առաջ հավատարիմ մնա ժողովրդական բանահյուսության նմուշներին, պահպանի դրանց ոգին, ձևը, լեզուն, որով շատ հաճախ պայմանավորված է հենց զվարճախոսության, անեկդոտի սրամտությունը։ Համոզիչ լինելու համար բերենք միայն մի, ոչ անհայտ անեկդոտ. փողոցով անցնում է աղավաճառը.

— Ա՜ղ, լավ ա՜ղ...

— Տղա՛, պե խեմ, ձե՞թ ի, թե՞ պետ ի (պետք էլ չի ասել, որ խոսողը վանեցի է)։

— Մայրի՛կ, ոչ ձեթ է, ոչ փետ. աղ է, ա՜ղ։

— Է՛, աղե՛կ, խասկըցանք, պե խեմ ձե՞թ ի, թե՞ պետ ի (կարճ ենք կապում)։

Պատկերացրեք այս գրական լեզվով.— Բեր տեսնեմ մա՞նր է, թե՞ խոշոր. այստեղ էլ կավարտվեր և բանը չէր հասնի աղավաճառի՝ ոչ ձեթ է, ոչ փետ խոսքին։

Շիրակյան, ինչպես և այլ վայրերի անեկդոտներն իրենք են վկայում իրենց որտեղացի լինելու մասին, իսկ երբ սարքովի են, սարքողը, իհարկե, ստիպված պիտի լինի նաև ծագումը սարքել։ Մի՞թե նման անեկդոտներ և այդ լեզվով է պատմել մեր ժողովրդի այն հատվածը, որի ժողովրդական բանահյուսությունն անսպառ նյութ է տվել ու տալիս է մեր բանահավաքներին։ Ենիկ վանեցիների կամ այլ տեղացիների մտքի լայնախոհության վրա հույս դնողը պետք է օգտագործի ճիշտ անեկդոտը, բառն ու բանը, իսկ եթե չգիտե, թող բերանը չառնի այն՝ անպայման որևէ թերություն ձաղկելու մերկապարանոց նպատակով և «Գրող-բրոցի» տեղ գրոց-մրոց ստեղծի։

Մտադիր չէինք անդրադառնալ այս հարցին, բայց, քանի որ անհամեստության հանդեպ համեստ լինելը հոգու ամենամեծ անհամեստությունն է, որոշեցինք գրել այս մի քանի խոսքը, խորհուրդ տալով «Գ. Ա.»-ի խմբագրությանը՝ միշտ զգոն լինել, տարբերելու համար՝ ո՛ւր է վերջանում լրջությունը, և ո՛ւր սկսվում կատակը։ Այս մասը վերջացնենք իր մասին նման անեկդոտներ սարքողներին ու տարածողներին (ինչպես և «աղոտ կոլորիտ» ունեցող աշտարակցիներին) ուղղված վանեցու խոսքով՝ ամեն խավուն խորոված, կոր անձրղան էլ քչչած (խմբագրությունները պետք է իրազեկ լինեն նաև բարբառների ուղղագրությանը)։

Ծաղրող, հումորի զգացում ու ձիրք ունեցող լինի. ծաղրելի, ձաղկելի թերություններ կան ու կգտնվեն. դրանք անպակաս են և այն ասպարեզում, որի գործունեության, արտադրանքի վիճակի բացահայտումը, այդ մարզում եղած թերությունների վերացումը իր խնդիրն է դարձրել «Գ. Ա.»-ի խմբագրությունը։ Շատ հեռուն չգնալու համար խմբագրության ուշադրությանն ենք հրավիրում հրապարակվող գրքերի գեղարվեստական, տեխնիկական ձևավորման, լեզվական աղավաղումների վրա, որոնց մշտապես անդրադառնալը, վեր հանելը, պարբերաբար ծաղրելը իր անմիջական պարտականությունն է։ Հումորով զբաղվողներին խորհուրդ կտայինք մշտապես հիշել ռուս ֆոլկլորիստ Վիկտոր Եվգենևիչ Գուսևի այս օգտակար միտքը.

> «Ծաղրը սպանում է, որովհետև այն պատռում է դիմակը, բացահայտում էության և կեղծ արտաքինի հակասականությունը (բնականաբար ծաղրն ինքը նույնպես կարող է թվացող սրամտության արտահայտություն լինել. այդ դեպքում այն, բումերանգի նման, նպատակին չի հասնում, այլ հարվածում է իրեն՝ ծաղրողին)» (Эстетика фольклора. Л., 1967, стр. 302)։

Հնարավոր չէ անդրադառնալ «Գ. Ա.»-ի մյուս բոլոր բաժիններին ևս— Գրական արձագանք, Մեր արտադրության հրամանատարները, Արվեստի աշխարհում, ուր խմբագրությունը հոբելյանի, կամ այլ առիթներով, պատշաճ ձևով վեր է հանում պոլիգրաֆիստ երախտավորների, արվեստի վարպետների գործունեությունը, ցույց տալիս նրանց ներդրումը ազգային մշակույթի զարգացման, պահպանման գործում։

Ամեն մի գրասեր մարդու սեղանին արժանի այս լրագիրը խրախուսելի ջանադրությամբ է կատարում գրքի մասսայականացման իր դերը, գրքի նկատմամբ սեր հարուցելու իր շատ կարևոր գործը։

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

# ՍՈՎՈՐՈՒՅԹԻ ԴԵՐԸ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿՅԱՆՔՈՒՄ

Սովորույթի հարցի լուսաբանումն ու ըմբռնումը կարևոր է ոչ միայն տեսական, այլև գործնական առումով։ Մարդկանց բազմաբովանդակ գործունեությունը, նրանց նյութական ու հոգևոր կյանքի բոլոր բնագավառները (արտադրության, ուսումնադաստիարակչական, կուլտուրայի, կենցաղի, առողջապահության և այլն) լի են սովորույթ դարձած տարբեր երևույթներով, որոնց մի մասը բացասաբար է ազդում հասարակական կյանքի վրա, իսկ մյուս մասը, ընդհակառակը՝ զգալի դրական դեր է խաղում մարդկանց փոխհարաբերությունների կարգավորման, նրանց մտավոր ու ֆիզիկական նորմալ զարգացման, առողջության պահպանման, հասարակական կյանքի կազմակերպման գործում։

Սովորույթի դերի լուսաբանումն անհրաժեշտ է նաև մատաղ սերնդի ուսումնա-դաստիարակչական աշխատանքների հետագա բարելավման համար։ Սովորաբար մարդիկ աշխատում են հնարավորին չափ շատ գիտելիքներ տալ երեխաներին։ Բայց երբեմն մոռանում են համապատասխան սովորույթներ մշակել կամ բավարար ուշադրություն նվիրել այդ հարցին, անտեսելով այն փաստը, որ մատաղ սերնդի մեջ սովորույթների մշակմամբ նրա հետագա զարգացման հիմքն է դրվում։

Սովորույթը մարդու հոգեկան ու ֆիզիոլոգիական երևույթներից է, նախկինում ձեռք բերված փորձի, գիտելիքի, հմտության ու կարողության, ապրած զգացմունքի կամ դրա հետ կապված վիճակի ավտոմատ կրկնությունը, վերարտադրությունը, վերհիշումը։ Դա միաժամանակ օրգանիզմի կողմից ներքին կամ արտաքին ինֆորմացիաների, ներգործությունների ու ազդակների համար մշակված պատասխանն է։ Սովորույթները իրականության արտացոլման յուրահատուկ ձևեր են և, միաժամանակ, իրականության հանդեպ մարդկանց ունեցած վերաբերմունքի, նրանց հոգեկան, մարմնական ու նյութական պահանջմունքների արտահայտությունները։

Ըստ բնույթի սովորույթները լինում են օգտակար ու վնասակար, ինչպես նաև անհատական ու հասարակական։ Ըստ տեսակների դրանք տարբերվում



են՝ հասարակական կյանքի որևէ բնագավառին պատկանելով, իրենց ծագման և հանդես գալու եղանակներով, միջոցներով ու ձևերով։ Բազմազան են նաև սովորույթների ծագման ու ձևավորման աղբյուրները։ Հիմնական աղբյուրը արտաքին աշխարհն է, բնությունը, սոցիալական միջավայրը, շրջապատի պայմաններն ու բազմաթիվ ազդեցությունները։ Սովորույթների մեծ մասը ծագում է աշխատանքային և այլ տեսակի գործունեության ընթացքում, շրջապատի հետ ունեցած բազմաթիվ հարաբերությունների մեջ։

Սովորույթները կոնկրետ պայմաններում ծագող պատմական երևույթ են և փոփոխվում կամ անհետանում են այդ պայմանների հետ միասին։ Յուրաքանչյուր դարաշրջանում ծագել, ձևավորվել են մարդկության զարգացման տվյալ էտապին համապատասխանող սովորույթներ։ Բայց կան այնպիսիք, որոնք երկար ժամանակ պահպանվել են և փոխանցվել սերնդից-սերունդ, ժառանգվել են ինչպես լավ, այնպես էլ վատ սովորույթները։

Պատմության տարբեր էտապներում սովորույթների խաղացած դերը տարբեր է եղել։ Հասարակության վաղ շրջանում մարդկանց փոխհարաբերությունների հիմքում բացառապես դրված էր ադաթը, սովորույթներն ու ավանդույթները, որոնք պահպանվել, ամրապնդվել են որպես սրբություն։ Դրանցից հեռացումը, նահանջը դիտվել է անմարդկային ու անբարոյական արարք։

Վ. Ի. Լենինը գրել է, որ մարդկության վաղ շրջանում «...կարգապահությունը, աշխատանքի կարգականոնը պահպանվել է սովորության, տրադիցիաների ուժով, այն հեղինակությամբ կամ հարգանքով, որ ունեին ցեղի ավագները կամ կանայք...» (Երկեր, հ. 29, էջ 584—585)։ Հետագայում հասարակության զարգացման, կյանքի, սոցիալ-տնտեսական ու քաղաքական փոփոխման զուգընթաց նախկին սովորույթներից շատերը կորցրել են իրենց դերն ու անհետացել։ Իսկ որոշ սովորույթներ տարերայնորեն դարձել են տիրապետող նորմեր, հանդես գալով բարոյականության, դաստիարակության խնդիրները և անգամ մարդկանց հասարակական, քաղաքական ու տնտեսական հարաբերությունները որոշողի ու կարգավորողի դերում։ Մինչև այսօր էլ սովորույթները մարդկային փոխհարաբերություններում՝ նրանց դաստիարակության, ձևավորման մեջ ունեն որոշակի դեր։

Սոցիալիզմի օրոք սովորույթների բնագավառը ենթարկվեց գիտակցական կարգավորման ու վերահսկողության։ Սովորույթը դադարեց մարդու վրա իշխելուց։ Մեծ գործ արվեց անհատների, դասակարգերի, ազգերի ու ազգությունների փոխհարաբերություններում նախկինում եղած վնասակար սովորույթների վերացման և նոր օգտակար սովորույթների ստեղծման ասպարեզում։ Ազգային հարցի լենինյան ծրագրի իրականացման շնորհիվ մեր երկրում վերջ տրվեցին նացիոնալիզմի և մեծապետական շովինիզմի հետ կապված բազմաթիվ վնասակար սովորույթներին, ազգային և ռասայական խտրականության բազմաթիվ դրսևորումներին (ազգային էգոիզմին, սնապարծությանը, ատելությանը, թշնամանքին, արհամարհանքին և այլն)։ Ազգերի ու ժողովուրդների միջև հաստատվեցին ինտերնացիոնալիզմի սկզբունքներից բխող սովորույթներ։ Սոցիալիզմի պատմությունը ցույց տվեց, որ ինտերնացիոնալիզմի սկզբունքների պրակտիկ իրականացումը, դրանք սովորույթի վերածելն ու ընդլայնելը հսկայական դեր է խաղում հասարակության զարգացման համար։

Նացիոնալիստական սովորույթները հանդես են եկել նաև մարդկանց բարքերում, նրանց կենցաղում, ընտանեկան, ամուսնական և այլ հարաբերու-

թյուններում: Նշենք ամուսնության և այլ տեսակի կապերի ու համագործակցության արգելումը տարբեր ազգերի ու ռասաների միջև: Հայտնի է, որ դարեր շարունակ մահմեդական դավանանք ունեցող մարդկանց արգելվել է քրիստոնեաների հետ ամուսնանալը, նրանց հացից ուտելը, ջրից խմելը և այլն: Կրոնական գունավորում ստացած այդ վնասակար սովորույթները դեռ այսօր էլ պահպանվում են Ասիայի ու Աֆրիկայի մի շարք հետամնաց ժողովուրդների մոտ: Մեր երկրում անցյալի գիրկն են անցել նման սովորույթները, ոչնչացվել են դրանց պահպանման սոցիալական հիմքն ու գոյության պայմանները: Սակայն, պետք է ասել, որ չնայած դրան, նացիոնալիզմի նմանվող որոշ սովորույթներ մեզ մոտ դեռևս պահպանվում են: Այդ առթիվ ընկ. Բրեժնևը նշել է. «Չի կարելի մոռանալ, որ նացիոնալիստական նախապաշարումները, ազգային զգացմունքների ուռճացված կամ խեղաթյուրված դրսևորումը չափազանց կենսունակ, քաղաքականապես ոչ բավական հասուն մարդկանց հոգեբանության մեջ համառորեն պահպանվող երևույթ են: Դրանք, այդ նախապաշարումները, շարունակում են պահպանվել նույնիսկ այնպիսի պայմաններում, երբ ազգերի հարաբերություններում որևէ հակամարտության օբյեկտիվ նախադրյալները վաղուց ի վեր դադարել են գոյություն ունենալ» (ՍՍՀՄ կազմավորման հիսնամյակի մասին, 1973, էջ 37):

Ուստի, մեր կուսակցությունը հետևողականորեն պայքարում է նացիոնալիստական նախապաշարմունքների ամեն կարգի դրսևորումների դեմ, աշխատավորներին համակում ինտերնացիոնալիզմի ոգով, նրանց դաստիարակում անցյալի և ներկայի լավագույն տրադիցիաներով ու սովորույթներով:

Սոցիալիզմի օրոք հիմնականում հաղթահարվեցին անցյալից ժառանգություն մնացած այնպիսի սովորույթներ, ինչպիսիք են էգոիզմը, մարդկանց ստրկական հոգեբանությունը, կրոնական հավատալիքները և այլն: Էգոիզմին հակադրվեց կոլեկտիվիզմը, «մարդը մարդուն գայլ» գիշատիչ սովորույթին՝ իսկական մարդասիրական սկզբունքը: Հումանիզմը ստացավ նոր իմաստ ու բովանդակություն: Նախկինում այն գերազանցապես խղճահարության, մեղք գալու զգացմունք էր, որն անմիջականորեն չէր հակադրվում էգոիզմին և չէր կապվում շահագործվող մասսաների ազատագրման խնդրի հետ: Սոցիալիստական հումանիզմը, դուրս գալով նախորդ անհատական, նեղ զգացմունքային շրջանակներից, դառնում է մասսաներին շահագործումից ազատագրելու մարտական ուսմունք, կապվում նրանց պայքարի խնդիրների հետ:

Տերերի, իշխողների առաջ ստրկամտության սովորույթը, որ ծագել է բնական ու հասարակական չարիքների, այդ թվում շահագործման հանդեպ մարդկանց ունեցած վախից, դարձել է սովորույթ և դարեր շարունակ անգիտակցորեն հանդես եկել հնի հետ հաշտվելու և յոլա գնալու ձևով: Այդ սովորույթը բացասական դեր է խաղում ստեղծագործական աշխատանքի համար, խոչընդոտում մտածողությանը, տարբեր ձևերով սահմանափակում մարդու հետաքրքրության ու ձգտումների շրջանակները, հաշտեցնում նրան հին, իր դարն ապրած ու վնասակար երևույթների հետ: Սեփականատիրական իրավունքով ամրապնդված ստրկական ենթարկվածության, անհավասարության ու չարիքների հանդեպ հաշտվողականության սովորույթները պատրանքներ են, որոնք հավերժացնում են անտագոնիստական դասակարգերի գոյությունը, նրանց իրավունքների տարբերությունը և տեղն ու դերը հասարակական կյանքում: Մեր երկրում վերացան ինչպես էգոիզմի, այնպես էլ ստրկամտության



անտագոնիստական դրսևորումները, դրանց տնտեսական հիմքը: Սակայն ստրկամտությունն ու էգոիզմը դեռևս որոշ մարդկանց վարքագծում արտահայտվում է շողոքորթության, քծնանքի, խորամանկության, գողության և այլ ձևերով:

Այսօր սովորույթի պահպանողական ու հարմարվողական հատկությունը դրսևորվում է նաև ոմանց թերությունների նկատմամբ հաշտվողականության, անտարբերության մեջ:

Պատմության մեջ բավական վնասակար դեր են խաղացել կրոնական սովորույթները, որոնք դարեր շարունակ ստրկության մեջ են պահել մարդկանց թե՛ բնության և թե՛ հասարակական երևույթների հանդեպ: Մեր երկրի ժողովուրդներն ազատագրվել են կրոնական կապանքներից, բայց դրանց մնացուկները, մանավանդ այն սովորույթները, որոնք կապված են մարդկանց զգացմունքների և հույզերի հետ, մերթ ընդ մերթ վերակենդանանում են: Այսօր մարդկանց հոգեկան աշխարհի վրա շարունակում են վնասակար ազդեցություն թողնել համեմատաբար ավելի լայն տարածում գտած այնպիսի երևույթներ, ինչպիսիք են մատաղ անելը, կեղծ ուշաթափությունները, գուշակությունները և ծննդի, թաղման հետ կապված որոշ ծեսեր:

Այդ երևույթներն արտաքնապես վնասակար չեն թվում, բայց սոցիալհոգեբանական վերլուծությունը պարզում է, որ դրանք աննկատելիորեն, աստիճանաբար թափանցում են մարդու հոգեկան աշխարհը և հավատի աղբյուր դառնում այլ սնոտիապաշտությունների ու նաև աննյութական հոգևոր ուժերի համար:

Ինչպես կրոնական, այնպես էլ այլ տեսակի սովորույթների վերացումը հասարակությանը ոչ միայն ազատում է դրանց վնասակար ազդեցությունից, այլև պայմաններ է ստեղծում նրա հետագա զարգացման համար:

Արտաքին աշխարհի հետ ունեցած փոխհարաբերության պրոցեսում մար-
դիկ ձեռք են բերում նաև այլ տեսակի սովորույթներ: Դրանք, մի կողմից՝
բնակլիմայական պայմաններին, տեղանքին, աշխարհագրական միջավայրին,
իսկ մյուս կողմից՝ հասարակական կյանքի պայմաններին հարմարվելու կա-
րողություններ են, որոնք կենսական անհրաժեշտություն են ներկայացնում
մարդկանց գոյության պահպանման, արտաքին աշխարհի հետ ունեցած հա-
վասարակշռության պահպանման և նորմալ նյութափոխանակության ապա-
հովման համար: Ապրելու ընթացքում մարդիկ պետք է ընտելանան, սովորեն
բնական ու սոցիալական միջավայրին, նրանց բազմատեսակ ներգործություն-
ներին: Այսօր, քան երբևիցե, ավելի է զգացվում այդ սովորույթների մշակման
կարիքը: Հազարավոր տարիներ հարմարվելով միջավայրին, շրջապատի,
կյանքի պայմանների փոփոխման հետ միասին փոփոխվել են մարդկանց ֆի-
զիոլոգիական-անատոմիական կառուցվածքը, դիմացկունությունը, դրսի ներ-
գործություններին ճիշտ պատասխանելու կարողությունները, նրանց սրտանո-
թային համակարգը, նյարդային կառուցվածքը և այլն: Նախապատմական շըր-
ջանից մարդիկ ժառանգել են բնազդային բազմաթիվ հատկություններ ու կա-
րողություններ, որոնք սոցիալական պայմանների ազդեցության տակ անընդ-
հատ փոփոխվել, ամրապնդվել և որպես բնածին ռեֆլեքսներ մինչև այսօր
պահպանվել են: Դրանց մի մասը մարդկանց համար ընդհանուր է: Օրինակ
ցրտին, տաքին հարմարվելը և բազմաթիվ երևույթներ, որոնք ոչ միայն անհա-
տական ձեռք բերովի պայմանական ռեֆլեքսներ են, այլ նաև ժառանգաբար

փոխանցվող սովորույթ դարձած հատկություններ։ Ժառանգաբար փոխանցվող սովորույթները չնայած այս կամ այն չափով գիտակցվում են և իրենց վրա կրում հասարակական կնիքը, բայց ավելի շատ անգիտակցական բնույթ ունեն, որովհետև, որպես հնարավորություն, դրանք հանդես են գալիս տարերայնորեն, առավելապես ֆիզիոլոգիական հիմքի վրա։

Հարմարվողական բնույթի շատ սովորույթներ մարդիկ ձեռք են բերում սոցիալական միջավայրի հետ կապված։ Նրանք սովորում, հարմարվում են կյանքի պայմաններին, գոյություն ունեցող իրավիճակին։ Արդի գիտատեխնիկական հեղափոխության և այլ գործոնների շնորհիվ արագ, հանկարծակի և կտրուկ փոփոխություններ են առաջ գալիս սոցիալական միջավայրում, հասարակական կյանքում, և մարդու օրգանիզմը չի հասցնում ժամանակին համապատասխանորեն իրեն վերափոխել, հարմարվել այդ փոփոխություններին։ Անհամապատասխանությունը խախտում է մարդկանց ու միջավայրի հավասարակշռությունը և, հետևաբար, բարձրացնում նրանց էմոցիոնալ լարվածությունը։ Ուստի, այժմ առաջին պլանի վրա է դրվում մարդու և միջավայրի փոխհարաբերությունները կարգավորելու խնդիրը, որի բավականաչափ լուծումը կախված է համապատասխան սովորույթների մշակումից, այն առողջապահության հետ ճիշտ առնչելուց։

Անհրաժեշտ է մշակել և սովորույթ դարձնել այնպիսի հատկություններ, որոնք օրգանիզմին հնարավորություն կտան գիտակցորեն կարգավորել ու սահմանափակել սեփական զգացմունքներն ու հույզերը, խուսափել հանկարծակի մեծ ներգործությունների վնասակար ազդեցություններից և արագ ու վարժ ձևով հարմարվել շրջապատի փոփոխություններին։ Այդպիսի սովորույթներ կարող են ծառայել դրսի ազդեցություններին հանգիստ վերաբերվելու, որոշ առումով դրանց հանդեպ անտարբեր լինելու և արագ չհուզվելու ունակությունները, ֆիզիկական ու հոգեկան դիմացկունությունն ու ճարպկությունը, միջավայրում արագ կողմնորոշվելն ու հարմարվելը և բազմաթիվ աշխատանքային ու այլ տեսակի հմտություններ ու ունակություններ։ Այդ բոլորը հիմնականում կարելի է ձեռք բերել գիտակցորեն ձեռնարկվող գործողությունների ու վարժությունների միջոցով։

Սովորույթները բավական թիվ են կազմում կենցաղում։ Դրանք վերաբերվում են սննդի ընդունման, հանգստի, քնի, մաքրության, շարժ ու ձևի, ապրելակերպի, մարդկային մի շարք փոխհարաբերությունների և բազմաթիվ այլ երևույթների։ Կենցաղային շատ սովորույթներ ձևավորվում են տարերայնորեն, պայմաններին համապատասխան, միջավայրի (ընկերական, բարեկամական, ընտանեկան) անմիջական ազդեցությամբ։ Կենցաղային սովորույթները նույնպես կարելի է արմատավորել նաև գիտակցորեն, դաստիարակության միջոցով։ Այստեղ հատուկ տեղ են գրավում մաքրասիրության, սննդի, քնի, հանգստի և աշխատանքային ռեժիմի պահպանման սովորույթները, որոնք միաժամանակ մարդկանց առողջության պահպանման կարևոր պայմանն են։

Հասարակության համար արժեքավոր, օգտակար սովորույթներ են բարոյական մաքրությունը, աշխատասիրությունը, հայրենիքի, գեղեցկի ու լավի հանդեպ սիրո զգացմունքը։ Բարոյական մաքրության հիմնական սկզբունքները՝ ճշմարտասիրությունը, ազնվությունը, պարզությունն ու անկեղծությունը, սովորույթ դարձնելը ոչ թե ցուցադրական փաստ պետք է դառնա, այլ նպատակ՝ անհատին հասցնելու կատարյալ ինքնաազնվության, ինքնաճշմարտասի-



րության, այսինքն՝ այն բանին, որ մարդ ինքն իր մեջ բարոյապես լինի մաքուր։ Ինչպես բարոյական մաքրության, այնպես էլ հայրենասիրության, աշխատասիրության, լավագույն զգացմունքների և նման բազմաթիվ երևույթները սովորույթ դարձնելը մարդուն գեղեցկացնում է հոգեպես, կոփում ֆիզիկապես, մոբիլիզացնում, ամրապնդում և հզորացնում է նրա ուժերը՝ դժվարությունները հաղթահարելու և առաջադրված խնդիրներն իրականացնելու գործում։

Սովորույթների ձևավորման ու դրսևորման, նրանց բնույթի որոշման գործում, բացի արտաքին միջավայրից, կարևոր դեր են ստանձնում անհատական ու հասարակական հոգեբանությունը, ազգի հոգեկան կերտվածքը, անհատի խառնվածքը, նրա ինտելեկտուալ, հոգեկան յուրահատկությունները և մի շարք այլ գործոններ։ Հետևաբար, սովորույթներ մշակելիս կամ հետազոտելիս չպետք է անտեսել վերոհիշյալ գործոնների հետ ունեցած նրանց կապը։

Սովորույթների խոր հետազոտությամբ բացահայտվում է դրանց բազմակողմանի օգտակարությունը հասարակության համար։ Սովորույթները հանդես են գալիս որպես բարոյական նորմեր, և այդ իմաստով կաղապարում են մարդկանց, որոշակի կարգ ու կանոնի մեջ պահում նրանց։ Դրանք մի կողմից, դառնում են տեսական ու պրակտիկ նվաճումներն ամրապնդելու ու գործադրելու միջոց, իսկ մյուս կողմից՝ այն հետագայում հարստացնելու ու ընդլայնելու հնարավորություն։ Քանի որ սովորույթների մշակումը սկսվում է տարրական ունակությունների ու հմտությունների ձեռք բերումով և աստիճանաբար զարգանում՝ ընդգրկելով կյանքի բոլոր բնագավառները, ապա այդ տեսակետից դրանք հանդես են գալիս որպես մարդու ձևավորման աստիճաններ, որոնցից յուրաքանչյուրը պատվանդան է դառնում վերընթացի համար։ Մյուս կողմից լինելով ժողովրդի բազմադարյան կյանքի ու պայքարի փորձի ընդհանրացումը, դրանք ավանդույթների հետ միասին դասվում են բարոյական ու կուլտուրական արժեքների շարքը և զգալի դեր խաղում հասարակության կազմակերպման, առանձին մարդկանց և կոլեկտիվների, սոցիալական խմբերի ու դասակարգերի հարաբերությունները կարգավորելու գործում։

Սովորույթները կարևոր դեր ունեն մարդկանց համոզմունքների մշակման ու արմատավորման, նրանց հոգևոր, բարոյական ու ֆիզիկական ուժերի հարստացման, ընդլայնման և ամրապնդման գործում։ Դրանք մեծ ուժ են դառնում, երբ գիտակցորեն դուրս են հանվում անհատական նեղ շրջանակներից և տարածվում հասարակական կյանքի ավելի լայն բնագավառների վրա։ Այդ հնարավորությունը ստեղծվում է սոցիալիզմի ժամանակ։

Սոցիալիզմի կառուցման տարիներին արմատական փոփոխություններ կատարվեցին մեր երկրի սոցիալ-տնտեսական, քաղաքական ու կուլտուրական կյանքում։ Հեղափոխության բովում աշխատավորական լայն զանգվածները ձերբազատվեցին նաև անցյալի շատ մնացուկներից, այդ թվում նաև վնասակար սովորույթներից ու ավանդույթներից։ Սովորույթների ու ավանդույթների դնահատման ու զարգացման հիմքում դրվեց ազգայինի և ինտերնացիոնալիստականի ներդաշնակության մարքս-լենինյան գաղափարը։ Մշակվեցին առողջ ու կենսունակ բազմաթիվ նոր սովորույթներ, որոնք դարձան սոցիալիզմի կառուցմանը նպաստող կարևոր ազդակներ։ Դրանցից են սովետական բոլոր ազգերի ու ազգությունների առաջադիմական այն սովորույթները, որոնք զարգացած սոցիալիզմի պայմաններում դարձել են սովետական ողջ ժողովրդի սեփականությունը։

*Աստիճանաբար դրանք ավելի կամրապնդվեն, կառաջանան աշխատանքային, կենցաղային, կուլտուրական, բարոյական, էսթետիկական և բազմաթիվ այլ նոր սովորույթներ, կընդլայնվեն դրանց ծագման ու զարգացման բազան և ազդեցության ոլորտը հասարակական կյանքի բոլոր բնագավառներում:*

*«Կոմունիզմին անցնելու պրոցեսում գնալով է՛լ ավելի է աճում բարոյական սկզբունքների դերը հասարակության կյանքում,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— ընդլայնվում է բարոյական գործոնի ազդեցության ոլորտը և համապատասխանորեն նվազում է մարդկանց փոխհարաբերությունների վարչական կարգավորման նշանակությունը: Կուսակցությունը կխրախուսի քաղաքացիների գիտակցական ինքնակարգապահության այն բոլոր ձևերը, որոնք տանում են դեպի կոմունիստական համակեցության հիմնական կանոնների ամրապնդում և զարգացում»* (ՍՄԿԿ ծրագիրը և կանոնադրությունը, *1964, էջ 145): Ուրեմն հասարակական կյանքի վարչական կարգավորման և հետևաբար նաև քաղաքական ու իրավական հարաբերությունների վերացմանը զուգընթաց կոմունիստական բարոյականության սկզբունքները կդառնան հասարակական կյանքի նորմեր, սովորույթի ուժ ձեռք կբերեն և հասարակական կարծիքի ու այլ գործոնների հետ միասին գիտակցորեն կդրվեն մարդկանց փոխհարաբերությունների կարգավորման հիմքում: Սոցիալիստական ազգերի հարաբերություններում գնալով ավելի կամրապնդվեն համազգային հատկանիշները՝ սովետական ժողովրդին, մարդկանց պատմական այդ նոր հանրությանը համապատասխանող բարոյա-քաղաքական միասնությունը, համամարդկային կուլտուրան, հասարակական հոգեբանությունը, համաժողովրդական ճանաչում գտած սովորույթներն ու ավանդույթները: Սովորույթների ձևավորման տարերային պրոցեսը բացառապես իր տեղը կզիջի նախօրոք նախատեսված գիտակցական գործունեությանը, իսկ առանձին, անհատական, երկրորդական նշանակություն ունեցող սովորույթները կամ կձուլվեն ընդհանուր հասարակական սովորույթների մեջ կամ էլ կենթարկվեն նրանց և կդառնան բոլորի սեփականությունը:*

*Նկատի ունենալով բարոյական գործոնի հետագա դերի մասին մեր կուսակցության ծրագրային պահանջը և այն, որ պետք է ստեղծվեն «կոմունիստական համակեցության հանրաճանաչ միասնական կանոններ, որոնց կիրառումը կդառնա բոլոր մարդկանց ներքին պահանջն ու սովորությունը» (տե՛ս* ՍՄԿԿ ծրագիրը և կանոնադրությունը, *1964, էջ 133), մենք մեր գաղափարական, քաղաքական-դաստիարակչական ամբողջ աշխատանքը պետք է ուղղենք այդ խնդրի իրականացմանը:*

*Այսօր կոմունիզմի բարոյական իդեալները դառնում են նաև նոր ծագող սովորույթների ու ավանդույթների աղբյուրը: Շարունակելով ու զարգացնելով բանվոր դասակարգի, աշխատավոր մասսաների անցյալի հերոսական պայքարի ավանդույթներն ու սովորույթները, սովետական մարդիկ մեծագույն սխրանքներ են կատարում կոմունիզմի կառուցման ճանապարհին:*

Գ. Հ. ՄԿՐՏՉՅԱՆ

# ՌԱԶՄԱՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ 1959—1970 ԹԹ.

Կոմունիստական կուսակցությունն իր գոր-
ծունեության բոլոր էտապներում լուրջ ուշա-
դրություն է նվիրել աշխատավորության, հատ-
կապես երիտասարդության ռազմա-հայրենա-
սիրական դաստիարակությանը: Կուսակցու-
թյունը հայրենիքի պաշտպանությունը դիտում
է որպես սովետական ժողովրդի հայրենասի-
րական պարտքը: Այս կապակցությամբ **ՍՄԿԿ**
**XXIV** համագումարի բանաձևում ասված է.
«Մեր հայրենիքի պաշտպանական հզորության
համակողմանի բարձրացումը, սովետական
մարդկանց բարձր զգոնության ոգով, սոցիա-
լիզմի մեծ նվաճումները պաշտպանելու մշտա-
կան պատրաստության ոգով դաստիարակելը
այսուհետև էլ պետք է մնան որպես կուսակ-
ցության ու ժողովրդի ամենակարևոր խնդիր-
ներից մեկը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյու-
թերը, էջ **270**):
Ռազմահայրենասիրական դաստիարակու-
թյունը սիստեմատիկ, նպատակասլաց գաղա-
փարական ներգործություն է աշխատավորու-
թյան գիտակցության, կամքի և զգացմունքների
վրա: Դրա նպատակը սովետական մարդկանց
մոտ բարձր բարոյական և քաղաքական հատ-
կանիշների ձևավորումն է, ինչպես նաև նրանց
ռազմատեխնիկական գիտելիքներով զինելը,
որոնք անհրաժեշտ են սոցիալիստական հայ-
րենիքը պաշտպանելու համար: Ռազմահայրե-
նասիրական դաստիարակությունը երկրի ամ-
բողջ բնակչության նախապատրաստումն է իմ-
պերիալիստական ագրեսորներին հակահար-
ված տալու համար, հայրենիքի ճակատագրի
նկատմամբ յուրաքանչյուր սովետական մար-
դու պատասխանատվության զգացումով տոգո-
րելը: Ռազմահայրենասիրական դաստիարա-
կությունը բնավ չի հակասում խաղաղության և
տարբեր հասարակարգ ունեցող երկրների խա-
ղաղ գոյակցության վերաբերյալ կուսակցության
և կառավարության քաղաքականությանը: Այն
բխում է սոցիալիստական հայրենիքի պաշտ-
պանության մասին լենինյան պատգամներից և
համարվում է կոմունիստական դաստիարակու-
թյան, կուսակցության գաղափարական աշխա-
տանքի կարևորագույն բաղկացուցիչ մասը:
«Սովետական մարդկանց բարոյաքաղաքական
հատկանիշները,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,—
ձևավորվում են մեր ամբողջ սոցիալիստական
կացութաձևով, հասարակության մեջ գործերի
ամբողջ ընթացքով, բայց ամենից առաջ կու-
սակցության, նրա բոլոր կազմակերպություն-
ների գաղափարական-դաստիարակչական եր-
պատակամղված, հետևողական աշխատանքով»
(ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ **110**):
Ղեկավարվելով **ՍՄԿԿ** համագումարների,
պլենումների որոշումներով, Կենտրոնական
կոմիտեի ցուցումներով՝ Հայաստանի կուսկազ-
մակերպությունները աշխատավորությանը դաս-
տիարակում են սովետական հայրենասիրության
և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով,
կուսակցության, ժողովրդի, հեղափոխական
մարտական և աշխատանքային ավանդույթնե-
րով, զորամասերի հետ ամրապնդում շեֆական
կապերը, աշխատավորությանը, հատկապես ե-
րիտասարդությանը, նախապատրաստում հայ-
րենիքի պաշտպանությանը, կատարելագործում
երիտասարդության նախնական ռազմական
պատրաստականությունը, կազմակերպում սո-
վետական մարդկանց, երիտասարդության
ռազմա-ֆիզիկական դաստիարակությունը:
ՀԿԿ Երևանի, Լենինականի, Կիրովականի,
Դիլիջանի քաղկոմները, Իջևանի, Սիսիանի,
Ղափանի, Թումանյանի, Ստեփանավանի, Հոկ-
տեմբերյանի և այլ շրջկոմներ քննարկվող ժա-
մանակամիջոցում իրենց ուշադրության կենտ-
րոնում են պահել աշխատավորության, հատ-
կապես երիտասարդության ռազմահայրենասի-
րական դաստիարակության հարցերը:
Հայաստանի կոմկուսի **XXIV** համագումարը

րական դաստիարակության իսկական դպրոց հանդիսացան։

Երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակության բազմատեսակ միջոցառումների մեջ առաջնակարգ ձևերից են հեղափոխության մարտական վայրերով կազմակերպված արշավները։ Այդ առթիվ Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում ասաց. «Հավանության են արժանի մեր երիտասարդության այնպիսի նախաձեռնություններ, ինչպիսիք են մասսայական արշավների անցկացումը հեղափոխական, մարտական ու աշխատանքային փառքի վայրերով...» (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 111)։ Կոմերիտմիության նախաձեռնությամբ առաջին այդպիսի համամիութենական արշավը տեղի ունեցավ 1965 թ., որը նվիրված էր ֆաշիզմի դեմ սովետական ժողովրդի հաղթանակի 20-ամյակին։ Արշավի արդյունքներն ամփոփվեցին Բրեստի հերոսական ամրոցում («Պրավդա», 1965 թ., 19 սեպտեմբերի)։ Այդ արշավների ժամանակ պատանիներն ու աղջիկները շատ բան իմացան հեղափոխության, քաղաքացիական կռիվների և Հայրենական պատերազմի տարիներին ավագ սերնդի կատարած սխրագործությունների մասին։ Օրինակ, 1967 թ. Սիսիանի շրջանի կոմերիտականներն արշավների ժամանակ մանրամասն ուսումնասիրեցին հեղափոխության և պատերազմի վետերանների հերոսական սխրագործությունները։ Լենինականի երիտասարդությունը տեղեկություն հավաքեց 3.000-ից ավելի հայրենակից մարտիկների, Սևաստոպոլի հերոսական պաշտպանության ակտիվ մասնակիցների մասին[1]։

1970 թ. երիտասարդության համամիութենական արշավը նվիրված էր Լենինի կյանքին ու գործունեությանը, որն ավարտվեց Ուլյանովսկ քաղաքում։ Այդ մեծ հավաքին մասնակցում էին բոլոր հանրապետությունների, ինչպես և Հայաստանի երիտասարդության ներկայացուցիչները։ 1971 թ. սկսվեց նոր արշավ՝ նվիրված ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակին։ Նրա արդյունքներն ամփոփվեցին Մոսկվայում։ Մարտական փառքի արշավները շարունակվում են։

Ռազմահայրենասիրական դաստիարակության գործում մեծ դեր են խաղում երիտասարդության հանդիպումները պատերազմի վետերանների, Սովետական Միության հերոսների, նշանավոր զորավարների հետ։ Այս ասպարեզում հարուստ փորձ են կուտակել հանրապետության կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները։ Երևանի կուսակցական և ԼԿԵՄ կազմակերպությունները, հանրապետական զինկոմիսարիատի և ԴՕՍԱԱՖ-ի կոմիտեի հետ, սպայի տանը կազմակերպեցին աշխատավորության, երիտասարդության հանդիպումը «Մալայա զեմլյա»-ի հերոսական պաշտպանների՝ 255 Թամանյան բրիգադի վետերանների հետ։ Բրիգադի հերոսական ուղու մասին պատմեց նրա հրետանու շտաբի նախկին պետ, պահեստի փոխգնդապետ Բ. Հովհաննիսյանը։ Իրենց հուշերով հանդես եկան վաշտի նախկին հրամանատար Ա. Ազատյանը, քաղաշխատող Է. Թոփչյանը։

Երևանի բարձր դասարանների աշակերտները հանդիպեցին սովետական փառաբանված հետախույզներից մեկի՝ Ե. Ս. Բերեզնյակի հետ, որը հայտնի էր նրանց «Մայոր Վիխր» գրքից ու նույնանուն կինոնկարից։ Անսահման էր բոլորի հուզմունքը։ Պատանիները և աղջիկները շունչները պահած լսում էին լեգենդար հետախույզի պատմությունը, որը 128 օր հնարամտորեն գործել է ֆաշիստական թիկունքում՝ կատարելով մեկը մյուսից դժվարին ու պատասխանատու առաջադրանքներ։ Այստեղ ցուցադրվեց «Այժմ կարելի է անունները տալ» վավերագրական կինոնկարը և ինչ թերի էր մնացել, լրացնում էր կինոֆիլմը։ Այս հանդիպումը խոր հետք թողեց աշակերտների հիշողության մեջ։

Ռազմահայրենասիրական դաստիարակության լավագույն միջոց են բանակի զորամասերի հետ աշխատավորության կապի ամրապնդումը, շեֆական աշխատանքի ուժեղացումը։ Դրանք մշտապես կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում են։ Այսպես, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը, 1963 թ. հուլիսի 5-ին, քննարկելով ՍՄԿԿ հունիսյան (1963 թ.) պլենումի արդյունքները և հանրապետության կուսկազմակերպությունների գաղափարական աշխատանքի խնդիրները, նշեց, որ հանրապետությունում բարելավվում է ռազմա-շեֆական աշխատանքը[1]։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը վերջին տարիներս մի քանի անգամ քննարկել է ռազմաշեֆական աշխատանքի հետագա բարելավման, զորամասերի հետ աշխատավորական կոլեկտիվների կապերի ամրապնդման հարցերը։ Օրինակ՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի՝ «Հանրապետությունում ռազմա-շեֆական աշխատանքի վիճակի և նրա հետագա ուժեղացման միջոցառումների մասին» որոշման մեջ նշվում էր, որ կուսակցության քաղկոմներում, շրջկոմներում, սկզբնական կուսկազմակերպություններում և յուրաքանչյուր զորամասում հա-

1 *ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 48, ց. 37, գ. 129, թ. 11։*

1 *ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 89, գ. 17, թ. 93։*



մատեղ մշակվել և հաստատվել են ռազմա-շեֆական աշխատանքի պլաններ։ Հատկապես լայն մասսայականություն են վայելում կուսակցական, սովետական աշխատողների, արտադրության առաջավորների, գիտնականների, կուլտուրայի և արվեստի ներկայացուցիչների, հեղափոխության, Հայրենական պատերազմի վետերանների, երիտասարդության հանդիպումները սովետական բանակի անձնակազմի հետ։

1970 թ. մարտին Հայաստանի կոմկուսի Կենտկոմը նորից քննարկեց այդ հարցը և ընդունեց համապատասխան որոշում։ Կենտկոմը մշակեց կոնկրետ միջոցառումներ ռազմա-շեֆական աշխատանքի հետագա բարելավման համար, որը, անշուշտ, օժանդակում է աշխատավորության, հատկապես երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակությանը։

Իրագործելով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի որոշումները՝ բոլոր կուսկազմակերպությունները ջանք չխնայեցին ռազմա-շեֆական աշխատանքի հետագա բարելավման համար։ Նրանց նախաձեռնությամբ երևան եկան ռազմաշեֆական աշխատանքի նոր ձևեր («Շրջանի օր», «Բաց դռների օր»)։ Այդ օրերին զորամասի մարտիկներն ընդունում էին աշխատավորության, երիտասարդության ներկայացուցիչներին։ Վերջիններս ծանոթանում էին զորամասի կյանքին ու կենցաղին, մարտական տեխնիկային։ Միայն 1967 թ. Երևանում անցկացվեցին 103 այդպիսի «Բաց դռների օրեր»[1]։ Սերտ բարեկամական կապեր հաստատվեցին Հայէլեկտրագործարանի կոլեկտիվի և № զորամասի հետ։ Երիտասարդ բանվորներն օգնեցին զորամասին՝ ձևավորելու գերազանցիկների գեղեցիկ ծառուղին, զորամասի տերիտորիայում կանգնեցրին Վ. Ի. Լենինի արձանը[2]։

Իրենց հերթին զորամասերի զինվորները լինում են արտադրական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, ուսումնական հաստատություններում, սիրով օգնում երիտասարդությանը՝ ուսումնասիրելու ռազմական գործը։ Շատ զինվորականներ դպրոցներում աշխատում էին որպես ջոկատավարներ, ղեկավարում ռազմատեխնիկական խմբակներ։ Միայն Լենինականի դպրոցներում 11 առաջավոր զինվորներ աշխատում էին որպես պիոներ-ջոկատավարներ[1]։

Երևանի և Լենինականի կայազորների ռազմիկները հաճախակի դպրոցներում անց են կացնում «Արիության դասեր»։ Այսպես, 1971 թ. փետրվարի 23-ին Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցում այդպիսի դասեր անցկացրին 47 զինվորներ, սերժանտներ և սպաներ։ Այսպիսի միջոցառումները մատաղ սերնդի, երիտասարդության մեջ սեր ու հարգանք են առաջացնում սովետական բանակի նկատմամբ, նրանց մեջ արթնացնում և զարգացնում սոցիալիստական հայրենիքի պաշտպաններ դառնալու վեհ, սրբազան զգացումներ։

Ռազմահայրենասիրական դաստիարակության կարևորագույն խնդիրներից է երիտասարդությանը նախնական ռազմական գիտելիքներով զինելը, նրան ֆիզիկապես կոփելը։ Նախազինակոչիկներին և զինակոչիկներին սովետական զինված ուժերում ծառայելուն նախապատրաստելը։ «Մեծ նշանակություն ունի, — ասաց Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարում,— երիտասարդությանը հայրենիքի պաշտպանությանը նախապատրաստելու գործը, որ անցակցվում է կոմերիտմիության, բանակին, ավիացիային ու նավատորմին աջակցող կամավոր ընկերության, ինչպես նաև այլ կազմակերպությունների և մարզական ընկերությունների կողմից» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 111)։

Հանրապետության կուսակցական, կոմերիտական կազմակերպությունները, զինվորական կոմիսարիատները, ԴՕՍԱԱՖ-ը մեծ աշխատանք են կատարում ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները կենսագործելու, «Ընդհանուր զինվորական պարտականության մասին» նոր օրենքը կիրառելու ասպարեզում։ Ինչպես հայտնի է, այն արտացոլում է երկրի ողջ բնակչությանը սոցիալիստական հայրենիքի պաշտպանությանը նախապատրաստելու անհրաժեշտությունը. նախատեսում է նաև նախնական զինվորական պատրաստության պարզորոշ սիստեմը հանրակրթական դպրոցներում, տեխնիկումներում, պրոֆտեխուսումնարաններում և ԴՕՍԱԱՖ-ի ուսումնական կետերում։ Օրենքի համաձայն նախնական ռազմական պատրաստությունը մտցվեց 1968—1969 ուստարվանից։ Այժմ տարրական զինվորական պատրաստությունն իրականացվում է հանրապետության 755 դպրոցում, 67 տեխնիկումում, 48 պրոֆտեխուսումնարանում։ Հիմնարկություններում, ձեռնարկություններում, կոլտնտեսություններում գործում են 162 ուսումնական

1 *ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 48, ց. 37, գ. 81, թ. 144։*

2 *ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 87, գ. 472, թ. 30։*

1 *Նույն տեղը, գ. 46, թ. 42։*

կետեր՝ ԴՕՍԱԱՖ-ի կազմակերպությունների ղեկավարությամբ:

Վերջին տարիներս աճել է ԴՕՍԱԱՖ-ի կազմակերպությունների դերը զինակոչիկների դաստիարակության գործում: Կոմկուսակցությունը մշտապես հոգում է ԴՕՍԱԱՖ-ի աշխատանքի մեթոդների և ձևերի հետագա բարելավման և կատարելագործման մասին: Այդ հոգատարության վառ արտահայտությունն էր ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1966 թ. մայիսի 7-ի՝ «Բանակին, ավիացիային և նավատորմին աջակցող կամավոր ընկերության (ՍՍՀՄ ԴՕՍԱԱՖ) աշխատանքի վիճակի և այն բարելավելու միջոցառումների մասին» որոշումը: Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Մինիստրների սովետը, ղեկավարվելով այդ որոշումով, 1966 թ. հուլիսի 19-ին մշակեցին մի ջոցառումներ ԴՕՍԱԱՖ-ի աշխատանքները հանրապետությունում բարելավելու համար[1]:

Հանրապետության ԴՕՍԱԱՖ-ի կազմակերպությունները, կուսակցական օրգանների ղեկավարությամբ, կոմերիտմիության և հասարակական մյուս կազմակերպությունների հետ միասին, կատարում են հսկայական պաշտպանա-մասսայական աշխատանք: ԴՕՍԱԱՖ-ի ուսումնական կազմակերպություններում, պաշտպանական տներում, սպորտ-տեխնիկական ակումբներում ամեն տարի մեծ թվով երիտասարդներ տիրապետում են ռազմական գիտելիքներին, ձեռք բերում ավտովարորդի, ռադիստի, պարաշյուտիստի, կապավորի և այլ մասնագիտություններ: Լավ էին աշխատում Կիրովի անվան քիմիական, Լենինականի տեքստիլ կոմբինատների, էլեկտրամեքենաշինական, քիմիական ռեակտիվների, Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանների ուսումնական կետերը: Բազմակողմանի հայրենասիրական աշխատանք էր կատարում Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի ԴՕՍԱԱՖ-ի սկզբնական կազմակերպությունը՝ սպորտի վարպետ Սաթիկ Անժելովայի ղեկավարությամբ: «Արաքս» մարզական ակումբում ամեն ինչ արվում էր զորակոչիկների ռազմաֆիզիկական դաստիարակության համար: Մոտ 4.800 երիտասարդներ ընդգրկված էին սպորտային տարբեր խմբակներում: Միայն 1967 թ. գործարանի ԴՕՍԱԱՖ-ը պատրաստել է երկու սպորտի վարպետ, 39 առաջին կարգի և 482 երկրորդ կարգի մարզիկներ: Երիտասարդությանը բանակում ծառայելու նախապատրաստելու ասպարեզում խրախուսելի աշխատանք էին կատարում Մեղրու շրջանի ԴՕՍԱԱՖ-ի 43 սկզբնական կազմակերպություններ:

Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ Հայաստանի ԴՕՍԱԱՖ-ը 1967 և 1968 թ. գրավեց առաջին, իսկ 1969 և 1970 թ.՝ երկրորդ տեղը, ԴՕՍԱԱՖ-ի կազմակերպությունները հատկապես մեծ հաջողությունների հասան 1972 թ. հոբելյանական տարում: Հանրապետության ԴՕՍԱԱՖ-ի կազմակերպությանը հանձնվեց ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի և ՍՍՀՄ ԴՈՍԱԱՖ-ի Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը, ինչպես նաև ՍՍՀՄ ԴՕՍԱԱՖ-ի Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը:

Մեր ԴՕՍԱԱՖ-ի կազմակերպությունները հաջողությունները ձեռք են բերում կուսկազմակերպությունների ամենօրյա ղեկավարության և հոգատարության շնորհիվ:

Հանրապետության կուսկազմակերպությունները հաջողությամբ իրականացնում են ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջը. «Այն ամենը, ինչ ստեղծված է ժողովրդի կողմից, պետք է հուսալիորեն պաշտպանվի» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 107—108):

**Վ. Պ. ՍԱՀԱՐՅԱՆ**
Պատմ. գիտ. թեկնածու

[1] ՄԼԻ հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 1, ց. 92, գ. 72, թթ. 135—141:

# ՄԵՐ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

*Մեր ամսագրի 1972 թ. № 7-ում ՀԿԿ Գորիսի շրջկոմի առաջին քարտուղար Քր. Պետրոսյանի «Կատարման ստուգումը կարևոր գործ է» և նույն թվականի № 8-ում Վ. Գևորգյանի «Ներկուսակցական դեմոկրատիան և կոմունիստների ակտիվության բարձրացումը» հոդվածներում խոսվում է այն մասին, որ Գորիսի ռետինե կոշկեղենի գործարանի կուսկազմակերպության ժողովներից մեկում կոմունիստ Մ. Հակոբյանը քննադատել է դիրեկցիային այն բանի համար, որ արտադրանքի որակը ցածր է, որի պատճառով առևտրական բազաները մեծ քանակությամբ կոշկեղեն են ետ վերադարձնում: Մինչդեռ որակի բարելավման վերաբերյալ սկզբնական կուսկազմակերպության բազմաթիվ որոշումներ մնացել են անկատար, իսկ մեղավորները պատասխանատվության չեն ենթարկվել: Այդ քննադատությունը դուր չի եկել գործարանի դիրեկտոր Ժ. Հարությունյանին, և նա փորձել է հարցը լուծել կոնկրետ՝ հրաման արձակելով կոմունիստ Մ. Հակոբյանին աշխատանքից հեռացնելու մասին:*

*Եվ որքան տարօրինակ է, կուսշրջկոմի բյուրոյի որոշումից հետո էլ գործարանի դիրեկտոր Ժ. Հարությունյանը լուրջ եզրակացության չի հանգել արված քննադատությունից և շարունակել է հալածել կոմունիստ Մ. Հակոբյանին:*

*Ի վերջո, Մ. Հակոբյանը, հիասթափվելով դիրեկտոր Ժ. Հարությունյանի անտակտ, կամակոր ու անմարդկային վերաբերմունքից, դիմում է տվել և ազատվել աշխատանքից:*

*Իսկ այդ նույն ժամանակ գործարանում շարունակվել են թերությունները և նրա դիրեկտոր Ժ. Հարությունյանի հանցագործ արարքները: Գործարանում քանիցս նկատվել են նյութական արժեքների վատնման, շռայլման և յուրացման փաստեր, ընկել է աշխատանքային ու արտադրական կարգապահությունը, ցածրորակ արտադրանքի թողարկման պատճառով բողոքներ են ստացվել պատվիրատուներից, և ընթացիկ տարվա առաջին կիսամյակում գործարանը կրել է 11 հազար ռուբլու վնաս: Գործարանի դիրեկտոր Ժ. Հարությունյանն զբաղվել է անօրինական գործարքներով, շռայլել ու յուրացրել է հանրային ունեցվածքը:*

*Եվ ահա ՀԿԿ Գորիսի շրջկոմից հայտնում են, որ բյուրոյի 1973 թ. ապրիլի 10-ի նիստում քննարկվել է «Գորիսի ռետինե կոշկեղենի գործարանի դիրեկտոր Ժ. Հարությունյանի վերաբերյալ արձանագրված սխալների, չարաշահումների, անօրինականությունների և թերությունների վերացման վերաբերյալ որոշման կատարման մասին» հարցը: Բացահայտելով գործարանի տնտեսական գործունեության սխալները և դիրեկտոր Ժ. Հարությունյանի չարաշահումների փաստերը՝ կուսշրջկոմի բյուրոն միաժամանակ պարզել է, որ «Հարությունյանը անբարյացակամ վերաբերմունք է ցուցաբերել ժողովրդական վերահսկողության խմբի նախկին նախագահ Մ. Հակոբյանի նկատմամբ և, տարբեր հրամաններ արձակելով, հետապնդել ու հասել է նրան, որ Մ. Հակոբյանը թողել է գործարանը և տեղափոխվել այլ աշխատանքի»: Շրջկոմի բյուրոն շեշտել է, որ «Ժ. Հարությունյանը փոխանակ կոմունիստին ու ղեկավարին վայել ձևով ընդուներ շրջկոմի բյուրոյում արված քննադատական դիտողությունները, ընդհակառակը, շրջկոմի բյուրոյի որոշումը սկզբնական կուսակցական կազմակերպությունում քննարկելու ժամանակ փորձել է չընդունել և ժխտել արձանագրված փաստերը և որի հետևանքով կոնկրետ միջոցներ չի ձեռնարկել իր հասցեին արձանագրված սխալները, անօրինականությունները և չարաշահումները վերացնելու ուղղությամբ: Նա չի կատարել նաև այդ կապակցությամբ սկզբնական կուսակցական կազմակերպության որոշումները»:*

*Եվ կուսշրջկոմը միանգամայն իրավացի որոշել է՝ Հարությունյանին ազատել ռետինե-կոշկեղենի գործարանի դիրեկտորի պարտականություններից և բավարարվել նրանով, որ շրջկոմի նախորդ բյուրոյում նրան հայտարարվել է նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում:*

# ԱՇՈՏ ՄԱԹԵՎՈՍԻ ԹԵԼՈՒՆՑ



Անագորույն մահը, ավա՜ղ, վաղաժամ ընդհատեց հոյակապ ընկերոջ իմաստալի կենսաընթացը։ Սույն թվականի սեպտեմբերի 27-ին վերջին անգամ տրոփեց Աշոտ Թելունցի անսահման բարի ու կորովալի սիրտը։

Դժվար է հաշտվել այն կսկծաբեր բոթի հետ, որ այլևս չի՛ ապրում, չի՛ ստեղծագործում մեր ամսագրի կոլեգիայի հույժ պատկառելի անդամը, մտածող և հմայիչ ընկերը։

Բնության անարդար քմայքով անմռռաց Աշոտը երկար չապրեց այս աշխարհում։ Սակայն նրա գիտակցական կենաց քառասուն տարիներում ակներև դրսևորվեցին մեր անզուգական բարեկամի ու գրչակցի ներաշխարհի բնորոշ հատկանիշները՝ կոմունիստական անկոտրում գաղափարայնություն, մարդկային մտքի դարավոր խորխորատները թափանցելու անմար տենչ, հայացքների ու խառնվածքի հստակություն, վերլուծող ու հար որոնող միտք, հարազատ ժողովրդի ու կուսակցության շահերի գերադասություն՝ անձնականի նկատմամբ, համակողմանի իմացության դրսևորման նախանձելի համեստություն, բնածին մանկավարժ, իրական ուսյալ, վեհանձն քաղաքացի՝ միշտ սրտաբաց ու կենսախինդ։ Իրականում այդպիսին էր ազնիվ ու իմաստուն Թելունցը, որը մոտ քսան տարի իր արժեքավոր լուման է մուծել ամսագրի ստեղծարար կյանքում։ Արտաքուստ հանդարտ, բայց ներքուստ միշտ հրաբորբ ոգով էր նա մաքառում այն ամենի դեմ, ինչ խանգարում էր մեր հայրենիքի պատմական վերընթացը, ինչ սովերկում էր կոմունիզմի վսեմ սկզբունքները։

Հիրավի, մեր կուսակցության գաղափարական առաջամարտիկ Աշոտ Թելունցն իր կյանքը լիովին նվիրեց նոր սերնդի կոմունիստական աշխարհայացքի կերտման որքան դժվարին, նույնքան պատասխանատու ու շնորհակալ գործին։ Հանրապետության կուսակցական ու պետական գործիչների, մանկավարժների ու արվեստի աշխատողների պատկառելի մի փաղանգ, դիալեկտիկական մատերիալիզմի հարուստ դասընթացն ուսանել է հարգարժան ու սիրելի դասախոսի՝ Աշոտ Թելունցի լսարաններում։ Նրա ունկնդիրներն ու ընթերցողները շուտով համոզվում էին, որ իրենց ուսուցիչը ո՛չ միայն խորապես տիրապետում է մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ զենքին, այլև անվարան ու հավատավոր կոմունիստ է, որը ցմահ երբևէ չխախտեց իր սրբազան ուխտը՝ ոչ լոկ խոսքով, նմանապես և անձնական սակավապետ ապրելակերպով միշտ օրինակ լինել կոմունիստական աշխարհազգացման հետախույզի իր պարտավորեցնող կոչմանը։

Գաղափարական մարտիկ ու խորագիտակ փիլիսոփա Աշոտ Թելունցի հիշատակը միշտ վառ կմնա մեր սրտերում։

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ
ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ)։

Адрес редакции: 375033 Ереван-33, Барекамутян, 59 г.
Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64։

ՎՖ 05840 Պատվեր 1827 Թղթի չափսը 70×108 1/16։ Տիրաժ 13.100 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 5/XI 1973 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ Ավ. Իսահակյան փող. № 28։




# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԼԱՔ ԿԱՐԻԵՍԻ ԴԵՄ

Մոսկվայի որոշ պոլիկլինիկաներում փորձարկվում է լաքի մի նոր տեսակ՝ կարիեսի դեմ։ Ռեցեպտուրան մշակել է ստոմատոլոգիայի կենտրոնական գիտահետազոտական ինստիտուտը. «բիոշապիկները» կանխում են կարիեսը երեխաների մոտ մինչև 70, մեծահասակների մոտ՝ 50 տոկոսով։

Բուժումը կատարվում է այսպես. լաքապատվում է ատամների մակերեսը, ֆտորը և այլ բաղադրիչներ թափանցում են ատամի էմալի մեջ։ Մի քանի ժամից թաղանթը հեշտությամբ հանվում է. այդպիսով ատամը վեց ամսով ապահովվում է կարիեսից։ Նախատեսված է նոր պրեպարատի սերիական արտադրությունը։ 1974 թվականին բիոշապիկներ կկիրառվեն մեր երկրի ստոմատոլոգիական բոլոր պոլիկլինիկաներում։

## ՍԵՂԱՆԻ ՄԵՏԱՂԱՄՇԱԿՄԱՆ ՎԱՌԱՐԱՆ

Օստրավայի (Չեխոսլովակիա) լեռնային ինստիտուտի մետաղամշակման ֆակուլտետում նախագծել են պլազմային մետաղահալման վառարան։ Իր կոմպակտության շնորհիվ հնարավոր է լինում ստանալ C-ի 30.000 աստիճան ջերմություն, հալել ամենադժվարահալ նյութերը. հետազոտողի գրասեղանին տեղադրված փոքրիկ վառարանում կարելի է ուսումնասիրել մետաղամշակման ցանկացած պրոցեսը։

## ՌԵՆՏԳԵՆՅԱՆ ՃԱՌԱԳԱՅԹՆԵՐԻՑ ՊԱՇՏՊԱՆՎԵԼՈՒ ՄԻՋՈՑ

Մյունխենի (ԳՖՀ) ճառագայթային պաշտպանության ինստիտուտի փորձերը պարզեցին, որ էմալապատ երկաթյա թիթեղները հիանալի կարգելակեն ռենտգենյան ճառագայթների արտամղումը։ 0,8 մմ հաստությամբ և 0,2 մմ էմալապատ թիթեղը ճառագայթային ֆոնը կիջեցնի 85 տոկոսով։ Այդպիսի արդյունքը մինչև օրս տեսականորեն անբացատրելի է։

## ԼՈԳԱՐԱՆ ՊԱՀԱՐԱՆՈՒՄ

Դրեզդենի էլեկտրատեխնիկական և ռենտգենյան ապարատուրայի գործարանը մշակել է փոքրածավալ լոգարան՝ հին բնակարանների համար, ուր լողասենյակ նախատեսված չի եղել։ Խոհանոցում գտնվող 2 մ բարձրությամբ և 80 սմ լայնությամբ պահարանում տեղադրված է ջեռուցիչ և ուղղահայաց լոգարան. ջեռուցիչը միացվում է ջրմուղին, կեղտաջրի խողովակը՝ կոյուղուն։ Վաննան բացվում է և կարելի է լողանալ։

## ՓՈՇԵԾԾԻՉ ԳՆԱՑՔ

Փարիզի մետրոն կտրում է 340 կմ ճանապարհ. այն ունի 336 կայարան։ Գիշերը մետրոյում երթևեկում է երեք վագոնը մետրոյում երթևեկում է երեք վագոնից հատուկ գնացք՝ ստորգետնյա թունելները և նախասրահները փոշուց ու աղբից մաքրելու համար։

Անցնելիս, միջտեղի վագոնից գնացքը բաց է թողնում սեղմված օդի հզոր շիթ, որը փչելով մաքրում է ստորգետնյա շինությունների ներսի փոշին ու աղբը։ Դրանք անմիջապես կլանվում են ու նստում նեյլոնե ֆիլտրերի վրա։ Ծայրի վատում նեյլոնե ֆիլտրերի վրա։ Ծայրի վագոններում տեղադրված այդ ֆիլտրերն ունեն 270 քմ ընդհանուր մակերես։

## ԷԼԵԿՏՐՈՆՆԵՐԸ ԹՈՒՆԵԼ ԵՆ ԲԱՑՈՒՄ

ԱՄՆ-ում մշակվում է արագացված էլեկտրոնների փնջով պինդ ապարների մեջ թունել բացելու մեթոդը։

Հատուկ արագացուցիչը, մոտ մեկ միլիոն էլեկտրոնների խտացված էներգիան ուղղում է դեպի ժայռը։ Մխրճվելով ժայռի մեջ, խտացված էլեկտրոններն իրենց ողջ էներգիան տալիս են ապարին։ Այդ իմպուլսն ստեղծում է ջերմության խիստ անկում և հասցնում ջերմության ծավալման հզոր ալիքի, որը պայթեցնում է ապարը։ Յուրաքանչյուր համազարկ ստեղծում է ընդամենը մի քանի սմ խորությամբ փոս։ Արագացուցիչը վայրկյանում կարող է տալ մի քանի հարյուր համազարկ և չափազանց բարձրացնել անցման արագությունը։

Գինը՝ 25 կ. Индекс 77783